# ՄԱՇՏՈՑ

## ՅՈՐՈՒՄ ԱՒԱՆԴԻՆ

## ՍՐԲԱԶԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՔ ԱԶԳԻՍ

## ԸՍՏ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ

## ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑՒՈՅՍ ՀԱՅՈՑ

Գ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ




Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ Ս. ԱԹՈՌՈՑՍ

ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

1896

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

# Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Ա.

ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՀՐԱՄԱՆԱՒ

ՊԱՏՐԻԱՐՔԻ Ս. ԱԹՈՌՈՅՍ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

## Տ. ՅԱՐՈՒԹԻՒՆ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ

## Տ. ՄԱՏԹԷՈՍԻ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ԿԱՆՈՆ ՄԿՐՏՈՒԹԵԱՆ

## ՀԱՍԱԿԱՒՈՐ ԵՐԱԽԱՅԻՑ



Յորժամ կամիցին Քրիստոնեայ առնել զհասակաւոր երախայն, նախ չէ պարտ յԵկեղեցին բերել. այլ յետ նադրեայի երեք շաբաթու յառաջ. կամ առնել նախ քան զմկրտութիւնն. որով զհաւատս և զվարդապետութիւն սուրբ Եկեղեցւոյ բանական լեզի ուսուցել ի վարդապետէն. այս է՝ յառաջ քան զամենայն զԱստուածութիւն Սուրբ Երրորդութեանն. և զմարդեղութիւն և զմեկնութիւնն արարածոյ. և զա պա՝ զծնունդն Քրիստոսի. և խորհուրդ զամենայն փրկութեանն, զՄայրն ... խորհուրդն՝ զԹագաւորն՝ զՅարութիւնն, զառ Հայր Համբարձումն և զմիւսանգամ գալուստն. և զՅարութիւն ամենայն մարմնոց, և զդատաստանն նոցա և զհատուցումն իւրաքանչիւր գործոց։ Այս խորհրդաբերութիւն ի չեն հաւատոյս է։ Նախ այսպէս երեխայայացուցանելով ուսուցանել. և ապա ընկալցի ի մկրտութիւն ։






Եթէ ոք ոչ ծնցի 'ի ջրոյ և 'ի հոգւոյ, ոչ կարէ մտանել յարքայութիւն Աստուծոյ։

Յովհ. Գ. Ե։

# ԿԱՆՈՆ

## ԿԵՆԴԱՆԱՐԱՐ ՍՈՒՐԲ ՄԿՐՏՈՒԹԵԱՆ



Տանին շնորհածին երախայն 'ի դուռն եկեղեցւոյն, և ասեն.

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս Ամէն.

Հայր մեր որ յերկինս ես. սուրբ եղիցի անուն քո: Եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի: Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր: Եւ թող մեզ զպարտիս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց: Եւ մի տանիր զմեզ 'ի փորձութիւն. այլ փրկեա զմեզ 'ի չարէ: Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս. Ամէն:

Օրհնեալ Հոգին Սուրբ Աստուած ճշմարիտ:

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ:

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ, և 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Քեզ միայն մեղայ, Տէր, և չար առաջի քո արարի։

Որպէս արդար երիցիս 'ի բանս քո, եւ յաղթող 'ի դատել քեզ։

Անօրէնութեամբ յղացայ, եւ 'ի մեղս ծնաւ զիս մայր իմ։

Դու, Տէր, զճշմարտութիւն սիրեցեր, զանյայտս և զծածկեալս իմաստութեամբ քով յայտնեցեր ինձ։

Ցօղեա՛ յիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա և քան զձիւն սպիտակ եղէց։

Լսելի արա ինձ զցնծութիւն եւ զուրախութիւն, և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք։

Դարձո զերեսս քո 'ի մեղաց իմոց, զամենայն անօրէնութիւնս իմ քաւեա յինէն։

Սիրտ սուրբ հաստատեա յիս, Աստուած, և հոգի ուղիղ նորոգեա 'ի փորի իմում։

Մի՛ ընկեներ զիս, Տէր, յերեսաց քոց, և զհոգի քո Սուրբ մի՛ հաներ յինէն։

Տուր ինձ ցնծութիւն փրկութեան, եւ

Հոգւով պետութեան քո հաստատեա զիս։
Ուսուցից անօրինաց զճանապարհս քո, և
ամպարիշտք առ քեզ դարձցին։
Փրկեա զիս յարենէ, Աստուած, Աստուած
փրկութեան իմոյ՝ ցնծասցէ լեզու իմ
յարդարութեան քում։
Տէր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան
իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։
Թէ կամեցեալ էիր պատարագս մատու-
ցանէաք, բայց դու ընդ ողջակէզս իսկ
ոչ հաճեցար։
Պատարագ Աստուծոյ՝ հոգի խոնարհ, ըզ-
սիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած
ոչ արհամարհէ։
Բարի արա, Տէր, կամօք քովք Սիոնի, և
շինեսցին պարիսպքն Երուսաղէմի։
Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս ար-
դարութեան, յորժամ ուխտից պատարա-
գըս հանցեն 'ի սեղան քո զուարակս։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ըն։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Տէր, ոչ բարձրացաւ սիրտ իմ, եւ ոչ
ամբարձան աչք իմ։

Ոչ գնացի ես ընդ մեծամեծս, և ոչ ընդ այնոսիկ որ սքանչելի եղեն քան զիս։

Բայց թէ խոնարհեցայ ես որպէս մանուկ սարտուցեալ՝ի ստեանէ մօր իւրոյ, և դարձ նորա անդրէն՝ի նոյն։

Այլ թէ հպարտացուցի արդեօք զանձն իմ, այսպէս եղիցի հատուցումն անձին իմոյ, յուսասցէ Իսրայէլ՝ի Տէր յայսմհետէ մինչև յաւիտեան։

զՓոխն Երկիցս կրկնել։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Եւ ևս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։ Աստուած իմ,՝ի քեզ յուսացայ՝ մի ամաչեցից, և մի ծիծաղեսցին զինև թշնամիք իմ։

Ամենեքեան ոյք համբերեն քեզ՝ մի ամաչեսցեն, այլ ամաչեսցեն անօրէնք յունայնութեան իւրեանց։

Զճանապարհս քո Տէր, ցոյց ինձ, և զշաւիղս քո ուսո ինձ։

Առաջնորդեա ինձ՝ի ճշմարտութեան քում և ուսո զիս, զի դու ես Աստուած փրկիչ իմ, և ես քեզ համբերի զօրհանապազ։

Յիշեա Տէր զգթութիւնս քո և զողորմութիւնս, որ ենն յաւիտենից։

Զմեղս մանկութեան իմոյ եւ զանգիտու-
թեան իմոյ մի՛ յիշեր. այլ յիշեա զիս Տէր
ըստ ողորմութեան քում՝ վասն քաղցրու-
թեան քոյ, զի քաղցր և ուղիղ ես Տէր։
Վասն այսորիկ օրէնսդրէ առնես զմեղա-
ւորս ՚ի ճանապարհի, առաջնորդես հեզոց
՚ի դատաստանի. եւ ուսուցանես հեզոց
զճանապարհս քո։
Ամենայն ճանապարհք Տեառն ողորմու-
թեամբ և ճշմարտութեամբ են այնոցիկ,
ոյք խնդրեն զուխտ և զվկայութիւն նորա։
Վասն անուան քոյ Տէր քաւեա զմեղս իմ,
զի բազում եղեն. ո՞վ է մարդ որ երկնչի
՚ի Տեառնէ. օրէնսդրէ առնէ զնա ՚ի ճա-
նապարհի յոր և հաճեցաւ։
Անձն նորա ՚ի բարութեան հանգիցէ, և
զաւակ նորա ժառանգեսցէ զերկիր։
Զօրութիւն է Տէր երկիւղածաց իւրոց,
և զկտակարանս իւր ուսուցանէ նոցա։
Աչք իմ յամենայն ժամ առ Տէր, և նա
հանէ յորոգայթէ զոտս իմ։
Նայեա առ իս և ողորմեա ինձ, զի միամօր
և աղքատ եմ ես։
Նեղութիւնք սրտի իմոյ բազում եղեն
յոյժ, և ՚ի վշտաց իմոց հան զիս։

*Տես զխոնարհութիւն իմ և զվաստակ իմ,*
*և թող ինձ զամենայն մեղս իմ։*
*Տես զթշնամիս իմ՝ զի բազում եղեն, ա-*
*տելութիւն՝ զոր 'ի նանիր ատեցին զիս։*
*Պահեա զանձն իմ և փրկեա զիս, եւ մի*
*յամօթ եղէց՝ զի յուսացայ 'ի քեզ։*
*Անբիծք և ուղիղք կցորդ եղեն ինձ, եւ*
*ես քեզ համբերի. փրկեա, Աստուած, զիս-*
*րայէլ յամենայն նեղութեանց նորա։*

Փառք Հօր և։ Եւ եւս խաղաղ։ Օրհնութիւն և։

*Դատ արա ինձ Տէր զի ես յանբծութեան*
*իմում գնացի, 'ի Տէր յուսացայ զի մի*
*եղէց հիւանդ։*
*Փորձեա զիս Տէր և քննեա զիս, փորձեա*
*զերիկամունս իմ և զսիրտ իմ։*
*Ողորմութիւն քո Տէր առաջի աչաց իմոց,*
*և հաճոյ եղէց ճշմարտութեան քում։*
*Ո՛չ նստայց ես յաթոռս նանրաց, եւ ընդ*
*անօրէնս ես ոչ մտից։*
*Ատեցի ես զժողովս չարաց, և ընդ ամբա-*
*րիշտս ես ոչ նստայց։*
*Լուացից սրբութեամբ զձեռս իմ, եւ*
*շուրջ եղէց զսեղանովդ քոյ Տէր։*
*Լսել ինձ զձայն օրհնութեան քոյ, և պատ-*
*մել զամենայն սքանչելիս քո։*

Տէր, սիրեցի զվայելչութիւն տան քոյ, և զտեղի յարկի փառաց քոց։
Մի կորուսաներ ընդ ամպարշտաս զանձն իմ, և մի ընդ արս արիւնահեղս զկեանս իմ։
Որոց ձեռք իւրեանց յանօրէնութեան են, և աջ նոցա լի է կաշառօք։
Ես յանբծութեան իմում գնացի, փրկեա զիս Տէր և ողորմեա ինձ։
Ոտն իմ կացցէ յուղղութեան, յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ։

Փառք Հօր և։ Եւ եւս խաղաղ։ Օրհնութիւն և։

Տէր, լոյս իմ եւ կեանք իմ, ես յումէ՞ երկեայց. Տէր ապաւէն կենաց իմոց, ես յումէ՞ դողացայց։
Ի մերձենալ առ իս չարաց ուտել զմարմինս իմ, նեղիչք իմ եւ թշնամիք իմ նոքա տկարացան և անկան։
Թէ պատրաստեսցի ՚ի վերայ իմ պատերազմ, ոչ երկիցէ սիրտ իմ. թէ յարիցէ ՚ի վերայ իմ ճակատամարտ, սակայն եւ այսուիկ ՚ի քեզ Տէր յուսացայ։
Զմի խնդրեցի ՚ի Տեառնէ եւ զնոյն աղաչեմ, բնակել ինձ ՚ի տան Տեառն զամենայն աւուրս կենաց իմոց։

Տեսանել ինձ զվայելչութիւն Տեառն, և հրաման տալ 'ի տաճարի նորա։

Մածկեաց զիս 'ի խորանի իւրում յաւուր չարի, ընդ յարկաւ արար զիս 'ի ծածկոյթ խորանի իւրում։

Ի վիմէ բարձր արարեր զիս, եւ այժմ բարձր արա զգլուխ իմ 'ի վերայ թշնամեաց իմոց։

Շուրջ եղէց և մատուցից 'ի խորանի նորա պատարագ օրհնութեան, օրհնեցից եւ սաղմոս ասացից Տեառն։

Լուր Տէր ձայնի իմում, զի կարդացի առ քեզ, ողորմեա ինձ և լուր ինձ, զի քեզ ասաց սիրտ իմ, եւ խնդրեցին երեսք իմ, զերեսս քո Տէր խնդրեցին։

Մի դարձուցաներ զերեսս քո յինէն, եւ մի խոտորիր բարկութեամբ 'ի ծառայէ քումմէ։

Օգնական իմ լեր Տէր, և մի անարգեր զիս, և մի թողուր զիս Աստուած փրկիչ իմ։

Հայր իմ եւ մայր իմ թողին զիս, եւ Տէր ընկալաւ զիս։

Օրէնսդէտ արա զիս Տէր 'ի ճանապարհի քում, առաջնորդեա ինձ 'ի շաւիղս քո ուղիղս։

Վասն թշնամեաց իմոց, մի մատներ զիս
'ի ձեռս նեղչաց իմոց։
Յարեան 'ի վերայ իմ վկայք մեղաց, եւ
ստեցին ինձ յանօրէնութեան իւրեանց։
Հաւատացի տեսանել զբարութիւն Տեա-
ռըն յերկրին կենդանեաց. համբեր Տեառն
եւ քաջալերեաց, զօրասցի սիրտ քո եւ համ-
բեր Տեառն։

Փառք Հօր եւ։ Այժմ եւ միշտ եւ։

Ուրէ շուրջառն կարմիր և աղիտակ ընթե– 'ի խոր-
հուրդ կենարար Արեան և Ջրոյն, որ ել 'ի փեգա-
խոց կողէն Քրիստոսի, և ասէ Շարականն.

ԲԿ. Երրորդութիւն անբաժանելի եւ
զօրութիւն երկնային լոյս ծագեալ
յաշխարհ. նմին իբրեւ հանցուք զօրհ-
նութիւնս երգով։
Որ էջըն յերկնից, այսօր եւ հանգեաւ
յԱռաքեալսն ճշմարիտ սուրբ Հոգին.
նմին իբրեւ հանցուք։
Որ 'ի խորհուրդս փրկական այսօր
ընդ իջանել յԱռաքեալսն ծանուցաւ
Մարգարէին. նմին իբրեւ հան։

Քարոզ ։

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր, զի սովաւ փրկեսցէ զմեզ 'ի մեղաց, և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա ։

Աղօթք ։

Պահպանեա զնարօտս Քրիստոս Աստուած մեր ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիդ քով 'ի խաղաղութեան, փրկեա յերեւելի եւ յաներեւոյթ թշնամւոյն ։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։

Ամէն ։

Հայր մեր որ յերկինս ։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛ ։

Աղօթք ։

Տէր Աստուած մեր՝ որ զհեռացեալս 'ի քէն զազգս մարդկան, զանկեալս 'ի դըրախտէն փափկութեան՝ ոչ անտես արարեր ։ Այլ գթացեալ խոնարհեցար 'ի քումմէ բարձրութենէդ 'ի մեր նուաստութիւնս, առնելով զբոլոր մեր բնութիւնս բաց 'ի մեղաց ։ Զարչարանօք եւ

մահու խաչի զփրկութիւն մեր և զդարձ գնեալ, վերստին շնորհեցեր մեզ կենդանութիւն։ Ընկալ և այժմ մարդասէր Տէր՝ զբարեյօժարութիւն ստեղծուածոյս քո, որ դիմեաց մերձենալ ՚ի սուրբ եւ ՚ի ճշմարիտ Աստուածութիւնդ քո քրիստոնեայ անուն յանձին կրելով։ Նորոգեա զսա յամենայն նեղութենէ մեղաց. եւ ազատեա ՚ի ծառայութենէ սատանայի։ Եւ տուր սմա զօրութիւն և օգնականութիւն արժանաւորիլ և հասանիլ ՚ի մաքրութիւն սուրբ Աւազանին, և ՚ի ժառանգութիւն երկնից արքայութեանդ, Տերամբդ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ։ Ընդ որում Հօր՝ միանգամայն և Հոգւոյդ Սրբոյ՝ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն երախայիս աղաչեսցուք զմարդասէրն Աստուած, զի ողորմեսցի ըստ մեծի ողորմութեան իւրում. և արժանաւորեսցէ զսա լուացման վերստին ծնընդեան, և զգեստու անապականութեան։

Եւ զուգաթուեսցէ զսա ընդ հաւատա-ցեալս անուան իւրոյ. և կեցուսցէ շնոր-հիւ ողորմութեամբն իւրով։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ եւ ողոր-մեսցի։

Եւ Քահանայն ասէ Երէք Տէր ողորմեա։

Աղօթք ։

Ընկալ մարդասէր Տէր՝ զընծայեալս քեզ զերախայս զայս, և սրբեա զմիտս և ըզ-խորհուրդս սորա յամենայն ներգործու-թեանց հակառակորդին։ Եւ արժանի ա-րա զսա ՚ի ձեռն սուրբ Աւազանին լուա-նալ զհնութիւն մեղաց իւրոց, և նորո-գել լուսով շնորհաց քոց։ Զի և սա մեօք հանդերձ փառաւորեսցէ զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգի, այժմ և միշտ և յաւի-տեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն քաւութեան մեղաց եւ թողու-թեան յանցանաց, և իջանելոյ ողորմու-թեանն Աստուծոյ ՚ի վերայ երախայիս՝ զՏէր աղաչեսցուք։

Եւ փոխանակայն ասէ երէց՝ Տէր ողորմեա։

Աղօթք։

Տէր Աստուած մեծ՝ եւ փառաւորեալ յամենայն արարածոց. ՚ի քո ահաւոր եւ ամենազօր անուանդ ապաւինեալ ծառայս քո, խոնարհեցոյց զգլուխ իւր անուանդ քում սրբոյ. որում կրկնի ամենայն ծունր երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց. եւ ամենայն լեզու խոստովան լինի, եթէ Տէր է Յիսուս Քրիստոս ՚ի փառս Աստուծոյ Հօր։ Արդ՝ յայդմ ահաւոր անուանէդ միայն հաղորդութեան ընկալցի սա. որ հալածեաց ըզխաբէութիւն սատանայի, եւ զամենայն որոգայթս մոլորութեան նորա խափանեաց։ Նայեա, Տէր, ողորմութեամբ քով ՚ի սա. մերժեա և հեռացո ՚ի սմանէ ամենայաղթ կոչմամբ անուան քո ՚ի վերայ սորա. զխորհուրդս՝ զբանս եւ զգործս, և զամենայն խաբէութիւնս չարին, որով սովոր է խաբել և կորուսանել զմարդիկ։ Որպէս զի զարհուրեալ ՚ի յաղթող անուանէդ քումմէ, տագնապեսցի և տանջեսցի աներեւոյթ տանջանօք. եւ երդմամբ հեռացեալ ՚ի սմանէ, այլ մի եւս դարձցի

'ի սա ։ Լցո զսա երկնային շնորհօքդ , եւ զուարճացո ամենաբարի կոչմամբ քրիստոնեայ անուանելով . եւ արժանի արա զսա Մկրտութեան վերստին ծննդեան սուրբ Աւազանին ։ Եւ ընդունելով զՀոգիդ քո Սուրբ , մարմին եւ անդամ եղիցի Եկեղեցւոյ քում սրբոյ ։ Եւ անարատ քրիստոնէութեամբ կրօնաւորեալ յայսմ աշխարհիս՝ հանդերձելոց բարեացդ հասցէ ընդ ամենայն սուրբս քո ։ Փառաւորելով զանփոփոխելի Տէրութիւնդ քո , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Ապա կնքահայրն երեք ծունր կրկնէ և ասէ երիցս .

Ի քեզ անկայ ես յարգանդէ . յորովայնէ մօր իմոյ դու ես Աստուած իմ ։

Ապա կնքահայրն առնու զերեխայն 'ի գիրկն , դառնայ յարեւմուտս՝ և ասէ ընդ քահանային երիցս անգամ ։

Հրաժարիմք 'ի սատանայէ՝ եւ յամենայն խաբէութենէ նորա . 'ի պատրանաց նորա . 'ի խորհրդոց նորա . 'ի գնացից նորա . 'ի չար կամաց նորա . 'ի չար հրեշ-

տակաց նորա. 'ի չար պաշտօնէից նորա. 'ի չար կամարարաց նորա. և յամենայն չար զօրութենէ նորա. հրաժարելով հրաժարիմք։

Ապա դառնայ յարևելս՝ և ասէ.

Դաւանանք 'ի լոյս Աստուածգիտութեան։

Հաւատամք յԱմենասուրբ Երրորդութիւնն 'ի Հայր, և յՈրդի, եւ 'ի Սուրբ Հոգի։ Զաւետումն Գաբրիէլի, զծնունդն Քրիստոսի, զՄկրտութիւնն, զՉարչարանսն, զԽաչելութիւնն, զԹաղումն երեքօրեայ, զՅարութիւնն, զաստուածապէս Համբարձումն, զնստիլն ընդ աջմէ Հօր, զահաւոր և զփառաւորեալ զմիւսանգամ Գալուստն՝ խոստովանիմք և հաւատամք։

---

Ալէլուիա Օրհնի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Իսկ մետասան աշակերտքն գնացին 'ի

Գալիլեա 'ի լեառնն՝ ուր ժամադիր եղեւ նոցա Յիսուս. իբրեւ տեսին զնա՝ երկիրպագին նմա, եւ ոմանք յերկուացան: Եւ մատուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ նոսա եւ ասէ. Տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս եւ յերկրի. որպէս առաքեաց զիս Հայր, և ես առաքեմ ըզձեզ: Գնացէք այսուհետեւ՝ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ: Ուսուցէք նոցա պահել զամենայն որ ինչ պատուիրեցի ձեզ: Եւ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս՝ մինչեւ 'ի կատարած աշխարհի:

Հաւատամք 'ի մի Աստուած 'ի Հայրն ամենակալ, յարարիչն երկնի և երկրի, երեւելեաց և աներեւութից: Եւ 'ի մի Տէր Յիսուս Քրիստոս՝ յՈրդին Աստուծոյ՝ ծնեալն յԱստուծոյ Հօրէ միածին, այսինքն յէութենէ Հօր: Աստուած յԱստուծոյ, լոյս 'ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ՝ ծնունդ եւ ոչ արարած: Նոյն ինքն 'ի բնութենէ Հօր, որով ամենայն ինչ եղեւ յերկինս և 'ի վերայ երկրի երեւելիք

և աներեւոյթք։ Որ յաղագս մեր մարդկան և վասն մերոյ փրկութեան իջեալ յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս 'ի Մարիամայ Սրբոյ Կուսէն Հոգւովն Սրբով։ Որով էառ զմարմին զհոգի եւ զմիտ, եւ զամենայն որ ինչ է 'ի մարդ, ճշմարտապէս եւ ոչ կարծեօք։ Չարչարեալ, խաչեալ, թաղեալ, յերրորդ աւուր յարուցեալ, ելեալ 'ի յերկինս նովին մարմնովն նստաւ ընդ աջմէ Հօր։ Գալոց է նովին մարմնովն և փառօք Հօր 'ի դատել զկենդանիս և զմեռեալս, որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան։ Հաւատամք և 'ի Սուրբ Հոգին յանեղն եւ 'ի կատարեալն, որ խօսեցաւ յօրէնս և 'ի մարգարէս և յԱւետարանս։ Որ էջն 'ի Յորդանան, քարոզեաց զԱռաքեալսն, եւ բնակեցաւ 'ի Սուրբսն։ Հաւատամք և 'ի մի միայն յընդհանրական եւ յառաքելական եկեղեցի, 'ի մի մկրտութիւն, յապաշխարութիւն, 'ի քաւութիւն եւ 'ի թողութիւն մեղաց։ Ի յարութիւնն մեռելոց, 'ի դատաստանն յաւիտենից հոգւոց և մարմնոց, յարքայութիւնն երկնից և 'ի կեանսն յաւիտենականս։

Իսկ որք ասեն, էր երբեմն՝ յորժամ ոչ էր Որդի, կամ էր երբեմն՝ յորժամ ոչ էր Սուրբ Հոգի, կամ թէ՝ յոչէից եղեն, կամ յայլմէ էութենէ ասեն լինել զՈրդին Աստուծոյ և կամ զՍուրբ Հոգին. եւ թէ՝ փոփոխելիք են կամ այլայլելիք, զայնպիսին նզովէ կաթուղիկէ և առաքելական սուրբ Եկեղեցի։

Ի սրբոյ Լուսաւորչէն մերմէ ասացեալ։

Իսկ մեք փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս. երկիրպագանելով Սրբոյ Երրորդութեան և միոյ Աստուածութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Եւ եւս հաւատով աղաչեսցուք և խնդրեսցուք 'ի Տեառնէ Աստուծոյ և 'ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ 'ի ժամուս պաշտաման և աղօթից. Զի արժանի ընդունելութեան արասցէ. լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց. Ընկալցի զխնդրուածս սրտից մերոց. Թողցէ զյանցանս մեր. ողորմեսցի 'ի վերայ մեր։

Աղօթք մեր եւ խնդրուածք յամենայն
ժամ մտցեն առաջի մեծի տէրութեան
նորա ։ Եւ նա տացէ մեզ միաբան միով
հաւատով և արդարութեամբ վաստակիլ
'ի գործս բարեաց ։ Զի զողորմութեան
զշնորհն իւր՝ արասցէ 'ի վերայ մեր Տէրն
ամենակալ․ կեցուսցէ և ողորմեսցի ։

Կեցո Տէր ։

Զժամս և զառաջիկայ օրս խաղաղութեամբ
անցուցանել հաւատով՝ 'ի Տեառնէ խնդ-
րեսցուք ։

Շնորհեա Տէր ։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան ան-
ձանց մերոց 'ի Տեառնէ խնդրես ։
Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց
մերոց 'ի Տեառնէ խնդրես ։
Զսրբոյ խաչին մեծ և կարող զօրութիւն
յօգնութ͞ի անձանց մերոց 'ի Տ͞ն͞է խնդրես ։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ
հաւատոյս մերոյ զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա ։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու-
ծոյ ամենակալին յանձն արասցուք ։

Քեզ Տեառնդ յանձն եղիցուք ։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մե-

ծի ողորմութեան քում ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողոր։

Աղօթք։

Տէր մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծդ ես ողորմութեամբ և առատ պարգեւօք բարերարութեան քո։ Որ դու քոյին կամաւդ 'ի ժամուս յայսմիկ համբերեցեր չարչարանաց Խաչի և մահու՝ յաղագս մեղաց մերոց։ Եւ պարգեւեցեր առատապէս զպարգեւս Հոգւոյդ Սրբոյ երանելի Առաքելոցն։ Հաղորդս արա և զմեզ Տէր, աղաչեմք զքեզ՝ Աստուածային պարգեւացդ. Թողութեան մեղաց և ընդունելութեան Հոգւոյդ Սրբոյ։ Որպէս զի՝ արժանաւորք եղիցուք գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Խաղաղութեամբ քով Քրիստոս Փրկիչ մեր, որ 'ի վերդ է քան զամենայն միտս և զբանս, ամրացո զմեզ և աներկիւղ պահեա յամենայն չարէ։ Հաւասարեա՛ զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս քո, որք հոգւով և ճշմարտութեամբ քեզ երկրպագանեն։ Վասն

զի՝ ամենասուրբ Երրորդութեանդ վայե-լեն փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ամէն։ Հայր մեր որ յերկինս։

Ալէլուիա ալէլուիա։

Խոստովան եղերուք Տեառն՝ զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ասասցէ տունն Իսրայէլի՝ զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ասասցէ տունն Ահարոնի՝ զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ասասցեն երկիւղածք Տեառն՝ զի յաւի-տեան է ողորմութիւն նորա։

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդա-ցի, և լուաւ ինձ յանդորր։

Տէր է իմ օգնական եւ ես ոչ երկեայց, զի՞ արասցէ ինձ մարդ։

Տէր է իմ օգնական, եւ ես տեսից 'ի թշնամիս իմ։

Բարի է յուսալ 'ի Տէր՝ քան յուսալ 'ի մարդիկ, բարի է՝ յուսալ 'ի Տէր՝ քան յու-սալ յիշխանս։

Ամենայն ազինք շրջեցան զինև, եւ ա-

Նուամբ Տեառն յաղթեցի նոցա։
Շրջելով շրջեցան զինեւ, պաշարեցին զիս 'ի միասին, և անուամբ Տ՟ն վանեցի զնոսա։
Շուրջ եղեն զինեւ որպէս մեղուք, վառեցան բորբոքեցան որպէս փուշք 'ի հուր, և անուամբ Տեառն մերժեցի զնոսա։
Ի մերժելն դրդուեցայ եւ եղէ մերձ 'ի գլորիլ, և Տէր ընկալաւ զիս։
Զօրութիւն իմ եւ օգնութիւն իմ Տէր, և եղեւ ինձ 'ի փրկութիւն։
Ձայն ցնծութեան փրկութեան 'ի յարկս արդարոց։
Աջ տեառն արար զօրութիւն, աջ Տեառն բարձր արար զիս, եւ աջ Տեառն արար զօրութիւն։
Ոչ մեռայց, այլ կեցից եւ պատմեցից զգործս Տեառն։
Խրատելով խրատեաց զիս Տէր, և 'ի մահ ոչ մատնեաց։
Բացէք ինձ զդրունս արդարութեան՝ զի մտից ընդ այն, և խոստովան եղէց Տեառն։

Աստ մտանեն յեկեղեցին ասելով.

Այս դուռն Տեառն է, և արդարք մտանեն ընդ սա։

Խոստովան եղէց քեզ, Տէր, զի լուար ինձ,
և եղեր ինձ ՚ի փրկութիւն։
Վէմն զոր անարգեցին շինօղքն, նա եղեւ
գլուխ անկեան։
Ի Տեառնէ եղեւ այս, և է սքանչելի ա-
ռաջի աչաց մերոց։
Այսօր է զոր արար Տէր, եկայք ցնծաս-
ցուք և ուրախ եղիցուք ՚ի սմա։
Ո՛ Տէր, փրկեա, ո՛ Տէր, առաջնորդեա.
օրհնեալ որ գալոց ես յանուն Տեառն,
և օրհնեցաք զքեզ ՚ի տանէ Տեառն։
Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ, ա-
րարէք տօնս ուրախութեան կանխաւ՝
մինչեւ յանկիւնս սեղանոյ։
Աստուած իմ ես դու՝ խոստովան եղէց
քեզ. Աստուած իմ ես դու՝ եւ բարձր
արարից զքեզ։
Խոստովան եղէց քեզ, Տէր, զի լուար ինձ,
և եղեր ինձ ՚ի փրկութիւն։
Խոստովան եղերուք Տեառն, զի բարի է,
զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Շարական։

Դկ. Զողորմութեա՛ն քո զդուռըն բա՛ց
մե՛զ Տէր. և արժանի ա՛րա՛ զմեզ լուսե-

ղէն յարկա՛ց քոց ընդ սուրբս քո՛։
Ի պատրաստեա՛լ քո յօթեւա՛նըս սըր-
բոց քոց ընկա՛լ եւ ը՛զմեզ Փըրկի՛չ յոր-
դեգրութիւն 'ի դըպրութեա՜ն կենա՛ց։
Ի նստի՛լ քո յատենի՛ դատա՛ւոր ահեղ
խնայեա՛ յարարա՛ծըս քո. բարե՛խօսու-
թեամբ եւ աղօթիւք սուրբ Ճը՛գնաւո-
րա՛ցն։

Աղաղակեցէք առ Տէր, ամենայն երկիր.
ծառայեցէք Տեառն ուրախութեամբ։
Մտէք առաջի նորա ցնծութեամբ, ծանե-
րուք զի նա է Տէր Աստուած մեր։
Նա արար զմեզ եւ ոչ մեք էաք, մեք
ժողովուրդք և խաշն արօտի նորա։
Մտէք ընդ դրունս նորա խոստովանու-
թեամբ, եւ օրհնութեամբ 'ի յարկս
նորա։
Խոստովան եղերուք Տեառն, և օրհնեցէք
զանուն նորա։
Քաղցր է Տէր, յաւիտեան է ողորմու-
թիւն նորա. ազգէ մինչեւ յազգ է ճըշ-
մարտութիւն նորա։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Քարոզ։

Սուրբ եկեղեցեաւս աղաչեացուք զՏէր՝ զի սովաւ փրկեսցէ զմեզ 'ի մեղաց. եւ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ։ Ամենակալ Տէր Աստուած մեր՝ կեցո եւ ողորմեա։

Աղօթք։

Ի մէջ տաճարիս, և առաջի Աստուածընկալ եւ պայծառացեալ սուրբ նշանացս, և սուրբ Սեղանոյս՝ խոնարհեալ երկիւղիւ երկիրպագանեմք. զսուրբ եւ զհրաշալի և զյաղթող զՅարութիւնդ քո փառաւորեմք. եւ քեզ մատուցանեմք զօրհնութիւն և զփառս ընդ Հօր եւ ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Երգեան դէպ յԱ–ռաջնն առելով Տարախն.

ԳՁ. Արեգակն արդարութեան Քրիստոս ծագեալ յաշխարհ հալածեաց ըղխաւարն անգիտութեան. եւ յետ մահու և յարութեան համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց եւ յերկրաւորաց ընդ Հօր եւ

Սուրբ Հոգւոյն. վասն որոյ եւ մեք երկիրպագանեմք Հօր Հոգւով եւ ճշմարտութեամբ։

Որ փոխանակ ծոցածին բանին որ էր յերկինս, առաքեցաւ աւետիքն Հօր ի բարձանց Հոգին ճշմարտութեան, մխիթարել զորս յԱդամայ տրտմեցելոց, եւ հրաւիրել զընտրեալ դասս Առաքելոցն. վասն որոյ եւ մեք եր։

Այսօր տրտմական եւ գիշերային լուծան երկունք ծննդեան Դժոխամօրն. քանզի զծընեալսն մարմնով ի մահ եւ յապականութիւն. վերըստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վասն որոյ եւ մեք եր։

Առնու Քահանայն զիւղն օծութեան ի ձեռն իւր, եւ Սարկաւագն ասէ.

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն իջանելոյ շնորհաց Հոգւոյն Սրբոյ ընդ իւղս այսորիկ՝ զՏէր աղաչեսցուք։

Եւ Քահանայն ասէ Երեք Տէր ողորմեա։

Աղօթք։

Օրհնեալ ես Տէր Աստուած ամենակալ, որ

ընտրեցեր քեզ նոր ժողովուրդ 'ի քահա-
նայութիւն և 'ի թագաւորութիւն, յազգ
սուրբ, ժողովուրդ սեպհական, ըստ ո-
րում նմանութեան յառաջագոյն օծեր ըզ-
քահանայս, զՄարգարէս և զԹագաւորս՝
ամենասուրբ այսպիսի իւղով։ Եւ այժմ
աղաչեմք զքեզ Տէր բարերար, առաքեա
զշնորհս ամենասուրբ Հոգւոյդ ընդ իւղոյս.
զի որ օծցի, եղիցի նմա 'ի սրբութիւն հո-
գևոր իմաստութեան, 'ի նահատակութիւն
և 'ի յաղթութիւն հակառակամարտին։ Ի
զօրութիւն պատուիրանապահութեան ա-
ռաքինի գործոց, և յամենակատար հրա-
հանգս և 'ի կրթութիւնս Աստուածպաշ-
տութեան։ Որպէս զի լուսաւորեալ միօք
կեցցէ յայսմ յաշխարհիս 'ի փրկութիւն
անձին իւրոյ, 'ի պատիւ և 'ի փառս ամե-
նասուրբ Երրորդութեանդ։ Եւ արժանի
լիցի հասանել վիճակի ժառանգութեան
սրբոցն 'ի լոյս։ Փառաւորելով զՀայր եւ
զՈրդի և զՍուրբ Հոգի, այժմ և միշտ և
յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Արկանէ զՋուրն յԱւազանն խաչանման՝ և ասէ.

Ձայն Տեառն 'ի վերայ ջուրց, և Աստուած

փառաց որոտաց, եւ Տէր ինքն 'ի վերայ
ջուրց բազմաց։

Մատուցէք Տեառն, որդիք Աստուծոյ, մատուցէք Տեառն զորդիս խոյոց։

Մատուցէք Տեառն զփառս և զպատիւ, մատուցէք Տեառն զփառս անուան նորա.

'եւ երկիրպագէք Տեառն 'ի սրահ սրբութեան նորա։

Ձայն Տեառն 'ի վերայ ջուրց, և Աստուած փառաց որոտաց, եւ Տէր ինքն 'ի վերայ ջուրց բազմաց։

Ձայն Տեառն զօրութեանց, և ձայն Տեառն մեծվայելչութեանց։

Ձայն Տեառն փշրէ զմայրս, և մանրէ Տէր զմայրսն Լիբանանու։

Մանրեսցէ զնոսա որպէս զմատաղատունկն Լիբանանու, որ սիրելին է որպէս զորդիս միեղջերուի։

Ձայն Տեառն հատանէ զբոց հրոյ. ձայն Տեառն շարժէ զանապատն, և խռովեցուցանէ Տէր զանապատն Կադէս։

Ձայն Տեառն հաստատէ զեղջերուս, եւ յայտնի առնէ զանտառս։

Ի տաճարի նորա ամենեքեան ասասցեն զփառս նորա։

Տէր զՋրհեղեղս նստուցանէ և ցածուցանէ, թագաւորեսցէ Տէր յաւիտեան։ Տէր զօրութիւն ժողովրդեան իւրոյ տացէ, և օրհնեսցէ զժողովուրդ իւր 'ի խաղաղութիւն։

Ընթերցուած յԵզեկիէլէ մարգարէէ։

Այսպէս ասէ Տէր. և ցանեցից 'ի վերայ ձեր ջուր սուրբ, եւ սրբեսջիք յամենայն պղծութեանց ձերոց, եւ յամենայն կռոց ձերոց սրբեցից զձեզ։ Եւ տաց ձեզ սիրտ նոր, և հոգի նոր նորոգեցից 'ի ձեզ. եւ հանից զսիրտն քարեղէն 'ի մարմնոց ձերոց, և տաց ձեզ սիրտ մարմնեղէն, եւ զհոգի իմ տաց ձեզ։ Եւ արարից՝ զի յարդարութիւնս իմ գնասջիք, և զիրաւունս իմ պահիցէք եւ առնիցէք զնոսա. եւ բնակիցէք յերկրին՝ զոր ետու հարցն ձերոց, և եղիջիք ինձ 'ի ժողովուրդ, եւ ես եղէց ձեզ յԱստուած ասէ Տէր։

Պօղոսի առաքելոյն 'ի Գաղատացւոց թղթոյն է ընթերցուածս։

Ապա օրէնքն դաստիարակ եղեն մեզ 'ի Քրիստոս Յիսուս, զի 'ի հաւատոցն արդարասցուք։ Այլ իբրեւ եկին հաւատքն, ոչ ևս ընդ դաստիարակաւ եմք. քանզի ամե-

նեքին որդիք Աստուծոյ էք՝ հաւատովք 'ի Յիսուս Քրիստոս։ Որք միանգամ 'ի Քրիստոս մկրտեցարուք՝ զՔրիստոս զգեցեալ էք. չիք խտիր, ոչ հրէի և ոչ հեթանոսի. ոչ ծառայի և ոչ ազատի, ոչ արուի և ոչ իգի. զի ամենեքեան դուք մի էք 'ի Քրիստոս Յիսուս։ Ապա եթէ դուք Քրիստոսի էք, ուրեմն Աբրահամու զաւակ էք՝ ըստ աւետեացն ժառանգք։

Ալէլուիա ալէլուիա.

Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցի։

Ալէլուիա Օրթի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սուրբ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ էր այր մի 'ի փարիսեցւոց անտի Նիկոդիմոս անուն նորա, իշխան հրէից։ Սա եկն առ Յիսուս 'ի գիշերի և ասէ ցնա. Ռաբբի, գիտեմք թէ յԱստուծոյ եկեալ ես վարդապետ. զի ոչ ոք կարէ զայդ նշանս առնել՝ զոր դուդ առնես, եթէ ոչ Աստուած

իցէ ընդ նմա։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. ամէն ամէն ասեմ քեզ, եթէ ոչ ոք ծնցի վերստին, ոչ կարէ տեսանել զարքայութիւն Աստուծոյ։ Ասէ ցնա Նիկոդիմոս. զիա՞րդ կարէ մարդ ծնանել՝ որ ծերն իցէ. միթէ մա՞րթ իցէ անդրէն յորովայն մօր իւրոյ կրկին մտանել և ծնանել։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ամէն ամէն ասեմ քեզ, եթէ ոչ ոք ծնցի 'ի ջրոյ և 'ի Հոգւոյ, ոչ կարէ մտանել յարքայութիւն Աստուծոյ. զի ծնեալն 'ի մարմնոյ՝ մարմին է, եւ ծնեալն 'ի Հոգւոյ՝ հոգի է։ Դու մի՛ զարմանար, թէ ասացի քեզ, պարտ է ձեզ ծնանել վերստին. զի հողմ՝ ուր կամի շնչէ, և զձայն նորա լսես, այլ ոչ գիտես ուստի՞ գայ կամ յո՞ երթայ. սոյնպէս և ամենայն ծնեալն 'ի Հոգւոյն։

Քարոզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն 'ի վերուստ խաղաղութեն և փրկութեան անձանց մերոց զՏէր աղաչեսցուք։

Լուր Տէր և ողորմեա։

Վասն սրբելոյ զՋուրս զայս ներգործութեամբ Հոգւոյն Սրբոյ, զՏէր աղա։

Վասն որդիս լուսոյ առնելոյ զոր 'ի սմա մկրտին, զՏէր աղա:

Վասն աստուածային զօրութի զգեցուցանելոյ սորա՝ ընդդէմ հակառակամարտին օծմամբ իւղոյս այսմիկ, զՏէր աղա:

Վասն անօթ սրբութեան լինելոյ սորա առընդունելութիւն աստուածատուր խորհըրդոցն, զՏէր աղա:

Վասն գնալոյ սորա յարժանաւոր հրաւէր վերստին կոչման յոր կոչեցաւն, զՏէր աղա:

Վասն ամուր և հաստատուն շնորհել սորա զպխտութի առաքելական հաւատոյ, զՏէր ա:

Վասն ժառանգորդս առնելոյ զսա արդարոցն խոստմանց, զՏէր աղա:

Վասն փրկելոյ զսա և զմեզ յամենայն նեղութենէ, 'ի բարկութենէ, 'ի վշտաց և 'ի վտանգից, զՏէր աղա:

Ընկալ կեցո և ողորմեա և պահեա զսա Տէր քոյին շնորհիւ:

Զամենասրբուհի Աստուածածինն զմիշտ կոյսն Մարիամ, հանդերձ ամենայն սրբովք յիշելով զՏէր աղաչեսցուք:

Եւ եւս միաբան վասն Ճշմարիտ և սուրբ:

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու:

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մե:

Ե— Քահանայն ասէ Երէց Տէր ողորմեա։

Աղօթք։

Դու Տէր, զօրութեամբ քով մեծաւ արարեր զծով և զցամաք, և զամենայն որ 'ի նոսա արարածս իցեն. որոշեցեր և կացուցեր զջուրն 'ի վերոյ քան զերկինս՝ 'ի բնակութիւն երկնաւոր զուարթնոցն, որ կան յանդադար փառաբանութեան քում։ Առաքեցեր եւ զսուրբ զԱռաքեալսն քո, տալով նոցա հրաման քարոզել և մկրտել զամենայն հեթանոսս՝ յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։ Այլ և սահմանեցեր անսուտ բանիւ քով՝ ոչ ծնանելոցն 'ի ջրոյ եւ 'ի Հոգւոյ ոչ մտանել յարքայութիւնն Աստուծոյ։ Ցորմէ բանէ զարհուրեալ ծառայս քո, և փափաքելով մշտնջենաւոր կենացդ, եկն կամաւ 'ի Մկրտութիւն Հոգեւոր ջրոյս այսորիկ։ Արդ՝ աղաչեմք զքեզ Տէր, առաքեա զՀոգիդ քո Սուրբ 'ի ջուրս յայս, և սրբեա զսա, որպէս սրբեցեր ըզՅորդանան իջանելով քո 'ի նմա՝ ամենասուրբդ 'ի մեղաց Տէր մեր Յիսուս Քրիստոս, յօրինակ այսմ Աւազանի Մկրտութեան՝ վերստին ծննդեան ամենայն մարդ-

կան ։ Եւ շնորհեա՛ սմա զՋուրս զայս յորում մկրտի այժմ, 'ի Թողութիւն մեղաց՝ և յընդունելութիւն Հոգւոյդ Սրբոյ . յորդէգրութիւն Հօրդ երկնաւորի՝ և 'ի ժառանգութիւն արքայութեանդ երկնից ։ Որպէս զի սրբեալ 'ի մեղաց , 'ի հաճոյս կամաց քոց կեցցէ յայսմ՝ աշխարհիս . և 'ի հանդերձելումն զանսպառ բարիսն ընկալցի ընդ ամենայն սուրբս քո . եւ ուրախութեամբ գոհասցի և միշտ փառաւորեսցէ զքեզ ընդ Հօր՝ և Սուրբ Հոգւոյդ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Եւ ապա Կնքահայրն տանէ 'ի Մերկացուցանել զերեխայն , և բերէ Մերկ առ ընթեր Քահանային . և առեալ Քահանայն զսուրբ Միւռոնն 'ի ձեռն և խաչաձևէ 'ի վերայ Ջրոյն ասելով .

Ամէն ալէլուիա ալէլուիա ալէլուիա ։

Օրհնեսցի և սրբեսցի Ջուրս այս՝ Նշանաւ սուրբ Խաչիս եւ սուրբ Աւետարանաւս , և սուրբ Միւռոնաւս և աւուրս շնորհիւ . անուամբ Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ , այժմ և միշտ և յաւիտեանս յա ։

Երիցս կրկնէ . և ապա ասէ .

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և

Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Հեղու զուրբ Միւռոնն յԱւազանն խաչանման ասելով՝ Շարական.

Դ Ձ. Առաքելոյ աղաւնոյ իջանելով մեծաձայն հնչմամբ 'ի բարձանց, 'ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն, մինչդեռ նստէին 'ի սուրբ Վերնատանն։

Աննիւթական աղաւնի, անքննելի որ քննէ ըզխորս Աստուծոյ. զոր առեալ 'ի Հօրէ պատմէ զահաւոր և ըզմիւսանգամ գալստեան. զոր քարոզեցին համագոյական։

Օրհնութիւն 'ի բարձունս, ելողին 'ի Հօրէ Հոգւոյն Սրբոյ. որով Առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն. և հրաւիրեցին զերկիրս 'ի յերկինս։

Եւ կնքահայրն կանգնի մերձ յԱւազանն. և Քահանայն ասէ զԱղօթս։

Որ կոչեցեր զծառայս քո Տէր 'ի սրբութիւն և 'ի լուսաւորութիւն Մկրտութեան,

*աղաչեմք զքեզ Տէր . արա զսա արժանի մեծի շնորհաց քոյ : Մերկեա՛ 'ի սմանէ զհնութիւն մեղաց , և նորոգեա 'ի կեանս նորս . և լցո՛ զօրութեամբ Հոգւոյդ Սրբոյ 'ի նորոգութիւն փառաց Քրիստոսի քոյ : Եւ քեզ Հզօրիդ՝ և միածնի Որդւոյ քո՝ եւ ազատիչ սուրբ Հոգւոյդ վայելէ՝ իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն :*

Հարցանէ Քահանայն . *Երեխայս զի՞նչ խնդրէ :*

Կնքահայրն ասէ . *Հաւատք , Յոյս , Սէր , եւ Մկրտութիւն : Մկրտիլ եւ արդարանալ , սրբիլ 'ի մեղաց , ազատիլ 'ի դիւաց , և ծառայել Աստուծոյ :* Երկիցս կրկնէ :

Եւ ասէ Քահանայն . *Ըստ հաւատոց քոց եղիցի քեզ :*

Ապա իջուցանէ զերախայն 'ի ջուրն .
և դնէ զանունն ասելով.

Այս անուն *ծառայս Աստուծոյ , եկեալ յերախայութենէ 'ի Մկրտութիւն , Մկրտի յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ : Գնեալ արեամբն Քրիստոսի 'ի ծառայութենէ մեղաց , ընդունի զորդէգրութիւն Հօրն երկնաւորի , լինիլ ժառանգակից Քրիստոսի , և տաճար Հոգւոյն Սրբոյ :*

Զայս միանգամ առեալ՝ երիցս թաղէ զերեխայն 'ի ջուրն. յօրինակ եռօրեայ թաղմանն Քրիստոսի։

Իսկ արդ՝ յասելն, Յանուն Հօր, ընկղմէ միանգամ. յասելն. և Որդւոյ, ընկղմէ միանգամ եւս. և յասելն, Հոգւոյն Սրբոյ, ընկղմէ դարձեալ։

Եւ այսպէս կոչումն անուան ամենասուրբ Երրորդութեան լինի միանգամ, և ընկղմումն երեք անգամ։

Եւ հանեալ 'ի ջրոյն՝ ասէ.

Որք 'ի Քրիստոս մկրտեցայք, զՔրիստոս զգեցեալ էք. ալէլուիա։

Որք 'ի Հայր լուսաւորեցայք, Սուրբ Հոգին բերկրեսցի 'ի ձեզ. ալէլուիա.

Բազում նեղութիւնք են արդարոց, յամենայնէ փրկէ զնոսա Տէր. և պահէ զամենայն ոսկերս նոցա, եւ մի 'ի նոցանէ մի՛ փշրեսցի։

Մահ մեղաւորին չար է, բայց որ ատէ զարդարն՝ զղջասցի.

Փրկէ Տէր զանձինս ծառայից իւրոց, մի՛ զղջասցին ամենեքեան՝ որք յուսացեալ են 'ի նա։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Ապա ասէ Շարական.

ԳՁ. Ո՛ր համագոյդ ես Հօ՛ր եւ Որդւոյ.

անճառաբար բղխումն ՚ի միշտ էէն. այսօր բղխեցեր ջուր կենդանի յերուսաղէմ. Հոգի Աստուծոյ ողորմեա։
Որ արարչակից ես Հօր և Որդւոյ, որով կենդանածնեալք ՚ի ջուրս արարածք. այսօր Որդիս Աստուծոյ ծնանիս ՚ի ջուրց. Հոգի Աս։
Որ փառակից ես Հօր և Որդւոյ. և քըննես ըզխորս Աստուծոյ. այսօր խորագէտս իմաստից զյիմարս աշխարհի արարեր. Հոգի Աս։

Պօղոսի առաքելոյն ՚ի Հռովմայեցւոց թղթոյն է ընթերցուածս։

Եթէ ոչ գիտէք, զի որ միանգամ մկրտեցաք ՚ի Քրիստոս Յիսուս, ՚ի մահ անդր նորա մկրտեցաք. Թաղեցաք ընդ նմին մկրտութեամբն ՚ի մահ, զի որպէս յարեաւ Քրիստոս ՚ի մեռելոց փառօքն Հօր, նոյնպէս և մեք ՚ի նորոգումն կենաց շրջեսցուք։ Զի եթէ տնկակից եղեաք նմանութեան մահու նորա, այլ և յարութեան նորա լինիցիմք։ Զայս գիտասջիք՝ զի հին մարդն մեր խաչակից եղև նորա, զի խափանեսցի մարմին մեղացն, մի ևս ծառայել մեզ

մեղացն։ Զի որ մեռանին՝ արդարացեալ է 'ի մեղաց անտի. իսկ եթէ մեռաք ընդ Քրիստոսի, հաւատամք՝ թէ եւ կեցցուք ընդ Նմա։ Գիտեմք՝ եթէ Քրիստոս յարուցեալ է 'ի մեռելոց. այսուհետեւ ոչ մեռանի, եւ մահ Նմա ոչ եւս տիրէ։ Զի որ մեռաւն, մեղացն մեռաւ միանգամ, եւ որ կենդանին է՝ կենդանի է Աստուծոյ։ Նոյնպէս եւ դուք համարեսջիք զանձինս մեռեալս մեղացն, և կենդանիս Աստուծոյ 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր։

Ալէլուիա Օրթի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Յայնժամ գայ Յիսուս 'ի Գալիլէէ 'ի Յորդանան առ Յովհաննէս՝ մկրտիլ 'ի նմանէ։ Եւ Յովհաննէս արգելոյր զնա եւ ասէ. ինձ պիտոյ է 'ի քէն մկրտիլ, և դու առ իս գաս։ Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնա, թող տուր այժմ; զի այսպէս վայելէ

մեզ լինել զամենայն արդարութիւն. եւ ապա Թոյլ ետ նմա: Եւ իբրեւ մկրտեցաւ Յիսուս, ել վաղվաղակի 'ի ջրոյ անտի. և ահա բացան նմա երկինք, և ետես զՀոգին Աստուծոյ՝ զի իջանէր իբրեւ զաղաւնի և գայր 'ի վերայ նորա: Եւ ահա ձայն յերկնից որ ասէր. Դա է Որդի իմ սիրելի, ընդ որ հաճեցայ:

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն:
Հայր մեր որ յերկինս:

Ապա ասէ Տարաքան:

Դպ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց
Հոգիդ իջեալ 'ի բարձանց. զանապական
պարգեւըս քո բաժանեցեր յառա-
քելոցն:

Որ 'ի վերայ ջուրցն գոլով ստեղծանէիր
զարարածս. իջեալ 'ի ջուրս աւազանին
ծնանիս որդիս Աստուծոյ:

Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո
զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պար-
գեւօք փայլին մանկունըք սորա:

Աղօթք.

Որ լուսաւորեցեր զարարածս քո Քրիստոս

Աստուած, ծագելով զլոյս աստուածգիտութեան յանձինս մեր. եւ այժմ ազատեցեր զծառայս քո զայս, սրբեցեր եւ արդարացուցեր, և ետուր սմա զորդեգրութեան պատիւն։ Շնորհեա սմա Տէր՝ եւ զկենացն հաւատարմութիւն, եւ պարգեւեա զհանապազորդն անապականութիւն, խառնելով զսա ընդ արդարս քո՝ և ՚ի թիւս Սրբոց քոց. եւ ընդ նոսին փառաւորել զքեզ ընդ Հօր՝ և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Աստուած, որ մեծդ ես և մշտնջենաւոր՝ և ամենայն գաղտնեաց գիտակ. որ սուրբ ես և ՚ի սուրբս հանգուցեալ, Փրկիչ ամենայն մարդկան։ Որ շնորհեցեր զգիտութիւն ճշմարտութեան քո՝ ամենայն հաւատացելոց. եւ ետուր իշխանութիւն լինիլ որդիս Աստուծոյ՝ ՚ի ձեռն վերստին ծննդեան ջրոյ և հոգւոյ։ Որ և զծառայս քո (զայս անուն) նորոգեցեր քաւութեամբ սուրբ Աւազանի քո։ Սուրբ արա զսա, Տէր, ճշմարտութեամբ քով, և լուսով շնորհաց սուրբ Հոգւոյդ. զի եղիցի տաճար եւ

բնակարան Աստուածութեանդ քո. և կարասցէ գնալ յամենայն ճանապարհս արդարութեան. և կալ համարձակութեամբ առաջի ահաւոր բեմի միածնի քո՝ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Ընդ որում քեզ Հօր ամենակալի, և կենդանարար և ազատիչ Սուրբ Հոգւոյդ՝ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Առնու Քահանայն զսուրբ Իւղն 'ի յաջն իւր, և ասէ Շարական.

ԴՁ. Որ յառաջագոյն յօրէնս յօրինակ միածնի քո Հայր երկնաւոր, տուող զօրութիւն 'ի յիւղ սրբութեան յօծումն օծելոց. հեղ եւ յիւղըս յայս զերկնային քո զշնորհս։

Որ խոնարհեցար 'ի մեզ իւղ թափեալ անուն օծեալդ Աստուծոյ, խառնելով զաստուածութիւնդ՝ օծեալ ըղմարդկային առեր բնութիւն. հեղ և։

Որ 'ի վերնատունն սուրբ իջանելով յառաքեալսն օծումն օծելոյ. եւ օծմամբս այսու վերստեղծեր նորոգ ըղհոգեղէնս որդիս Աստուծոյ. հեղ և։

Որ զարդարեր սովաւ 'ի հանդերձս լուսափայլս եւ գերապայծառ ծաւս զհարսնացեալ Եկեղեցի քո սուրբ. մանկունքդ սորա ընդ հրեշտակս օրհնեն սուրբ զերրորդութիւնդ։

Եւ նշէ սուրբ Իւղովն զճակատն, ասելով.

※ Իւղ անոյշ յանուն Յիսուսի Քրիստոսի, հեղեալ 'ի վերայ քո՝ կնիք երկնաւոր պարգեւացն անապականութեան։

Զաչսն ※ կնիքս յանուն Յիսուսի Քրիստոսի լուսաւորեսցէ զաչս քո. զի մի երբէք ննջեսցես 'ի մահ։

Զականջսն ※ Օծումն սրբութեան՝ եղիցի քեզ 'ի լսելութիւն աստուածային պատուիրանացն։

Զհոտոտելիսն ※ կնիքս յանուն Յիսուսի Քրիստոսի, եղիցի քեզ հոտ անուշութեան կենաց 'ի կեանս։

Զբերանն ※ կնիքս յանուն Յիսուսի Քրիստոսի, եղիցի քեզ պահպանութիւն բերանոյ եւ դուռն ամուր շրթանց քոց։

Զձեռսն ※ կնիքս յանուն Յիսուսի Քրիստոսի, եղիցի քեզ պատճառ բարեգործութեան ամենայն առաքինի գործոց եւ վարուց։

Զսիրտն ※ Կնիքս աստուածային՝ սիրտ սուրբ հաստատեսցէ 'ի քեզ, եւ հոգի ուղիղ նորոգեսցէ 'ի փորի քում։

Զթամակն ※ Կնիքս յանուն Յիսուսի Քրիստոսի, եղիցի քեզ վահան ամրութեան, որով կարասցես զամենայն նետս մուխս չարին շիջուցանել։

Զոտսն ※ Կնիքս աստուածային՝ ուղղեսցէ զգնացս քո 'ի կեանսն յաւիտենից. զի մի սասանեսցիս։

Եւ ապա ասէ. Խաղաղութիւն ընդ քեզ փրկեալդ Աստուծոյ։ Խաղաղութիւն ընդ քեզ օծեալդ Աստուծոյ։

Եւ կնքահայրն ասէ. Եւ ընդ հոգւոյդ քում։

Եւ ապա զգեցուցանէ հանդերձ սպիտակ և նոր, և կապէ զնարօտն, և տայ զերկոսին վառեալ մոմեղէնս 'ի ձեռն. և Քահանայն ասէ Շարականն։

ԲՁ. Աստուած խօսեցաւ 'ի բարձանց, լուարուք բնակիչք երկրի, որ եկն եւ փրկեաց զամենայն արարածս. զի զանուն Տեառն կարդասցուք. և տուք օրհնութիւն 'ի բարձունս։

Նոր Իսրայէլ կոչեցաք 'ի Քրիստոս, եղաք

բաժի՛ն Տեառն և ժառա՛նգակի՛ց Քրիստոսի . զի՛ զա ։

Ի՛ վիմէն կենդանութեան ճաշակեցաք զի քա՛ղցր է Տէ՛ր , եւ յի՛ւղ սրբութեա՛ն օծա՛ք հաւատով . զի՛ զա ։

Ի՛ քե՛զ եմք ապաւինեալ որ մա՛յրդ ես և ա՛ղախին Քրիստոսի . լե՛ր բարեխօ՛ս վասն մեր . զի՛ զանո՛ւն Տեառըն կարդա՛սցուք և զքե՛զ մեծարեա՛լ պատուեսցո՛ւք ։

Աղօթք ։

Օրհնեալ ես բարեխնամող Աստուած , որ զգեցուցեր ծառայի քում հանդերձ փրկութեան և պատմուճան ուրախութեան . և եդեր սաղաւարտ փրկութեան և պսակ շնորհաց 'ի գլուխ սորա , և զէն անվթար ընդդէմ հակառակամարտին ։ Վասն որոյ եւ մեք գոհութեամբ փառաւորեսցուք զքեզ ընդ Որդւոյ և ընդ Սրբոյ Հոգւոյդ , այժմ և միշտ և յաւիտեանս յա ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Տէր Աստուած ամենակալ Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի . քեզ խոնարհեցուցանեն հաւատացեալքս զգլուխս

իւրեանց ։ Ձգեա՛ զաներեւոյթ աջ քո եւ օրհնեա՛ զսոսա . եւ զգործս ձեռաց սոցա յաջողեա՛ ։ Եւ որք ՚ի կուսութեան են՝ զընթացս նոցա ամրացո՛ ժուժկալութեամբ եւ ամենայն աստուածպաշտութեամբ եւ պահեա՛ ՚ի խաղաղութեան ։ Զտղայս զայս սնո՛ եւ ա՛ծ ՚ի չափ հասակի կատարման . Եւ պարսպեա՛ զամենեսեան յիւրաքանչիւր յարկս իւրեանց՝ հանդերձ ցնծութեամբ եւ ուրախութեամբ ՚ի Քրիստոս Յիսուս ՚ի Տէր մեր ։ Ընդ որում քեզ Հօր եւ Հոգւոյդ Սրբոյ վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Հանէ ՚ի բեմն զնորընծայն՝ եւ ասէ .

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած , որ ուրախ առնէ զմանկութիւն իմ ։
Դատ արա ինձ Աստուած , եւ իրաւ արա ինձ ՚ի դատաստանի իմում ։

Եւ զնի խնկարկելով՝ ասէ Երէցն ։

(Այս անուն) ծառայս Քրիստոսի՝ եկեալ յերախայութենէ ՚ի մկրտութիւն , ՚ի մկր-

տուԹենէ յերկրպագուԹիւն։ Երկրպա-
գէ սուրբ Մեղանոյս. երկրպագէ սուրբ
Խորանիս. երկրպագէ սուրբ Աւազանիս.
որ մերկացաւ զանօրէնուԹիւն, և զգե-
ցաւ զլոյս աստուածգիտուԹեան։

Եւ հաղորդէ զխորհրդածայն 'ի սուրբ Մարմնոյ և յա-
րեանէ Տեառն. և տայ Քահանայն զՄաղթս։

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Փառք քեզ Թագաւոր յաւիտենական,
որ անձեցուցաներ և լցուցաներ զեկեղե-
ցի լուսով հաւատոյ անհամար փրկելոց
'ի ձեռն ճշմարիտ աստուածածանօԹու-
Թեան Քրիստոսի քո։ Զորս վերստին
ծննդեամբ արժանի արարեր որդեգրու-
Թեան Հօրդ երկնաւորի. հաղորդելով
Մարմնոյ և Արեան միածնի քո։
Եւ արդ Տէր՝ պահեա զսա սրբուԹեամբ
Հոգւոյդ Սրբոյ, առնել անարատուԹեամբ
զկամս քո, և անմեղուԹեամբ ժամանել
'ի կեանսդ յաւիտենից։ Եւ զմեզ զամենե-
սեան զմերձաւորս սորա օրհնեա շնորհօք
և մարդասիրուԹեամբ Տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի։ Ընդ որում քեզ Հօր,
և Հոգւոյդ Սրբոյ վայելէ փառք՝ իշխա-

նութիւն և պատիւ, այժմ և միշտ և յա-
ւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Խաղաղութիւն եւ հաստիչ խաղաղու-
թեան Յիսուս Քրիստոս, օծեալ և երկըր-
պագելի և քահանայապետ յաւիտենից։
Ահա ընկալաւ (այս անուն) ծառայս քո զՕ-
ծումն սրբութեան քո, վասն որոյ աղա-
չեմք զքեզ, Տէր. մի՛ ջնջեսցի սա 'ի դըպ-
րութենէ քումմէ կենաց։ Եւ մեք ար-
ժանի լիցուք երկնային փառաց քոց, յոր-
ժամ պսակես զսուրբս քո եւ զսիրելիս
անուան քում սրբոյ. և անդադար փա-
ռաւորեսցուք զքեզ ընդ Հօր եւ Սրբոյ
Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս
յաւիտենից, ամէն։

Եւ տայ շնորհընծայն 'ի Գիրկս կնքահօրն,
և Քահանային խաչ 'ի ձեռին ունելով,

Սարկաւագն քարոզէ.

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր, զի սո-
վաւ փրկեսցէ զմեզ 'ի մեղաց, և կեցուսցէ
շնորհիւ ողորմութեան իւրոյ։ Ամենակալ
Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա։

Ե. Քահանայն ասէ զԱղօթս։

Որք մկրտեցան և լուսաւորեցան և ետուր նոցա զզօրութիւն քո, Տէր, տուր և հաստատութիւն, կալ միշտ ՚ի սրբութեան քում, և պայծառանալ ՚ի լոյս աստուածգիտութեան քո։ Պահեա զսա հաստատուն ՚ի շնորհս քո զոր ետուր. հեռացո զսա ՚ի մոլորութենէ թշնամւոյն, եւ ՚ի պատրանաց նորա, եւ ՚ի գործոց անօրէնութեան. զի լուսով գիտութեան քո գնասցէ ՚ի պատուիրանս քո. եւ ուղիղ վարուք հասցէ ՚ի խոստացեալ հանգիստն քո յաւիտենից։ Զհրեշտակ խաղաղութեան քո առաքեա Տէր, որ եկեալ պահեսցէ զսա։ Եւ մեք ամենեքեան արժանի լիցուք սպասել յուսով՝ յայտնութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Ընդ որում քեզ Հօր՝ և Հոգւոյդ Սրբոյ։

Համբառնալն ձեռն մկրտելոյն, և ասեն Շարական.

Դկ. Որ անտես և անքննելին քառակերպեցըն վեհագոյն, ՚ի փրկել ըզմեզ եկեալ անմահից Թագաւորն, օրհնութիւն առաքողին։

Առաքի հրեշտակապետն առ սերովբէն հողեղէն, ասէ Տէրն և արարողն առաքեալն ի Հօրէ մարմնանայ ի քէն փրկողն:

Մկրտի ի Յորդանան վկայելով Հօր և Հոգւոյն. Ովսաննա ի բարձունս երգէին մանկունքն, օրհնութիւն Որդւոյ Դաւթի:

Փառք Հօր և Որդւոյ և: Այժմ և միշտ և:

Եւ յելանել նորա ի ջրոյն անդ բացան նմա երկինք. Սուրբ Հոգին աղաւնակերպ գայր ի վերայ կենարարին, օրհնութիւն առաքողին:

Քարոզ:

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո: Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս: Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն: Հայր մեր որ յերկինս:

---

Յետ մկրտութեան առեալ տանին ի սուրբ Եկեղեցւոյն զմանուկն ի տուն՝ ասելով Շարական.

Դ Ձ. Լոյս ի լուսոյ ի Հօրէ առաքեցար և մարմնացար ի սուրբ Կուսէն, զի վերստին նորոգեսցես զապականեալն Ադամ:

Դու՛ Աստուա՛ծ 'ի յերկրի՛ երեւեցար եւ ը՛նդ մարդկա՛ն շրջեցար, եւ փրկե՛ցեր ըզտիե՛զերըս յա՛նիծիցն Ադամա՛յ ։
Քե՛զ 'ի յերկնի՛ց վըկայեա՛լ Հօր քո՛ ձա՛յն. ասէ Դա՛ է իմ Ո՛րդի. եւ Սուրբ Հոգի՛ն ըզքեզ յա՛յտնեաց աղա՛ւնապե՛րպ երեւմա՛մբ ։

Ե— Երգեալ 'Ն Գիրքս մօրն աւէն Սաղմոս.

Դու ես որ հաներ զիս յարգանդէ, յոյս իմ 'ի ստեանց մօր իմոյ ։
Ի քեզ անկայ ես յարգանդէ, յորովայնէ մօր իմոյ դու ես Աստուած իմ ։

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց Թղթոյն է ընթերցուածս ։

Արդ՝ որովհետեւ մանկունք հաղորդեցին արեան եւ մարմնոյ, եւ ինքն իսկ մերձաւորութեամբ կցորդ եղեւ նոցունց. զի մահուան իւրով խափանեսցէ զայն որ զիշխանութիւն մահուն ունէր, այսինքն է՝ զսատանայ. եւ ապրեցուսցէ զայնոսիկ որ մահուն երկիւղիւ հանապազ կէին վտարանդեալք 'ի ծառայութիւն ։ Քանզի ոչ երբէք զհրեշտակաց բռնան հարկանէ. այլ զզաւակէն Աբրահամու բռնան հարկանէ.

ուստի պարտ իսկ էր նմա ամենայնիւ եղ-
բարց նմանել. զի ողորմած լինիցի, և հա-
ւատարիմ քահանայապետ յաստուածա-
կոյս կողմանէ անտի, առ 'ի քաւելոյ ըզ-
մեղս ժողովրդեանն :

Ալէլուիա ալէլուիա .

Ի բերանոյ մանկանց տղայոց եւ ստըն-
դեայց հաստատեցեր զօրհնութիւն :

Ալէլուիա Օրթի :
Խաղաղութիւն ամենեցուն :
Եւ ընդ հոգւոյդ քում : Երկիւղածութեամբ լուարուք :
Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ
Մարկոսի :
Փառք քեզ Տէր Աստուած մեր :
Պռօսխումէ : Ասէ Աստուած :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս :

Եկն 'ի Կափառնայում. և իբրեւ եմուտ
'ի տուն, հարցանէր զնոսա, զի՞նչ վիճէիք
զճանապարհայն ընդ միմեանս :
Եւ նոքա լուռ լինէին. քանզի ընդ մի-
մեանս վիճէին 'ի ճանապարհին թէ՝ ո՞վ
մեծ իցէ :
Եւ իբրեւ նստաւ՝ կոչեաց զերկոտասան-
սն, եւ ասէ ցնոսա. եթէ ոք կամի ա-
ռաջին լինել՝ եղիցի ամենեցուն կրտսեր՝
և ամենեցուն պաշտօնեայ :

Եւ առեալ մանուկ մի կացոյց 'ի մէջ նոցա . և ընկալեալ զնա 'ի գիրկս իւր , ասէ ցնոսա . Որ միանգամ յայսպիսի մանկունս ընկալցի յանուն իմ , զիս ընդունի . և որ զիս ընդունի , ոչ զիս ընդունի . այլ զայն որ առաքեաց զիս :

## Շարական .

Գ.Զ. Նոր Սիոնի ծնեալ մանկունք սուրբ աւազանաւն . շնորհազարդեալք Հոգւոյն Աստուծոյ . օրհնեցէք ըզՀայրն երկնաւոր յաւուր ծննդեան Սրբուհւոյ կուսին . յոր օրհնեցայք յանձինց նախնեացն :

Արեամբ գառինն անարատի փրկեալ ժողովուրդք . յաւուր ծննդեան մօր անտանելւոյն , գովեցէք ըզմիածինն որ հաճեցաւ առնուլ մարմին անսերմն 'ի նմանէ . յոր օրհնեմ :

Յառատաբուղխ շնորհաց Հոգւոյն լուսազարդեալ ազգք հեթանոսաց . յաւուր ծննդեան մօր բանին ծնողի . զփառակից Որդւոյ զՀոգին բարեբանեցէք

հոգեւոր երգով. որ մաքրապարգեւաց զմարմնարան Որդւոյն:

Ե— Քահանայն ասէ զԱղօթս:

Օրհնեալ ես Տէր Աստուած ամենակալ, եւ օրհնեալ է անբաւ գութ մարդասիրութեան քո, որ արժանի արարեր զծառայս քո զմատուցեալս առ քեզ լինել հաղորդ Հոգւոյդ քո Սրբոյ: Եւ այժմ աղաչեմք զքեզ, ուղղեա զգնացս սորա, և ամրացո զսա յերկիւղ քո. զգուշացո զսա լուսաւոր պատուիրանաց քոց, եւ զամենայն աւուրս կենաց իւրոց խաղաղութեամբ եւ առանց մեղաց պահեա: Շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի. ընդ որում օրհնեալ ես Հայր ամենակալ՝ ընդ կենդանարար Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Քարոզ.

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո:

Աղօթք:

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս:

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն:

Հայր մեր որ յերկինս:

Եւ յաւուրն ութերորդի վերացուցանէ Քահանայն զԹագն՝ այսինքն զնարօտն. ՚ի գլխոյ նորոգ Մկրտելոյն, և տայ զԱղօթս։

*Տէր՝ որ լուսով գիտութեան քո առաջնորդեցեր ծառայիս քո վերստին ծնանիլ զսա ջրով և Հոգւով Սրբով. հաստատեա զսա ՚ի հաւատս և ՚ի սէր քո, փրկեա զսա ՚ի չարէ՝ և կեցո։ Շնորհօք և գթութեամբ միածնի Որդւոյ քո. ընդ որում օրհնեալ ես Հայր ամենակալ ընդ կենդանարար և ազատիչ Սուրբ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։*

Եւ Քահանայն լուանայ զնոր Մկրտելոյ ճակատն, և տայ զԱղօթս։

*Որ զերծումն ՚ի մեղաց մկրտութեամբ սուրբ Աւազանին ՚ի ձեռն ծառայիս քո պարգեւեցեր. և այժմ աղաչեմ զքեզ Տէր, զլոյս երեսաց քոց ծագեա ՚ի սիրտս սորա. սպառազինեա զսա հաւատով ընդդէմ հակառակորդին. ՚ի վերայ վիմի պատուիրանաց քոց հաստատեա զսա. և զգեստ անապականութեան սորա յամենայն մեղաց աղտեղութենէ արա անբիծ և անարատ,*

և զդրոշմ Հոգւոյդ Սրբոյ մինչեւ յաւուր ահեղ դատաստանին ամբողջ պահեա . եւ քաւիչ լեր մեզ ըստ բազում գթութեան քում ։ Զի բարերար եւ մարդասէր ես Աստուած գոլով . եւ մեք փառս մատուցանեմք Հօր և Որդւոյ և Հոգւոյդ Սրբոյ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Որ զգեցաւ զքեզ՝ զՏէրդ և զԱստուածդ մեր , եւ խոնարհեցոյց քեզ զգլուխս իւր . պահեա անյաղթելի 'ի պատերազմաց հըպարտացեալ թշնամւոյն , եւ քո անապական պսակաւդ մինչեւ ցվախճան յաղթող զամենեսեան ցոյց ։ Զի քո է ողորմիլ եւ կեցուցանել զմեզ՝ Քրիստոս Աստուած մեր . և քեզ փառս վերառաքեմք ընդ Հօր եւ ամենասուրբ Հոգւոյդ , այժմ եւ միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Եւ բարձրացուցեալ զգլուխ մանկանն , և առեալ ջուր՝ լուանայ զերեսս նորա , ասելով .

Արդարացար , սրբեցար , զօրացիր , յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Իսկ յետ ճաշտուն աւուր գան 'ի դուռն Եկեղեցւոյն. և մայրն ճաշտուն ծունր կրկնէ, և ասենս . շարայն 'ի Գիրկն: Եւ Քահանայն ասէ զԱղօթս:

Տէր Աստուած մեր, որ եկիր 'ի փրկութիւն ազգի մարդկան, նայեա 'ի վերայ աղախնոյս քո այսօրիկ. եւ տուր սմա՝ ապաւինիլ 'ի սուրբ կաթուղիկէ եւ առաքելական Եկեղեցի քո. եւ արժանացո զսա մտանել 'ի Տաճար սուրբ քո, և հաղորդիլ փրկական Մարմնոյ և Արեան քո: Ի բաց լուա զաղտ մարմնոյ և զքիծ հոգւոյ սորա 'ի լրումն կատարման քառասնօրեայ աւուրցս. եւ սրբեա զսա 'ի ձեռն պատուական ուխտի Քահանայիցս. եւ արժանացո մտանել 'ի սրբութիւն փառաց քոց, և վայելել զանսպառ բարիսն որ 'ի քէն: Եւ քեզ վայելէ փառք եւ իշխանութիւն յաւիտեանս, ամէն:

Խաղաղութիւն ամենեցուն:

Որ նորոգութիւնդ ես հնացելոց, եւ կեանք՝ մահկանացու ազգի մարդկան. դու ես զօրութիւն եւ օգնութիւն ապաւինե-

լոյս 'ի քեզ ։ Հաստատուն լիցի շնորհք ողորմութեան քո 'ի վերայ տղայիս . որ եկեալ կայ քառասնօրեայ յերկրպագութ̃ի սուրբ Տաճարիդ . զի եղիցի հզօր և աներկիւղ 'ի թշնամւոյն ներգործութենէ՝ պահպանութեամբ աջոյդ քո սրբոյ . զի դու ես մերձ յամենեսին՝ և բարերար ամենեցուն ։ Պահեա զսա եւ սրբեա ճշմարտութեամբ քով . և արժանացո ընդունիլ զՄարմին և զԱրիւն քո Սուրբ , եւ զառհաւատչեայ Հոգւոյդ Սրբոյ ։

Աղաչեմք զքեզ Տէր , զի եկեսցէ 'ի սա հոգի սուրբ , հիգի հեզութեան , հոգի ճշմարտութեան , հոգի որդեգրութեան . լինել անբիծ և անարատ , պսակիլ խաչիւ քով ընդ աջմէ քումմէ յարքայութեանդ երկնից . Եւ քեզ ընդ Հօր և Սուրբ Հոգւոյդ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

## Եւ մտանեն յԵկեղեցին ասելով .

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած , որ ուրախ առնէ զմանկութիւն իմ ։

Դատ արա ինձ, Աստուած, և իրաւ արա ինձ ՚ի դատաստանի իմում։

Ցազգէ որ ոչ է սուրբ. ՚ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ փրկեա զիս.

Դու, Աստուած հզօրիչ իմ ես, ընդէ՞ր մոռացար զիս, ընդէ՞ր տրտում գնամ ես ՚ի նեղել թշնամւոյ իմոյ։

Առաքեա, Տէր, զլոյս քո եւ զճշմարտութիւն քո, զի առաջնորդեսցեն ինձ, և հանցեն զիս ՚ի լեառն սուրբ և ՚ի յարկս քո։

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած, որ ուրախ առնէ զմանկութիւն իմ։

Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ Աստուած Աստուած իմ։

Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեսա նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Քարոզ։

Սուրբ եկեղեցեաւս աղաչեսցուք զՏէր՝ զի սովաւ փրկեսցէ զմեզ ՚ի մեղաց, և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւ։

Աղօթք ։

Ի մէջ տաճարիս, և առաջի աստուածընկալ և պայծառացեալ սուրբ նշանացս, և սուրբ Սեղանոյս՝ խոնարհեալ երկիւղիւ երկրպագանեմք. զսուրբ և զհրաշալի և զյաղթող զՅարութիւնդ քո փառաւորեմք. և քեզ մատուցանեմք զգոհութիւն և զփառս ընդ Հօր և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Եւ ասէ դպիր 'ի Խորանն՝ աւելով Շարական ։

Ա.Զ. Մարմնացեալդ 'ի կուսէն նախայաւիտեան բանդ, այսօր 'ի Տաճարն եկիր կատարել զօրէնս վասն փրկութեան հեթանոսաց ։

Որ յանարուեստ աթոռ նստիս բարեբանեալդ 'ի հրեշտակաց. այսօր 'ի Սիմէօնէ բառնալով 'ի գիրկս. որ ընծայեցես ըզմեզ 'ի կեանսըդ յաւիտենից ։

Որ արձակիչդ ես կապելոց պարգեւատու ամենեցուն. այսօր հայցմամբ Ծերունւոյն արձակեա՛ և զիս ըզքաղցա-

մե՛ղս ՚ի կապա՛նաց մահո՛ւ ՚ի կեա՛նսըդ-
յա՛ւիտե՛նից ։

Ալէլուիա Ողթի ․

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Որբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ․

Պռօսխումէ ․ Ասէ Աստուած ․

Վասն քառասնօրեայ գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ իբրեւ լցան աւուրք սրբութեան նոցա ըստ օրինացն Մովսէսի, ածին զնա յԵրուսաղէմ յանդիման առնել Տեառն, որպէս և գրեալ է յօրէնս Տեառն, թէ ամենայն արու որ բանայ զարգանդ՝ սուրբ Տեառն կոչեսցի ․

Եւ տալ պատարագս՝ ըստ ասացելոյն յօրէնս Տեառն, զոյգս տատրակաց, կամ երկուս ձագս աղաւնեաց ։

Եւ ահա՝ էր այր մի յԵրուսաղէմ, որոյ անուն էր Սիմէովն ․ և էր այրն այն արդար և երկիւղած, և ակն ունէր մխիթա-

րութեանն Իսրայէլի, և հոգի սուրբ՝ էր ՚ի նմա։

Եւ էր նորա հրաման առեալ ՚ի Հոգւոյն Սրբոյ՝ մի տեսանել զմահ, մինչև տեսցէ զօծեալն Տեառն. և եկն հոգւովն ՚ի Տաճարն։

Եւ իբրև ածին ծնողքն զմանուկն Յիսուս, առնել նոցա ըստ սովորութեան օրինացն ՚ի վերայ նորա. և նա՝ առ ընկալաւ զնա ՚ի գիրկս իւր, և օրհնեաց զԱստուած, և ասէ. Արդ՝ արձակես զծառայս քո, Տէր, ըստ բանի քում ՚ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո, զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց։

Լոյս ՚ի յայտնութիւն հեթանոսաց, և փառս ժողովրդեան քում Իսրայէլի։

Եւ էին հայրն և մայր նորա զարմացեալ ՚ի վերայ բանիցն, որ խօսէին զնմանէ։

Եւ օրհնեաց զնոսա Սիմէովն, և ասէ ցՄարիամ մայր նորա. ահա սա կայ՝ ՚ի գլորումն և ՚ի կանգնումն բազմաց ՚ի մէջ Իսրայէլի, և ՚ի նշան հակառակութեան. և ընդ քո իսկ անձն անցցէ սուր. զի յայտնեսցին ՚ի բազում սրտից խորհուրդք։

Եւ ասէ զԱղօթս առաջի Խորանին ։

Տէր մեր Յիսուս Քրիստոս , որ կեցեալ զաւուրս քառասունն՝ ըստ օրինացն Մովսէսի , եկիր 'ի Տաճարն 'ի յընծայումն՝ հանդերձ Մարիամաւ մարբն քով , և 'ի գիրկսն Սիմէօնի գգուեցար ։ Աղաչեմք և խնդրեմք 'ի քէն , պահեա զտղայս զայս , և աճեցո շնորհօք՝ անտեսանելի զօրութեամբ քով . և արժանի արա զսա մասին ժառանգութեան ընտրելոց քոց , և պահպանիլ ընդ հովանեաւ աջոյ քո ։ Եւ քեզ ընդ Հօր և Սուրբ Հոգւոյդ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Եւ ասէ Շարականս ։

գՁ . Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն . ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ ։

Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անապականաբար բնակիլ հաճեցաւ 'ի քում յորովայնի . ուրախ լեր ։

Որ բոցեղէն սրովբէիւք շըրջափակեալ պա-

Հի՜ւր, այ՛սօր ՚ի՛ մէ՛ջ մա՛րդկան ՚ի՛ գիրկըս
հողեղի՛նի յայտնեա՛լ. ուրա՛խ լեր։

Եւ ապա Քահանայն փակէ զփղայն ՚ի Խորանն՝
և ասէ.

(Այս անուան) Ծառայս Քրիստոսի, եկեալ յերկրպագութիւն։ Երկրպագէ սուրբ Խորանիս, երկրպագէ սուրբ Սեղանոյս. երկրպագէ սուրբ Աւազանիս. որ մերկացաւ զանօրէնութիւն, եւ զգեցաւ զլոյս աստուածգիտութեան։

Քարոզ։

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո։

Աղօթք։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիստոս։ Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն։ Հայր մեր որ յերկինս։



# ԿԱՆՈՆ
## ԿՈՒՍԻ ՊՍԱԿԻՆ

---

### ՀԱԼԱԻ ՕՐՀՆԷՔ

Նախ ձան զամենայն բերեն զհալալան ատեալի Քահա-նային. և Սարկաւագն ասէ. Եւ եւս խաղաղու։ և Քահանայն. Օրհնութիւն և փառք Հօր և Որդ. և խունկ արկանէ և ասէ Տէրողորմեա։

Բկ. Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգման. քանզի նորոգողն էից Հոգին էջ ՚ի սուրբ վերնատունն. որով նորոգեցաւ՛ն դասք առաքելոցն։

Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ Հօր հաշտութեան. քանզի որ եբարձ զՀոգին ՚ի մարդկանէ մարմին եղելոց, դարձեալ վերըստին՛ ընդայն պարգեւէ։

Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցըն-
ծութեամբ զգալուստ Սուրբ Հոգւոյն․ ո-
րով զարդարեցան 'ի զգեստըս լուսափայլս
և գերամպայծառս․ երգեն ընդ սրովբէից
զերեքսըրբեանն ։

Որ զմիաբանեալն յաշտարակին բաժան-
մամբ լեզուացըն քակեաց․ այսօր ըզբա-
ժանեալ լեզուս ազգաց միաբանեաց դար-
ձեալ 'ի սուրբ վերնատունն․ ամենայն
հոգիք օրհնեցէք զՀոգին Աստուծոյ ։

Որ էջ Հոգին Տեառն և առաջնորդեաց
երկոտասան ցեղիցն Իսրայելի 'ի յանա-
պատին․ այսօր երկոտասան առաքելոցն
առաջնորդէ 'ի յԱւետարանն․ ամենայն
հոգիք օրհնէ ։

Որ ելից Հոգին Տեառն ըզԲեսելիէլ ճար-
տարապետ խորանին․ այսօր շինէ զմար-
դիկ խորան սուրբ Երրորդութեանն․
ամենայն հոգիք օրհնէ ։

Մայր լուսոյն Մարիամ անհամրսնացեալ,
օրհնեալ 'ի կանայս ։

Ձայն անլըստուէր յարգանդի կրեցեր,
օրհնեալ 'ի ։

Մի՟ դա՛դարե՛ր վասըն մեր բարեխօսե՜լ, օրհնեա՛լդ 'ի ։

Ի՞ վերա՜յ վիմի՛ հաւատո՜յ շի՜նեցեր ըզքո՛ սուրբ զեկեղեցի. ըզսա՛ պահեա՛ 'ի խաղաղութեա՜ն ։

Ո՞ր շնորհեցե՟ր ողո՛րմութիւն 'ի բնա՜կարանըս հրեշտակա՛ց եւ մարդկան քաւա՛րան. տո՛ւր սըմա զա՛նշա՛րժ քո՜ զխա՛ղաղութի՛ւն. Ի՞ տաճարի՟ փառա՛ց սըրբութեա՜ն քո՛ քեզ երգեն մանկունք. տո՛ւր սոցա զառա՛տ քո՜ զողորմութի՛ւն ։

Փա՛ռք Հօ՛ր և Որդւո՜յ և ։

Սուրբ անմա՛հ փեսային եղե՛ր դո՛ւ մայր Մա՛րիամ. բարեխօսեա վասըն մեր 'ի յա՜յնմ աւուր ահեղի՛ն ։

Աղօթք ։

Օրհնեա Քրիստոս Աստուած մեր՝ հոգեւոր օրհնութեամբ զհալաւս զայս հարսանեաց. զի որ զգեցցին զսա, մի իշխեսցէ մերձենալ 'ի սոսա չար աղանդ դիւաց կամ կախարդաց ։ Այլ ամրացեալ զօրութեամբ սուրբ Խաչի քո, փրկեսցին յամենայն որոգայթից սատանայի. Եւ քեզ

վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Քարոզ ։

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր՝ զի սո ։

Աղօթք ։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս ։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս , ամէն ։
Հայր մեր որ յերկինս ։

---

Եւ ապա երթեալ 'ի դուռն Հարսին , և բերեն զՀարսն առ փեսայն , և առնու Քահանայն զաջ ձեռն Հարսին և տայ յաջ ձեռն Փեսային և ասէ .

Առեալ զձեռն Եւայի՝ տուեալ 'ի յաջն Ադամայ , և ասէ Ադամ . այս այժմ ոսկր յոսկերաց իմոց , եւ մարմին 'ի մարմնոյ իմոյ . սա կոչեսցի կին , զի յառնէ իւրմէ առաւ ։

Վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր իւր , և երթիցէ զհետ կնոջ իւրոյ . և եղիցին երկոքեան 'ի մարմին մի . Արդ՝ զոր Աստուած զուգեաց մարդ մի մեկնեսցէ ։

Շարական։

Գկ. Նայեաց ՚ի մեզ եւ ողորմեա մեզ Քրիստոս. որ ունիս բազում գթութիւն։

Որ Հայրդ ես որբոց եւ դատաւոր այրեաց Քրիստոս. որ ու։

Որ պսակիչդ ես սրբոց. լուր եւ մեզ աղօթիւք սոցա Քրիստոս. որ ու։

Մայր և կոյս աղախին Քրիստոսի որ բարեխօսդ ես միշտ աշխարհի. քեզ երանեմն ամենայն ազգք։

Մաքուր աղաւնի և հարսն երկնից Մարիամ, տաճար և աթոռ Աստուծոյ բանին. քեզ երանեմն ամե։

Քեւ հաճեցան իմանալիքն ընդ հողեղէնքս, եւ քեւ մերձեցաք ՚ի փայտն կենաց. քեզ երանեմն ամե։

Յաղթող և զնոր օրհնութիւն միշտ ՚ի բարձունս երգեսցուք թագաւորին Քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք։

Որ եկն ՚ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց սուրբ խաչիւն, նորին ըզփառս երգեսցուք։

Փա՛ռք Հօ՛ր և Ո՛րդւո՛յ և ։

Ա՜յսօ՛ր և մեք տօնե՜սցուք զնաւա՛կատիս սո՜ւրբ Խաչին․ և փրկողին մատու՜ցուք փառք ե՛ւ պատիւ յա՜ւիտեա՛ն ։

Աղօթք ։

Տէր Աստուած յաւիտենական, որ զանզոյգս և զբացորոշեալս զուգակցես միաւորութեամբ, եւ կապես անքակտելի ։ Որպէս օրհնեցեր զԻսահակ և զՌեբեկ, և ժառանգ զնոսա քո աւետեացն երեւեցուցեր ։ Դու Տէր օրհնեա զծառայս և զաղախինս քո, առաջնորդելով նոցա 'ի գործս բարիս, ողորմած և մարդասէր Տէր Աստուած մեր ։ Եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Քարոզ ։

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո․

Աղօթք ։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիստոս ։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն․
Հայր մեր որ յերկինս ես ։

Եւ ապա երթան 'ի դուռն Եկեղեցւոյն. և Հարսն և փեսայն երեք ծունր կրկնեն. և Քահանայն խոստովանեցուցանէ զնոսա, և ապա ողորմի զնարօտն։ Երբ զփեսայէն նարօտն ողորմի՝ ասէ.

*Տէր 'ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն, 'ի փրկութեան քում ցըն-ծասցէ յոյժ։*

Եւ երբ զՀարսէն նարօտն ողորմի՝ ասէ.

*Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա. և զընկերս նորա տարցին նմա։*

Եւ ապա տայ ձեռն 'ի ձեռն՝ և ասէ.

*Առեալ զձեռն Եւայի՝ տուեալ 'ի յաջն Ադամայ, և ասէ Ադամ. այս այժմ ոսկր յոսկերաց իմոց, եւ մարմին 'ի մարմնոյ իմոյ. սա կոչեսցի կին, զի յառնէ իւրմէ առաւ։*

Եւ ապա ասէ զխրատ։

*Տեսէ՛ք որդեակք, աստուածային հրամանաւն՝ եւ կանոնիւք սուրբ Հայրապետացն եկեալ էք 'ի սուրբ Եկեղեցիս պըսակիլ օրհնօք 'ի սուրբ ամուսնութիւն. Աստուած զձեզ միաբան սիրով պահես-*

ցէ, 'ի խոր ծերութիւն հասուցէ, եւ անթառամ պսակին արժանացուսցէ։ Ապա տեսէք, որ յաշխարհիս վերայ պէս պէս փորձութիւնք կան. թէ հիւանդութիւն, եթէ աղքատութիւն, եւ թէ այլ ինչ նեղութիւն. Աստուած զձեզ յամենայն փորձութենէ հեռի պահեսցէ։ Բայց Աստուծոյ հրամանն այս է, որ դուք երկոքեանդ մինչեւ 'ի մահ միմեանց օգնութիւն պարտիք ընել։

Ե— Նախ հարցանէ Փեսայէն երիցս անգամ։

Որդեակ իմ, մինչեւ 'ի մահ տէ՞ր ես։

Ե— Փեսայն ասէ.

Այո՛ Հայր սուրբ, տէր եմ հրամանաւն Աստուծոյ։

Ե— ապա հարցանէ Հարսէն երիցս անգամ։

Որդեակ իմ եւ դու մինչեւ 'ի մահ հնազա՞նդ ես։

Ե— Հարսն ասէ.

Այո՛ Հայր սուրբ, հնազանդ եմ հրամանաւն Աստուծոյ։

Ե— ձայն Քահանայն.

Այս բանիս վկայ՝ Աստուած է, որ անե-րեւութապէս 'ի վերայ սուրբ Սեղանոյս բազմեալ է։ Այլ և մեր պահապան հրեշ-տակքն. այս սուրբ Եկեղեցիս, սուրբ Խաչս և սուրբ Աւետարանս. դասք Քահանայից, և երամք ժողովրդոց. սոքա ամենեքեան վկայ լինի՜ն մի։

Ե— Նոյն ձայն.

Այո՛ Հայր սուրբ, վկայ Թող լինին։

Ե— ձայն Քահանայն.

Աստուած 'ի մէջ սոցա, և սոքա մի՛ սա-սանեսցին. օգնեսցէ սոցա Աստուած 'ի վաղորդենէ մինչեւ 'ի վաղորդայն։

Մտանեն յԵկեղեցին, և ասեն ժամամուտ.

Զխաղաղութիւն շնորհեա Եկեղեցւոյ քում սրբոյ. զխաղաղութիւն եւ զանշարժու-թիւն 'ի Թշնամեաց պատերազմէ. և հաս-տատեա 'ի մի հաւատ զկաթուղիկէ Եկե-ղեցի. զքեզ խոստովանիմք Տէր եւ Աստ-ուած կեցո զմեզ։

Շարական։

ԳՁ. Ուրա՛խ լեր սո՛ւրբ Եկե՛ղեցի, քա՛նզի

Քրիստոս արքայն երկնից այսօր պըսակեաց ըզքեզ խաչիւն իւրով. եւ զարդարեաց զամուրըս քո՝ սքանչելի փառօքն իւրովք։

Խընդա յոյժ դուստր Սիոնի. քանզի երկիրս երկինք եղեն այսօր վերըստին քո նորոգմամբ և Թագաւորն երկնաւոր հաճեցաւ բընակել 'ի քեզ։

Ընդ դասս երկնաւոր զօրացըն վեր առեալ տօնեմըք քեզ այսօր զանդադար փառաւորութիւնս. ուրախ լեր հարսն անարատ անքըններին քո խորհրդով։

Փառք Հօր և Որդւոյ և։

Ուրախ լեր բերկեալ հարսնացեալ սուրբ Եկեղեցի, պայծառացո զմանկունըս քո յօրհնաբանութիւն ծագողին ըզշող լուսոյ 'ի քեզ մայր Եկեղեցի։

Պատասխանի։

Սուրբ Աստուած՝ սուրբ եւ հզօր, սուրբ և անմահ, որ մարմնացար վասն մեր ողորմեա մեզ։

Քարոզ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի՝ և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ. զՏէր աղաչեսցուք։

Վասն ամենայն սուրբ և ուղղափառ եպիսկոպոսաց՝ զՏէր աղա։

Վասն հայրապետին մերոյ տեառն (այս անուն) կենաց՝ և փրկութեան հոգւոյ նորին՝ զՏէր աղա։

Վասն վարդապետաց՝ քահանայից՝ սարկաւագաց՝ դպրաց՝ և ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ՝ զՏէր աղա։

Վասն բարեպաշտ թագաւորաց եւ աստուածասէր իշխանաց՝ զօրավարաց և զօրաց նոցին, զՏէր աղա։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։

Զի ողորմած և մարդասէր ես Աստուած գոլով և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւի։

Ալէլուիա ալէլուիա.

Տէր, ՚ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն. ՚ի փրկութեան քում ցնծասցէ յոյժ։

Զցանկութիւն սրտի նորա ետուր նմա, եւ զկամս շրթանց նորա ոչ արգելեր ՚ի նմանէ։

Ժամման արարեր զնա յօրհնութիւն քաղցրութեան քո, եւ եդեր ՚ի գլուխ նորա պսակ ՚ի քարէ պատուականէ.

Կեանս խնդրեաց ՚ի քէն, եւ ետուր նմա ընդ երկայն աւուրս, յաւիտեանս յաւիտենից։

Մեծ են փառք նորա ՚ի փրկութեան քում, զփառս մեծվայելչութեան քո դիցես ՚ի վերայ նորա։

Տացես զնա յօրհնութիւն յաւիտեանս յաւիտենից. և ուրախ արասցես զնա յուրախութիւն երեսաց քոց։

Թագաւոր յուսացաւ ՚ի Տէր, յողորմութենէ Բարձրելոյն նա մի սասանեսցի։

Գտցի ձեռն քո ՚ի վերայ թշնամեաց քոց, և աջ քո գտցէ զամենայն ատելիս քո։

Դիցես զնոսա որպէս հնոց ՚ի հուր՝ ՚ի ժամանակի երեսաց քոց։

Տէր բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զնոսա, և հուր կերիցէ զնոսա։

Զպտուղ նոցա յերկրէ կորիցէ, եւ զաւակ նոցա յորդւոց 'ի մարդկանէ։

Խոտորեցան 'ի քէն չարութեամբ, խորհեցան զխորհուրդ զոր ոչ կարասցեն հաստատել։

Արասցես զնոսա հալածեալս, 'ի մնացուածս քո պատրաստեսցես զերեսս նոցա։

Բարձր լեր, Տէր, 'ի զօրութեան քում. օրհնեսցուք, և սաղմոս ասասցուք 'ի զօրութեան քում։

Ընթերցուած 'ի Ծննդոց։

Եւ ասաց Աստուած. արասցուք մարդ ըստ պատկերի մերում եւ ըստ նմանութեան, և իշխեսցէ ձկանց ծովու, և թռչնոց երկնից, եւ ամենայն անասնոց, եւ ամենայն սողնոց որք սողին 'ի վերայ երկրի։

Եւ արար Աստուած զմարդն 'ի պատկեր իւր, ըստ պատկերի Աստուծոյ արար զնա։

Դարձեալ 'ի Ծննդոց։

Եւ էարկ Տէր Աստուած թմրութիւն 'ի վերայ Ադամայ, և ննջեաց. և էառ մի 'ի կողից նորա՝ և ելից ընդ այնր մարմին։

Եւ շինեաց Տէր Աստուած զկողն զոր եառ յԱդամայ՝ ՚ի կին, և եած զնա առ Ադամ։

Եւ ասէ Ադամ. այս այժմ ոսկր յոսկերաց իմոց, եւ մարմին ՚ի մարմնոյ իմոյ. սա կոչեսցի կին զի յառնէ իւրմէ առաւ։

Վասն այնորիկ թողցէ այր զհայր իւր՝ և զմայր իւր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ. և եղիցին երկոքեան ՚ի մարմին մի։

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։

Եւ ծանիցի ՚ի մէջ ազգաց զաւակ նոցա, և ծնունդք նոցա ՚ի մէջ ժողովրդոց. ամենեքին որ տեսանիցեն՝ ճանաչիցեն զնոսա՝ և ասիցեն թէ սոքա են զաւակք օրհնեալք յԱստուծոյ. եւ ուրախութեամբ ուրախ եղիցին ՚ի Տէր։

Ցնծասցէ անձն իմ ՚ի Տէր, զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան եւ պատմուճան ուրախութեան, իբրեւ փեսայի եդ ինձ պսակ, և իբրեւ հարսն զարդու զարդարեաց զիս։

Եւ իբրև երկիր որ աճեցուցանէ զծաղիկս իւր, և իբրեւ զպարտէզ որ բուսուցանէ զսերմանիս իւր. այնպէս ծագեսցէ Տէր զարդարութիւն իւր եւ զցնծութիւն առաջի ազգաց։

Վասն Սիոնի ոչ լռեցից, և վասն Երուսաղէմի ոչ ներեցից. մինչև ծագեսցէ իբրև զլոյս արդարութիւն նորա, և փրկութիւն նորա իբրև զփայլակն վառեսցի. և տեսցեն հեթանոսք զարդարութիւն քո, եւ թագաւորք զփառս քո. և կոչեսցի քեզ անուն նոր, զոր Տէր անուանեսցէ։

Եւ եղիցիս պսակ վայելչութեան 'ի ձեռին Տեառն, և թագ արքայութեան 'ի ձեռին Աստուծոյ քոյ, և ոչ ևս կոչեսցիս լքեալ, և երկիրն քո ոչ ևս կոչեսցի աւերակ. զի քեզ անուն կոչեսցին կամք իմ, և երկրին քում շինութիւն բնակութեան. զի հաճեսցի Տէր ընդ քեզ, և երկիրն քո խըռնեսցի 'ի բնակութիւն.

Զոր օրինակ բնակեսցի երիտասարդ ընդ կուսի՝ այնպէս բնակեսցին որդիք քո 'ի քեզ. եւ եղիցի՝ զոր օրինակ ուրախ լինի փեսայ առ հարսին իւրում, այնպէս ուրախ լիցի Տէր 'ի քեզ.

Եւ 'ի վերայ պարսպաց քոց, Երուսաղէմ, պահապանս կացուցից զօրն ողջոյն և զգիշերն ամենայն, որ մինչև ցայգ մի դադարեսցին յիշել զՏէր. զի ոչ գոյ նման քեզ։

Պօղոսի առաքելոյն յԵփեսացւոց թղթոյն է ընթերցուածս ։

Կանայք իւրեանց արանց հնազանդ լիցին իբրեւ տեառն . զի այր է գլուխ կնոջ, որպէս և Քրիստոս գլուխ է Եկեղեցւոյ, և ինքն է Փրկիչ մարմնոյ ։

Այլ որպէս Եկեղեցին հնազանդ լինի Քրիստոսի, նոյնպէս և կանայք իւրեանց արանց յամենայնի ։

Արք, սիրեցէք զկանայս ձեր, որպէս եւ Քրիստոս սիրեաց զԵկեղեցի, եւ զանձն իւր մատնեաց վասն նորա, զի զնա սրբեսցէ սրբութեամբ Աւազանին բանիւ . զի կացուսցէ ինքն իւր յանդիման փառաւոր զեկեղեցի, զի մի ունիցի ինչ արատ, կամ աղտեղութիւն, կամ այլ ինչ յայնպիսեաց . այլ զի իցէ սուրբ և անարատ ։ Նոյնպէս պարտին արք սիրել զիւրեանց կանայս՝ որպէս զիւրեանց մարմինս . որ սիրէ զկին իւր, զանձն իւր սիրէ ։

Զի ոչ ոք երբէք ատեաց զանձն իւր, այլ սնուցանէ եւ դարմանէ զնա, որպէս եւ Քրիստոս զԵկեղեցի . զի անդամք եմք մարմնոյ նորա, 'ի մարմնոյ նորա և յոսկերաց նորա ։

վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր եւ զմայր իւր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ, և եղիցին երկոքին 'ի մարմին մի ։
Խորհուրդս այս մեծ է, բայց ես ասեմ 'ի Քրիստոս եւ յեկեղեցի ։ Այլ և դուք նոյնպէս մի ըստ միոջէ ։ զի իւրաքանչիւր ոք զիւր կին այնպէս սիրեսցէ՝ իբրև զիւր անձն ։ և կին երկնչիցի յառնէ իւրմէ ։

Ալէլուիա ալէլուիա ։

Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ, 'ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ եւ պաճուճեալ ։

Ալէլուիա Օրթի ։
Խաղաղութիւն ամենեցուն ։
Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիրպագութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։
Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Ընդ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ գնացին զհետ նորա ժողովուրդք բազումք, և բժշկեաց զնոսա անդ ։
Եւ մատուցեալ առ նա փարիսեցիքն, փորձէին զնա՝ եւ ասէին ։ Եթէ արժա՞ն իցէ

ումեք արձակել զկին իւր ըստ ամենայն
վնասու ։

Պատասխանի ետ նոցա՝ եւ ասէ . չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ թէ որ հաստատեացն 'ի սկզբանէ՝ արու և էգ արար զնոսա՝ եւ ասէ . վասն այսորիկ թողցէ այր զհայր և զմայր՝ և երթիցէ զհետ կնոջ իւրոյ , և եղիցին երկոքեան 'ի մարմին մի ։

Ապա ուրեմն ոչ են երկու , այլ մի մարմին . արդ՝ զոր Աստուած զուգեաց մարդ մի՛ մեկնեսցէ ։

Ասեն ցնա . իսկ Մովսէս ընդէ՞ր պատուիրեաց մեզ տալ թուղթ մեկնելոյ՝ և արձակելոյ ։

Ասէ ցնոսա Յիսուս , Մովսէս վասն խըստասրտութեան ձերոյ հրամայեաց ձեզ արձակել զկանայս ձեր , այլ 'ի սկզբանէ ոչ եղեւ այնպէս ։

Բայց ասեմ ձեզ , զի ամենայն որ արձակէ զկին իւր՝ և ոչ վասն պոռնկութեան , եւ առնիցէ այլ՝ շնայ . և որ զարձակեալն առնիցէ՝ շնայ ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Հաւատամք 'ի մի Աստուած 'ի Հայրն ամե-

նակալ, յարարիչն երկնի և երկրի, երե-
ւելեաց եւ աներեւութից։ Եւ 'ի մի Տէր
Յիսուս Քրիստոս՝ յՈրդին Աստուծոյ՝ ծը-
նեալն յԱստուծոյ Հօրէ միածին, այսինքն
յէութենէ Հօր։ Աստուած յԱստուծոյ,
լոյս 'ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստու-
ծոյ ճշմարտէ՝ ծնունդ և ոչ արարած։ Նոյն
ինքն 'ի բնութենէ Հօր, որով ամենայն ինչ
եղեւ յերկինս և 'ի վերայ երկրի երեւելիք
և աներեւոյթք։ Որ յաղագս մեր մարդ-
կան եւ վասն մերոյ փրկութեան իջեալ
յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ
կատարելապէս 'ի Մարիամայ Սրբոյ Կու-
սէն Հոգւովն Սրբով։ Որով էառ զմարմին
զհոգի և զմիտ, և զամենայն որ ինչ է 'ի
մարդ, ճշմարտապէս և ոչ կարծեօք։ Չար-
չարեալ, խաչեալ, թաղեալ, յերրորդ ա-
ւուր յարուցեալ, ելեալ 'ի յերկինս նովին
մարմնովն նստաւ ընդ աջմէ Հօր։ Գալոց է
նովին մարմնովն և փառօք Հօր 'ի դատել
զկենդանիս և զմեռեալս. որոյ թագաւո-
րութեանն ոչ գոյ վախճան։ Հաւատամք
և 'ի Սուրբ Հոգին յանեղն և 'ի կատարեալն,
որ խօսեցաւ յօրէնս և 'ի մարգարէս եւ
յԱւետարանս։ Որ էջն 'ի Յորդանան, քա-

թողեալ զԱռաքեալն , եւ բնակեցաւ 'ի Սուրբսն : Հաւատամք և 'ի մի միայն ընդհանրական և յառաքելան Եկեղեցի , 'ի մի մկրտութիւն , յապաշխարութիւն , 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց : Ի յարութիւնն մեռելոց , 'ի դատաստանն յաւիտենից հոգւոց և մարմնոց , յարքայութիւնն երկնից եւ 'ի կեանսն յաւիտենականս :

Իսկ որք ասեն , էր երբեմն՝ յորժամ ոչ էր Որդի , կամ էր երբեմն՝ յորժամ ոչ էր Սուրբ Հոգի , կամ թէ՝ յոչէից եղեն , կամ յայլմէ էութենէ ասեն լինել զՈրդին Աստուծոյ և կամ զՍուրբ Հոգին . և թէ՝ փոփոխելիք են կամ այլայլելիք , զայնպիսիսն նզովէ Կաթուղիկէ և առաքելական սուրբ Եկեղեցի :

Ի սրբոյ Լուսաւորչէն մերմէ ասացեալ :

Իսկ մեք փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս . երկիրպագանելով Սրբոյ Երրորդութեան եւ միոյ աստուածութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն :

Քարոզ։

Վասն ուղղելոյ զգնացս մեր 'ի ճանապար-
հըս խաղաղութեան՝ զՏէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։
Վասն ցրելոյ 'ի մէնջ զամենայն խորհուր-
դըս չարին՝ զՏէր աղա։
Վասն պարգեւելոյ մեզ առողջ խորհուր-
դըս և առաքինի վարս՝ զՏէր աղա։
Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամե-
նազօր աջոյն իւրոյ՝ զՏէր աղա։
Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղ-
վաղակի ընդ ոտիւք մերովք՝ զՏէր աղա։
Վասն հոգւոյն հանգուցելոց՝ որք ճշմա-
րիտ և ուղիղ հաւատով 'ի Քրիստոս ննն-
ջեցին՝ զՏէր աղա։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեսցի մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։
Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Տէր Աստուած զօրութեանց եւ արարիչ ամենայն արարածոց, որ առեր հող յերկրէ եւ ստեղծեր զմարդն ըստ պատկերի քում և ըստ նմանութեան, և եդեր զնա

'ի դրախտին փափկութեան : Արու և էգ արարեր զնոսա՝ և օրհնեցեր զնոսա ասելով, աճեցէք եւ բազմացարուք եւ լցէք զերկիր, և տիրեցէք դմա : Նախատպեցան խնամք արարչական սիրոյ քո յարարածս քո 'ի ձեռն միածնի Որդւոյ քո Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. գալ ծնանիլ 'ի Սրբոյ կուսէն, և նորոգել զհնութիւն առաջնաստեղծ մարդոյն : Առնելով սկիզբն նշանաց 'ի Կանա Գալիլեացւոց 'ի հարսանիսն. և աստուածային սքանչելեօքն զուարճացուցեալ զհարսնարանն զջուրն 'ի գինի փոխելով : Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր՝ օրհնեա ✠ զամուսնութիւնս զայս որպէս զսուրբ Նախահարցն. անարատ պահելով զնոսա հոգեւոր սիրով միաբանութեամբ 'ի կեանս յայսոսիկ : Օրհնեա ✠ Տէր և ըզպտղաբերութիւն որդէծնութեան սոցա 'ի ժառանգութիւն փառաց առաքինութեան՝ 'ի փառս ամենասուրբ անուան քո : Որպէս զի խաղաղական կենօք՝ և բազմաժամանակեայ ծերութեամբ յերկարեալ յայսմ աշխարհիս, և յանզրաւական ուրախութիւնսն 'ի վերին հարսնարանին արժանաւորեսցին հասանիլ ընդ ամենայն

սուրբս , շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի ։ Ընդ որում օրհնեալ ես Հայր ամենակալ՝ հանդերձ կենդանարար եւ ազատիչ Սուրբ Հոգւովդ այժմ և միշտ եւ յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Օրհնեալ ես Տէր Աստուած արարիչ ամենայն արարածոց , որ դու միայնդ ես բարերար եւ կարող ․ որ արարեր զամենայն արարածս հրամանաւ քով զերկինս և զերկիր , և զամենայն ինչ որ ՚ի նոսա ։ Զերկինս արարեր իմաստութեամբ ․ զերկիր հիմնեցուցեր կարողութեամբ և զծով պատրաստեցեր ողորմութեամբ ։ Զարեգակն ճառագայթեցեր ՚ի լուսաւորութիւն տունջեան ․ զլուսին եւ զաստեղս պայծառացուցեր ՚ի զարդ գիշերոյ ․ եւ զտարերս զուգակարգեցեր առ ՚ի կենդանութիւն արարածոց քոց ։ Խորհեցար Հայր անսկիզբն՝ ընդ միածնի Որդւոյ քո՝ և ընդ կենդանարար Սուրբ Հոգւոյդ՝ եւ ասացեր ․ արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան , եւ իշ-

խնացէ 'ի վերայ երկրի ։ Առեր հող յերկրէ, եւ ստեղծեր աստուածային աջով քով զմարդ. եւ կերպարանակից քեզ արարեալ կացուցեր զնա տէր եւ իշխան 'ի վերայ ամենայն արարածոց քոց երկրաւորաց ։ Եւ ապա հայեցեալ 'ի միայնութիւն նորա՝ ասացեր. ոչ է բարւոք մարդոյդ միայն լինիլ. արասցուք դմա օգնական ըստ դմա ։ Եւ արկեալ զքուն թմրութեան 'ի վերայ Ադամայ, առեր զմի 'ի կողից նորա, եւ շինեցեր զնա 'ի կին և ետուր մարդոյն բանից կցորդ, եւ կենակից 'ի զուգաւորութիւն որդէծնութեան. և օրհնեցեր ասելով. աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր, և տիրեցէք դմա ։ Իսկ նախաստեղծ մարդոյն մարգարէական հոգւով ծանուցեալ՝ ասէ 'ի տեսանելն. այս այժմ ոսկր յոսկերաց իմոց, եւ մարմին 'ի մարմնոյ իմմէ. սա կոչեսցի կին, զի յառնէ իւրմէ առաւ. վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր եւ զմայր, եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ. եւ եղիցին երկոքեան 'ի մարմին մի ։ Եւ յաղագս միաւորութեան սորա ծնան Նահապետք, Քահանայք, Թագաւորք, Մարգարէք. աճե-

ցան եւ բազմացան տոհմիւք իւրեանց՝
յաստուածային օրհնութենէդ, յասելդ
քո արարողիդ կենաց, թէ բազմացուցից
զզաւակս ձեր որպէս զաստեղս երկնից,
և իբրեւ զաւազ առ ափն ծովու։

Արդ՝ որպէս օրհնեցեր զամուսնութիւն նախահարցն և զնախամարցն, զԱբրահամուն և զՍառային, զՍահակայն և զՌեբեկային, զՅակոբայն և զՀռաքելին, զՅովսեփայն և զԱսանէթին, զՅովակիմայն և զԱննային. զԶաքարիային եւ զԵղիսաբեթին. եւ որպէս օրհնեցեր զպսակս արդարոցն քոց, նոյնպէս օրհնեա ✠ զպսակս զայս յամուսնութիւն ծառայից քոց. զի դու ժամանեցուցեր զսոսա յօրհնութիւն քաղցրութեան քո, և եդեր 'ի գլուխ սոցա պըսակ 'ի քարէ պատուականէ. Եւ որպէս օրհնեցեր զհարսանիսն 'ի Կանա Գալիլեացւոյ. և աստուածային սքանչելեօք զջուրն 'ի գինի փոխելով ծանուցեր աշակերտաց քոց զաստուածային քո զփառս. և քարոզեցար Աստուած և Փրկիչ ազգի մարդկան։ Ոչ եթէ խոտեցեր զամուսնութիւնն. այլ քահանայապետաբար օրհնեցեր, և հաստատեցեր անստուեր բանիւդ քո, եթէ զոր

Աստուած զուգեաց՝ մարդ մի՛ մեկնեսցէ։ Այլ պարտին արք սիրել զիւրեանց կանայս որպէս զիւրեանց մարմինս. Նոյնպէս եւ կանայք հնազանդ լինիցին արանց իւրեանց իբրեւ Տեառն։ Զոր և սուրբ Առաքեալն գոչէ 'ի մէջ Եկեղեցւոյ, Թէ որպէս Եկեղեցի հնազանդ լինի Քրիստոսի, Նոյնպէս եւ կանայք իւրեանց արանց յամենայնի. զի այր է գլուխ կնոջ, որպէս և Քրիստոս գլուխ է Եկեղեցւոյ։ Յաղագս որոյ պատուական է ամուսնութիւն, և սուրբ են անկողինք նոցա։ Դու Տէր՝ որ սուրբդ ես և 'ի սուրբս հանգուցեալ, սուրբ պահեա զանկողինս ամուսնութեան սոցա. և միաւորեա զսոսա զուգակցութեամբ ընդ լծով վիճակի քո. Որպէս զի մի՛ յայսմհետէ կոչեսցին երկու, այլ մի մարմին միաւորեալ հոգւով հեզութեան. սիրել զմիմեանս պարկեշտ վարուք, ամբիծ հոգւով, առանց ամօթոյ, առանց լկտութեան պատրաստ լինել 'ի գործս բարիս։ Որպէս զի զերծեալք յորոգայթից թշնամւոյն՝ առողջ հոգւով և մարմնով պահպանեսցին հրեշտակական պահպանութեամբ, և նշանաւ ամենայաղթ խաչի քո։

Այո՛ Տէր Աստուած մեր՝ լեր պաշտպան ծառայից քոց, եւ տուն ապաւինի զամենայն աւուրս կենաց սոցա։ Փրկեա զսոսա յօտարոտի խորհրդոց, եւ պատսպարեա ՚ի տուէ և ՚ի գիշերի ողորմութեամբ քով։ Տնկեա զսոսա որպէս ձիթենի պտղալից ՚ի տան Աստուծոյ։ Որպէս զի կեցցեալք արդարութեամբ, սրբութեամբ, և աստուածպաշտութեամբ ըստ հաճոյից կամաց քոց բարեսիրաց, տեսցեն զորդիս որդւոց իւրեանց. և եղիցին քեզ ժողովուրդ՝ և փառաբանիչ անուանդ քում սրբոյ։ Եւ անդադար օրհնեսցեն զամենասուրբ Երրորդութիւնդ, զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Նստուցանեն զփեսայն՝ և ասեն Շարականն.

ԲԿ. Ո՛վ երանելիդ ամենեցուն տիեզերական իշխանութեամբ ընկալեալ ՚ի Քրիստոսէ ընդ թագ պարծանաց. ո՛վ Աբգար մեծ թագաւոր վասն մեր բարեխօսեա առ թագաւորն երկնաւոր։

Որ քոյին սուրբ աղօթիւքդ վանեցեր

ըզթըշնամին, կոխելով զատամնայ ընդ
երկնայինսըն դասեցար. ո՜վ Տրդատ:
Ուստի և մեք հաւատացեալքս տօնեմք
զքո յիշատակս, օրհնութիւն առաքելով
ըզքեզ պըսակողին. ո՜վ Աբգար:
Մայր լուսոյն Մարիամ անհարսնացեալ,
օրհնեալդ ՚ի կանայս:
Զլոյսն անըստուեր յարգանդի կրեցեր,
օրհնեալդ ՚ի:
Մի՛ դադարեր վասըն մեր բարեխօսել,
օրհնեալդ ՚ի:
Խաչըն կենարար որ եղեւ մեզ փըր-
կութիւն. սո՛վաւ ամենեքեան ըզքեզ
բարեբանեմք:
Որ ՚ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ
՚ի յերկիր, եւ գաւազան զօրութեան
հաւատացելոց. սո՛վաւ ամե:
Փառք Հօր և Որդւոյ և:
Որ լուսափայլ ծաղկմամբ հրաշափառա-
պէս մեզ ցուցաւ ՚ի յօգնութիւն ընդ-
դէմ թըշնամւոյն. սո՛վաւ ամե:

Քարոզ:

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սա

Աղօթք.

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս.
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն.
Հայր մեր որ յերկինս.

Երկնան ՚ի փառն անեղով. Արեգականն. կամ
Թագաւոր գոլով.



# ԿԱՆՈՆ

## ՊՍԱԿ ՎԵՐԱՑՈՒՑԱՆԵԼՈՅ

Երգէ Քահանայն զՀարսն և զՓեսայն և դնէ գլուխ գլխի . և դնէ զԽաչն 'ի վերայ գլխոց նոցա . և ասէ Շարական .

գկ . Այսօր մարտիրոսաց դասքըն ցըն- ծացեալ բերկրին ընդ առաջ Տեառն Քրիս- տոսի Որդւոյն Աստուծոյ ։

Ձայն 'ի յերկնից վերկայեալ ասէ . եկայք օրհնեալք Հօր իմոյ , ժառանգորդք երկ- նից խորանացն ։

Լըցէք ըզտեղի անկելոցն ապըստամբո- ղական Թըշնամւոյն , որ 'ի յերկնից վայր անկեալ ։

Մայր և կոյս անղախին Քրիստոսի որ բա- րեխօսդ ես մըշտ աշխարհի . քեզ երա- նեն ամենայն ազինք ։

Մաքուր աղաւնի եւ հարսն երկնից Մարիամ, տաճար և աթոռ Աստուծոյ բանին . քեզ երանեն ամէ ։

Քեւ հաճեցան իմանալիքն ընդ հողեղէնքս, եւ քեւ մերձեցաք ՚ի փայտն կենաց . քեզ երանեն ամէ ։

Ցազլթող եւ զնոր օրհնութիւն միշտ ՚ի բարձունս երգեսցուք Թագաւորին Քրիստոսի հաւատացեալ ժողովուրդք ։

Որ եկն ՚ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի . եւ որ սակեաց սուրբ խաչիւն, նորին ըզփառս երգեսցուք ։

Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ Խաչին . և փրկողին մատուսցուք փառք եւ պատիւ յաւիտեան ։

. Փառք Հօր և Որդւոյ և ։

Անթառամ պըսակըն ձեզ աւանդեալ մընայ քան զակնըս պատուականըս գերագոյն հրաշիւք . որք վանեալ ըզթըշնամին խորտակեցէք ։

Ալէլուիա ալէլուիա .

Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւի-

տենից, դաւազան ուղղութեան՝ դաւա-
զան արքայութեան քո։

Բղխեսցէ սիրտ իմ զպատգամս քո բարի,
և ասացից զգործս իմ Թագաւորի։

Ընթերցուածս յՈվսեայ մարգարէէ։

Այսպէս ասէ Տէր. եղէցի Իսրայէլ իբ-
րեւ զցօղ, և ծաղկեսցի իբրեւ զշուշան.
եւ արձակեսցէ զարմատ իւր իբրեւ զԼի-
բանոս։

Արձակեսցին ոստք նորա, և եղիցի իբրեւ
զձիթենի պտղալից, և բուրեսցէ հոտ նո-
րա իբրեւ զկնդրկի.

Դարձցին եւ նստցին ընդ յարկաւ նորա.
կեցցեն եւ հաստատեսցին ցորենով. եւ
ծաղկեսցէ իբրեւ զորթ յիշատակ նորա
եւ իբրեւ զգինի Լիբանանու եղիցի Եփ-
րեմայ։

Պօղոսի առաքելոյն 'ի Տիմոթէոսի առաջին թղթոյն է
ընթերցուածս։

Կամիմ լինել զկանայս 'ի զարդ խոնար-
հութեան, ակնածութեամբ և զգաստու-
թեամբ զարդարել զանձինս. մի՛ 'ի հիւս
ոսկեմանս ընդելուզեալս մարգարտով,
կամ 'ի հանդերձս պաճուճեալս. այլ որ-

պէս վայել է կանանց՝ զաստուածպաշտութիւն յանձնառելոց գործովք բարութեան։ Կին մարդ ցածութեամբ ուսցի, ամենայն հնազանդութեամբ։ Այլ ուսուցանել կնոջ մարդոյ ոչ հրամայեմ, եւ ոչ ճոխաբան լինել քան զայր մարդ. այլ 'ի լռութեան կալ։ Զի Ադամ նախ ստեղծաւ եւ ապա Եւայ։ Եւ Ադամ ոչ պատրեցաւ, այլ կինն պատրեցաւ եւ յանցեաւ. բայց կեցցեն վասն որդէծնութեանն՝ եթէ կայցեն 'ի հաւատս և 'ի սէր և 'ի սրբութիւն պարկեշտութեամբ։

Ալէլուիա ալէլուիա.

Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ, 'ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ եւ պաճուճեալ։

Ալէլուիա Օրթի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիրպագութեամբ լուարուք։

Սուրբ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Սկիզբն նշանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ յաւուրն երրորդի հարսանիք էին 'ի Կանա Գալիլեացւոց , եւ անդ էր մայրն Յիսուսի . կոչեցաւ եւ Յիսուս եւ աշակերտքն նորա 'ի հարսանիսն ։

Եւ 'ի պակասել գինւոյն՝ ասէ մայրն ցՅիսուս . գինի ոչ ունին ։

Ասէ ցնա Յիսուս . զի՞ կայ իմ և քո , կին դու . չեւ է հասեալ ժամանակ իմ ։

Ասէ մայրն ցսպասաւորսն . որ զինչ ասիցէ ձեզ՝ արասջիք ։

Անդ էին Թակոյկք կճեայք վեց՝ ըստ սրբութեան Հրէից . տանէին մի մի 'ի նոցանէ մարս երկուս կամ երիս ։

Ասէ ցնոսա Յիսուս . լցէք զԹակոյկսդ ջրով . և լցին զնոսա մինչեւ 'ի վեր ։

Ասէ ցնոսա , արդ՝ առէք և բերէք տաճարապետիդ . և նոքա բերին ։

Եւ իբրեւ ճաշակեաց տաճարապետն ըզջուրն գինի եղեալ . և ոչ գիտէր թէ ուստի իցէ . բայց սպասաւորքն գիտէին որք արկին զջուրն ։

Խօսի ընդ փեսային տաճարապետն և ասէ , ամենայն մարդ՝ զանոյշ գինին յառաջագոյն պաշտէ . և յորժամ արբենան՝ յայնժամ

զյոռլին . դու պահեցեր զանոյշ գինին մինչեւ ցայժմ։
Զայս արար սկիզբն նշանաց Յիսուս 'ի Կանա Գալիլեացւոց, և յայտնեաց զփառս իւր. և հաւատացին 'ի նա աշակերտքն նորա։

Քարոզ։

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց, ընկալցի զխնդրուածս սրտից մերոց, թողցէ զյանցանս մեր, ողորմեսցի 'ի վերայ մեր։ Աղօթք մեր և խնդրուածք յամենայն ժամ մտցեն առաջի մեծի տէրութեան նորա։ Եւ նա տացէ մեզ միաբան միով հաւատով արդարութեան վաստակել 'ի գործս բարեաց։ Զի զողորմութեան զշնորհն իւր՝ արասցէ 'ի վերայ մեր Տէրն ամենակալ. կեցուսցէ և ողորմեսցի։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Տէր՝ Աստուած մեր՝ որ յամենայն ժամ ընդ մեզ ես, և ոչ երբէք թողուս 'ի ձեռանէ քումմէ զայնոսիկ, որք ճշմարտութեամբ խոստովանին զանուն քո սուրբ։ Զքեզ աղաչեմք՝ եւ առ քեզ կարդամք՝ եւ 'ի քէն խնդրեմք մարդասէր Տէր, քոյին հրամա-

նման օրհնեցաք զպսակս զայս ամուսնու-
թեան սոցա 'ի խորանի քում սրբութեան
առաջի սրբոյ Սեղանոյ քո. և արդ՝ Տէր բա-
րերար՝ քոյին հրամանաւդ առնումք զնա-
րօտ պսակիս 'ի գլխոց սոցա. և օրհնեմք
զսոսա նշանաւ սուրբ Խաչին *Նայեա Տէր
քաղցրութեամբ քով 'ի սոսա. և առաքեա
զհրեշտակ խաղաղութեան քո, որ եկեալ
պահեսցէ զսոսա սուրբս եւ անարատս;
միաշունչս և միախորհուրդս:

Շնորհեա սոցա Տէր՝ և զաւակս ըստ կամաց
քոց. քաղցրացո զվայելչութիւն կենաց սո-
ցա քոյով առատ բարերարութեամբդ. զի
կեցցեն անբիծ և անարատ վարուք յայսմ
աշխարհիս մինչեւ 'ի խորին ծերութիւն, և
արժանաւորք եղիցին երկնից արքայու-
թեանդ, և անթառամ պսակացն: Եւ քեզ
ամենազօրիդ Աստուծոյ վայելէ փառք իշ-
խանութիւն և պատիւ այժմ և միշտ և:

Եւ ապա բաժակ մի գինի առնու Քահանայն
'ի ձեռն իւր՝ և ասէ զԱղօթս:

Տէր Աստուած մեր, որ զամենայն ինչ
իմաստութեամբ արարեր, և հաստատե-
ցեր զտիեզերս, եւ զարդարեցեր զհար-

սանիւն 'ի կանա Գալիլեացւոց ։ Ինքնին Տէր՝ օրհնեա զքաժակս զայս ողորմութեամբ քով. եւ մեք յամենայն ժամ՝ գոհասցուք զպարգեւաց քոց ։ Եւ քեզ հանցուք զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, ամէն ։

Եւ տայ նոցա զքաժակն ասելով.

Օրհնութիւն գոհութիւն և փառք Հօր և ։

Քարոզ ։

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սով ։

Աղօթք ։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս ։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն ։
Հայր մեր որ յերկինս ։



# ԿԱՆՈՆ

## ԵՐԿՐՈՐԴ ՊՍԱԿԻ



Քահանայն բերէ զնոսա յԵկեղեցին՝ և խոստովանեցուցանէ. և ապա տայ զձեռն 'ի ձեռն, և հարցանէ որպէս յառաջին գրեցաւ, և ասէ.

Ալէլուիա ալէլուիա.

*Տէր 'ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն, 'ի փրկութեան քում ցնծասցէ յոյժ։*

*Զցանկութիւն սրտի նորա ետուր նմա, եւ զկամս շրթանց նորա ոչ արգելեր 'ի նմանէ։*

Գիրք Պօղոսի. Աւետարան Մատթէոսի և այլն, երես 86–91 նոյնք են, որ 'ի Կարգի Պսակին։

Եւ ապա ասէ զԱղօթս։

*Տէր Աստուած մեր, որ 'ի հրեշտակաց խաւսեցեալ՝ և 'ի Մարգարէից քարոզեալ՝ եւ յԱռաքելոցն աւետարանեալ, որ անարատ*

յայտնութեամբ քով կեանս աշխարհի պար-
գեւեցեր ։ Օրհնեա Տէր և այժմ զամու-
նութիւն ծառայիս քո և աղախնոյս. որ-
պէս օրհնեցեր զՋուրն 'ի Կանա Գալիլեաց-
ւոց՝ և արարեր գինի. սքանչելագործելով
պատուեցեր զամուսնութիւնն ։ Օրհնեա
եւ այժմ Տէր զծառայքս քո զզուգաւոր-
եալքս այժմոյս դարձեալ յերկրորդ ամու-
նութիւնս ։ Որպէս զի ընդունելով զերկ-
րորդ ամուսնութիւնս զայս յանձինս իւր-
եանց, միաւորեսցին հաւատով և յուսով
և սիրով ընդ սրբոց Եկեղեցւոյ. և յառա-
ջեալք 'ի պատուիրանս քո՝ եղիցին միա-
ւորեալք ընդ միմեանս հոգւով և մարմնով ։
Պարգեւեա սոցա որդէծնութիւն ողոր-
մութեամբ քով. Թող Տէր զմեղս և զյան-
ցանս սոցա, զկամայ և զակամայ. ընկալ
զաղօթս եւ զխնդրուածս սոցա. սրբեա
զսոցա զհոգի և զմարմին. և շինեա զսոսա
որպէս առաքինի վարուքն կեալ ընդ մի-
մեանս գործովք բարութեան յայսմ աշ-
խարհիս. Օրհնեա Տէր և զծնունդս որո-
վայնի սոցա, զի եղիցին 'ի հաճոյս քեզ ա-
րարչիդ և Աստուծոյդ մերոյ ։ Զի դու ես
որ օրհնես և սրբես զանձինս մեր ամեն-

ցուն. և քեզ վայելէ փառք և իշխանու-թիւն յաւիտեանս, ամէն։

Քարոզ։

Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ՝ ՚ի Տեառնէ՝ զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ ՚ի վերայ մեր. Տէրն Ամենակալ կեցուսցէ և ողորմեսցի։

Կեցո Տէր և ողորմեա։

Դնէ զպսակն և ասէ զԱղօթս։

Աստուած մշտնջենաւոր, որ զօրութեամբ քով՝ և միածնի Որդւոյ քո՝ և ամենասուրբ Հոգւոյդ՝ արարեր յոչնչէ զամենայն արարածս քո, զծով և զցամաք, եւ զամենայն, որ ՚ի նոսա։ Շինեցեր զդրախտն փափկութեան, եւ տնկեցեր ՚ի նմա զփայտն կենաց. որ և ՚ի վախճան ժամանակի ՚ի ձեռն սրբոյ Որդւոյ քո սիրելւոյ՝ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ նոյն կենաց փայտիւն ազատեցեր զանկեալն ընդ պատրանօք բանսարկուին։ Դու նոյն ինքն Տէր մեր՝ եւ Աստուած ամենեցուն, օրհնեա և սրբեա զերկրորդ Պսակս զայս յամուսնութիւն ծառայիս քո և աղախնոյս, պահելով զսոսա անարատ սիրով և միաշունչ խորհրդով։

Օրհնեա Տէր և զպտղաբերութիւն որդէծնութեան սոցա. զի աճեսցին խաղաղական կենօք. և ապրեսցին շնորհօք քովք. եւ հանդերձեալ բարեացն հանդիպելով՝ փառաւորեսցեն զքեզ ընդ Որդւոյ և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Տէր Աստուած մեր՝ որ գաղտնեաց մարդկան գիտակ ես, և զծածուկս մեր ճանաչես. զի քեզ յայտնի են խորհուրդք առն, և ճանապարհ կնոջ. Նայեա՛ բարերարութեամբ քով 'ի ծառայս քո, և տուր սոցա զլուծ սիրոյ քո. զի ընկալցին զերկրորդ պսակս, եւ հրամանաւ քով բնակեսցին 'ի միասին միով խորհրդով՝ 'ի սուրբ անկողինս իւրեանց։ Հեռասցին 'ի չար գործոց, եւ կացցեն ամօթխածութեամբ առ միմեանս. եւ առաքինի գործովք քաղաքավարեալ, արժանաւորք եղիցին հանդերձեալ բարեացդ. եւ քեզ հանցեն զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն.

Քարոզ ։

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո ։

Աղօթք ։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս ։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն ։
Հայր մեր որ յերկինս ։



# ԿԱՆՈՆ

## ՀԱՂՈՐԴ ՏԱԼՈՑ

---

Առնու քահանայն շուրջ Հաղորդութեանն, զԽաչ և զԱւետարան և զշուրջառն՝ և երթայ առ հիւանդն. և ասէ զԱղօթսն Յովնանու մարգարէին ։

Ի ՆԵՂՈՒԹԵԱՆ իմում ես առ Տէր կարդացի. և լուաւ Աստուած յանդնդոց դժոխոց աղաղակի իմում ։

Լուր Տէր ձայնի իմում, զի ընկեցեր զիս 'ի խորս ծովու, եւ շրջանք գետոց պաշարեցին զիս ։

Ամենայն զբօսանք քո եւ ալիք քո անցին 'ի վերայ իմ, և ասացի թէ մերժեցայ ուրեմն յերեսաց աչաց քոց ։

Արդ՝ իցէ՞ թէ յաւելից հայիլ 'ի տաճար սուրբ քո. զի հեղան զինեւ ջուրք մինչեւ յանձն իմ, և անդունդք անհնարինք պաշարեցին զիս ։

Եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց. իջի ես 'ի խորս երկրի, և տեսի զնիգս նորա, զի էին որպէս աղխք յաւիտենից. և ելցեն յապականութենէ կեանք իմ։

Առ քեզ Տէր Աստուած իմ 'ի նուաղել անձին իմոյ կարդացի, և զքեզ Տէր յիշեցի. և մտցեն աղօթք իմ 'ի տաճար սուրբ քո։

Զի ոյք պահէին զունայնութիւն եւ զստութիւն, յողորմութենէ իւրեանց մերժեցան։

Այլ ես 'ի ձայն օրհնութեան խոստովանեցից քեզ, մատուցից պատարագս Տեառն, և կատարեցից զուխտս իմ 'ի փրկութեան։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Շարական.

Դկ. Ամենակալ քաւեա ըզմեղս իմ.
զի Աստուած ես ապաշխարողաց։
Եւ զՀոգիդ Սուրբ մի հաներ յինէն.
զի Աստուած ես ապաշ։
Եւ փրկեա զիս յահագին հրոյն.
զի Աստուած ես ապաշ։

Եւ խոստովանեցուցանէ զնա ըզհաւատամքն
և ապա տայ զԱղօթսն :

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր Յիսուս Քրիստոս արարիչ ամենայն արարածոց, որ արժանի արարեր զամենայն հաւատացեալս՝ հաղորդիլ մարմնոյ և արեան քո : Արժանաւորեա և այժմ զծառայս քո զայս յետին թշուառս, որ հետեւի 'ի կեանն յաւիտենից : Զի դու իսկ ասացեր ամենասուրբ բերանովդ, եթէ ոչ կերիջիք զմարմին իմ, եւ արբջիք զարիւն իմ, ոչ ունիք կեանս յանձինս ձեր :

Արդ՝ 'ի ձեռն սուրբ մարմնոյ և արեան քո՝ ազատեա զսա 'ի յանցանաց մեղաց, եւ օրհնեա զսա շնորհիւ քո . զի ճաշակելով 'ի կենարար մարմնոյ և յարենէ քումմէ՝ արժանի լիցի կենացն յաւիտենից : Փառաւորել զքեզ ընդ Հօր և սուրբ Հոգւոյդ այժմ և միշտ և յաւիտեանս յաւի :

Ալէլուիա ալէլուիա .

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ :

ըզՓոխն ըստն ասա :

Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, որ խաչեցար վասն մեր ողորմեա մեզ։

Քարոզ։

Վասն 'ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց, զՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա։

Վասն լսելի լինելոյ տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց, զՏէր աղա։

Վասն քաւիչ և ներող լինելոյ Աստուծոյ 'ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա։

Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր զկամայ և զակամայ, զՏէր աղա։

Վասն զի մի ընդ. խոտանս գտանիցիմք յաւուրն պատասխանատուութեան, զՏէր ա։

Վասն հոգւոցն հանգուցելոց՝ որք ճշմարիտ և ուղիղ հաւատով 'ի Քրիստոս ննջեցին՝ զՏէր աղա։

Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։

Եւ եղեւ յամին յորում մեռաւ Ոզիա արքայ, տեսի զՏէր նստեալ յաթոռ բարձ-

րութեան և վերացելոյ. եւ լի էր տունն
փառօք Նորա ։

Եւ սերովբէք կային շուրջ զնովաւ. վեց թեւք միոյ՝ և վեց թեւք միոյ. երկուքն ծածկէին զերեսս իւրեանց, եւ երկուքն ծածկէին զոտս իւրեանց, և երկուքն թըռուցեալ։

Աղաղակէին մի առ մի և ասէին. Սուրբ. Սուրբ. Սուրբ. Տէր զօրութեանց՝ լի է ամենայն երկիր փառօք Նորա ։

Եւ վերացաւ դրանդն 'ի ձայնէն զոր աղաղակէին, և տունն լի եղեւ ծխով։

Եւ ասեմ, վայ է ինձ՝ ես այր տառապեալ զիա՞րդ կամս հիացեալ. զի մարդ եմ՝ եւ պիղծ շրթունս ունիմ, և 'ի մէջ պղծաշուրթն ժողովրդեան բնակեալ եմ ես. եւ զՏէր զօրութեանց տեսի աչօք իմովք ։

Եւ առաքեցաւ առ իս մի 'ի սրովբէից անտի, և 'ի ձեռին իւրում ունէր կայծակն, զոր առեալ ունելեօք 'ի սեղանոյ անտի, եբեր մերձեցոյց 'ի բերան իմ, եւ ասէ. Ահաւասիկ մերձեցաւ այդ 'ի շրթունս քո, և հանցէ զանօրէնութիւնս քո, և զմեղս քո սրբեսցէ 'ի քէն ։

Յովհաննու առաքելոյն 'ի կաթուղիկեայց առաջին թղթոյն է ընթերցուածս ։

Սիրելիք՝ Մարմին և Արիւն Որդւոյն Աստուծոյ՝ սրբէ զմեզ յամենայն մեղաց ։

Եթէ ասիցեմք՝ եթէ մեղս ինչ մեք ոչ ունիմք, զանձինս խաբեմք, եւ ճշմարտութիւն 'ի մեզ ոչ գոյ ։

Ապա եթէ խոստովան լինիցիմք զմեղս մեր, հաւատարիմ է նա եւ արդար՝ առ 'ի թողուլ զմեղս մեր, և սրբել վմեզ յամենայն անօրէնութենէ ։

Եթէ ասիցեմք՝ եթէ ոչ ինչ մեղաք, սուտ առնեմք զնա. և բանն նորա ոչ է 'ի մեզ ։ Որդեակք իմ, զայս գրեմ ձեզ՝ զի մի մեղիցէք. եւ եթէ մեղիցէ ոք, ունիմք բարեխօս առ Աստուած զՅիսուս Քրիստոս՝ զարդարն և զանարատն. և նա է քաւութիւն մեղաց մերոց ։

Ալէլուիա ալէլուիա.

Տէր մի սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս, և մի բարկութեամբ քով խրատեր զիս ։

Ալէլուիա Օրթի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Ամէն ամէն ասեմ ձեզ, եթէ ոչ կերիջիք զմարմին Որդւոյ մարդոյ, եւ արբջիք զարիւն նորա, ոչ ունիք կեանս յանձինս ։

Որ ուտէ զՄարմին իմ՝ եւ ըմպէ զԱրիւն իմ, ունի զկեանս յաւիտենականս. և ես յարուցից զնա յաւուրն յետնում. զի Մարմին իմ՝ ճշմարիտ կերակուր է, եւ Արիւն իմ՝ ճշմարիտ ըմպելի է ։

Որ ուտէ զՄարմին իմ, եւ ըմպէ զԱրիւն իմ, նա յիս բնակեսցի, և ես 'ի նմա ։

Որպէս առաքեաց զիս կենդանին Հայր, և ես կենդանի եմ վասն Հօր. եւ որ ուտէն զիս՝ և նա կեցցէ վասն իմ ։

Այս է Հացն՝ որ յերկնից իջեալ. ոչ որպէս կերան Հարքն ձեր զմանանայն՝ եւ մեռան. որ ուտէ զՀացս զայս՝ կեցցէ յաւիտեան ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Հաւատամք 'ի մի Աստուած 'ի Հայրն ամենակալ, յարարիչն երկնի և երկրի, երեւելեաց և ։ Տե. յէջ. 88 ։

Իսկ մեք փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս . երկիրպագանելով Որդւոյ ։

Քարոզ ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Եւ ևս հաւատով աղաչեսցուք և խնդրեսցուք 'ի տեառնէ Աստուծոյ և 'ի փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ 'ի ժամուս պաշտաման և աղօթից ։ Զի արժանի ընդունելութեան արասցէ . լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց ։ Ընկալցի զխնդրուածս սրտից մերոց . թողցէ զյանցանս մեր . ողորմեսցի 'ի վերայ մեր ։ Աղօթք մեր եւ խնդրուածք յամենայն ժամ մտցեն առաջի մեծի տէրութեան նորա ։ Եւ նա տացէ մեզ միաբան՝ միով հաւատով և արդարութեամբ վաստակել 'ի գործս բարեաց ։ Զի զողորմութեան զշնորհն իւր՝ արասցէ 'ի վերայ մեր Տէրն ամենակալ . կեցուսցէ և ողորմեսցի ։

Զժամս և զառաջիկայ օրս խաղաղութեամբ անցուցանել 'ի Տեառնէ խնդրեսցուք ։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան ։
Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց ։
Զսրբոյ խաչին մեծ և կարող զօրութիւն ։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու ։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ ։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛ ։

Աղօթք ։

Տէր մեր և Փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծդ ես ողորմութեամբ եւ առատ պարգեւօք բարերարութեան քո ։ Որ դու քոյին կամաւդ 'ի ժամուս յայսմիկ համբերեցեր չարչարանաց խաչի եւ մահու յաղագս մեղաց մերոց ։ Եւ պարգեւեցեր առատապէս զպարգեւս Հոգւոյդ Սրբոյ երանելի Առաքելոցն ։ Հաղորդս արա և զմեզ Տէր, աղաչեմք զքեզ՝ աստուածային պարգեւացդ, թողութեան մեղաց եւ ընդունելութեան Հոգւոյդ Սրբոյ ։ Որպէս զի՝ արժանաւորք եղիցուք գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Խաղաղութեամբ քով Քրիստոս փրկիչ

մեր. որ 'ի վեր է քան զամենայն միտս եւ զբանս. ամրացո զմեզ եւ աներկիւղ պահեա յամենայն չարէ։ Հաւատարեմ զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս քո, որք հոգւով և ճշմարտութեամբ քեզ երկիրպագանեն։ Վասն զի՝ ամենասուրբ Երրորդութեանդ վայելեն փառք իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։

Հայր մեր որ յերկինս։

Շարական.

ԳՁ. Որ կազմեցեր սեղան խորհրդոյ. և արբուցեր յանմահական բաժակէն. սըրբոց քոց Առաքելոցն այսօր 'ի սուրբ վերնատունն. աղաչեմք Փրկիչ ողորմեա։ Մաքրեա ըզմիտս և զխորհուրդս, զի և մեք հաղորդեսցուք սրբութեամբ ընդ սրբոց քոց Առաքե.

Տայ զսուրբ խորհուրդն ահիւ մեծաւ, և ասէ զԱղօթս։

Գոհանամք զքէն Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ արժանի արարեր

զմեզ երկնաւոր պարգեւացս այսոցիկ՝ կենարար Մարմնոյ եւ Արեան միածնի քո։ Աղաչեմք զքեզ, Տէր, մի՛ լիցի սա մեզ 'ի դատապարտութիւն վասն բազում յանցանաց մերոց. այլ եղիցի սա մեզ յառողջութիւն հոգւոյ և մարմնոյ, 'ի զգաստութիւն խորհրդոց, եւ 'ի կատարումն ամենայն գործոց առաքինութեան։ Որպէս զի սրբեսցէ զսորա միտս և զշունչս, և անուանեսցի տաճար սրբոյ Երրորդութեանդ՝ առ 'ի գտանել զողորմութիւն առաջի քո։ Եւ գոհանալով փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ Սուրբ Հոգւոյդ այժմ և։

Քարոզ։

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո։

Աղօթք։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն։
Հայր մեր որ յերկինս։



# ԿԱՆՈՆ

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ԺԱՄՈՒ ԱՂՕԹԻՑ

Որ կատարի 'ի վերայ ծանր հիւանդաց,
'ի բժշկութիւն ցաւոց՝ և 'ի թողութիւն
յանցանաց ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն ։
Հայր մեր որ յերկինս ։

ԱՌԱՔԵԱ Տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո. զի առաջնորդեսցեն ինձ եւ հանցեն զիս 'ի լեառն սուրբ և 'ի յարկս քո ։
Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ. Աստուած. որ ուրախ առնէ զմանկութիւն իմ։ Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ Աստուած Աստուած իմ։
Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեա նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Եւ եւս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Եկեսցէ 'ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր,
և փրկութիւն քո ըստ բանի քում։
Տաց պատասխանի ոյք նախատեն զիս բա-
նիւք. զի ես 'ի բանս քո յուսացայ։
Մի' 'ի բացեայ առներ 'ի բերանոյ իմմէ
զբան ճշմարտութեան մինչեւ յոյժ. զի
յիրաւունս քո յուսացայ։
Պահեցի զօրէնս քո յամենայն ժամ. յա-
ւիտեան և յաւիտեանս յաւիտենից։
Գնայի ես յանդորրու, զի զպատուիրանս քո
խնդրեցի։
Խօսէի զվկայութիւնս քո առաջի թագա-
ւորաց, և ոչ ամաչէի։
Խորհէի 'ի պատուիրանս քո զոր սիրեցի։
Համբարձի զձեռս իմ 'ի պատուիրանս քո
զոր սիրեցի, և խորհէի յարդարութեան
քում։
Յիշեա զբան ծառայի քո, յոր և յուսա-
ցուցեր զիս։
Նա մխիթարեաց զիս 'ի խոնարհութեան
իմում. զի բան քո կեցոյց զիս։
Ամբարտաւանք անիրաւեցան յիս յոյժ այլ
յօրինաց քոց ես ոչ խոտորեցայ։

*Յիշեցի զիրաւունս քո յաւիտենից Տէր և մխիթարեցայ։*

*Տրտմութիւն կալաւ զիս 'ի մեղաւորաց, և որք թողին զօրէնս քո։*

*Գովելի են ինձ իրաւունք քո, 'ի տեղւոջ պանդխտութեան իմոյ։*

*Յիշեցի 'ի գիշերի զանուն քո, Տէր, և պահեցի զօրէնս քոյ։*

*Սա եղեւ ինձ ճանապարհ 'ի կեանս. զի զարդարութիւնս քո խնդրեցի։*

*Զանօրէնս ատեցի, և զօրէնս քո սիրեցի։*

*Օգնական եւ փրկիչ իմ ես դու, եւ ես 'ի բանս քո յուսացայ։*

*Ի բաց եղերուք յինէն չարք. և քննեցից զպատուիրանս Աստուծոյ իմոյ։*

*Օգնեա ինձ ըստ բանի քում, և կեցո զիս. և մի յամօթ առներ զիս 'ի յուսոյ իմմէ։*

*Օգնեա ինձ, և ապրեցո զիս. և խորհեցայց զիրաւունս քո յամենայն ժամ։*

*Անարգեցեր զամենեսեան՝ որք ապստամբ եղեն յարդարութեանց քոց. զի անիրաւութեամբ էին խորհուրդք նոցա։*

*Յանցաւորս համարեցայ զամենայն մեղաւորս երկրի. վասն այսորիկ սիրեցի զպատուիրանս քո։*

Բեւեռեա ընդ երկիւղ քո զմարմին իմ. զի ՚ի դատաստանաց քոց երկեայ յոյժ։

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր. ըստ բանի քում իմաստուն արա զիս։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, եւ բանիւ քով փրկեա զիս։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուցես ինձ զարդարութիւնս քո։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են։

Եղիցի ձեռն քո ՚ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս քո ընտրեցի։

Ցանկացայ փրկութեան քում Տէր, եւ օրէնք քո խօսք իմ էին։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ, եւ իրաւունք քո օգնեսցեն ինձ։

Տուր զօրութիւն ծառայի քոյ, կեցո զորդի աղախնոյ քոյ, եւ արա առ իս նշան բարութեան։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ, և մխիթարեցեր զիս։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և.

Մաղթանք.

Անձն իմ ՚ի ձեռս քո է յամենայն ժամ, և

'ի սուրբ Խաչ քո յուսացեալ եմ, Թագաւոր երկնաւոր. զբազմութիւն սրբոց քոց բարեխօս ունիմ առ քեզ, որ երկայնամիտդ ես առ ամենեսեան, մի՛ անտես առներ զապաւինեալս 'ի քեզ. այլ պահեա պատուական եւ սուրբ Խաչիւ քով 'ի խաղաղութեան։

Ալէլուիա ալէլուիա.

Ես տեսացի 'ի վերանալ յինէն աւուրց իմոց, թէ գնացի ես 'ի դրունս դժոխոց։ Թողի զամենայն յետին իմ, և տեսացի՝ թէ այլ ոչ եւս տեսից զփրկութիւն Տեառն յերկրին կենդանեաց, եւ ոչ եւս տեսից զմարդ բնակչօք իւրովք հանդերձ։

Պակասեցայ ես յազգատոհմէ իմմէ. այսուհետեւ թողի լքի զամենայն զկեանս իմ։ Եւ գնաց մեկնեցաւ յինէն հոգի իմ, որպէս զայն՝ որ քակէ զտաղաւար, եւ եղէ ես որպէս զոստայն ստառքաց մերձ 'ի հատանիլ։

Յաւուր յայնմիկ մատնեցայ ես յառաւօտէ որպէս 'ի ձեռս առիւծու. այնպէս խորտակեաց մանրեաց զոսկերս իմ, զի յառաւօտէ մինչ 'ի գիշեր մատնեցայ։

Որպէս ծիծառն՝ այնպէս ճչեցի, որպէս զաղաւնի՝ այնպէս մնչեցի, զի նուաղեցան
աչք իմ ՚ի տեսանելոյ։

Հայեցայ ՚ի բարձունս առ Տէր Աստուած իմ՝ որ փրկեաց զիս, և փարատեցոյց յինէն
զցաւս անձին իմոյ.

Տէր, վասն այսորիկ պատմեցաւ քեզ. զարթուցեր զանձն իմ, դարձուցեր զհոգի իմ,
մխիթարեցայ և կեցի։

Ահա ՚ի խաղաղութիւն դարձաւ դառնութիւն իմ. փրկեցեր զանձն իմ, զի մի կորնիցի. և ընկեցեր յետոյ զա՟մ զմեղս իմ։

Զի ոչ թէ որք ՚ի դժոխս են, խոստովան առնիցին առ քեզ: եւ ոչ մեռեալք օրհնեսցեն զքեզ. եւ ոչ յուսասցին ՚ի ճշմարտութիւնս քո ամենեքեան, ոյք իջանեն
՚ի դժոխս։

Այլ կենդանիքս օրհնեսցուք զքեզ Տէր. որպէս եւ ես այսուհետեւ մանկունս ծընայց, որք պատմեսցեն զարդարութիւնս
քո՝ Տէր փրկութեան իմոյ.

Ես ոչ եւս դադարեցից օրհնել զքեզ յօրհնութիւն նոր զամենայն աւուրս կենաց իմոց յանդիմանս տաճարիդ Աստուծոյ։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Մաղթանք ։

Յոյս կենդանութեան, յոյս եւ ապաւէն փրկութեան Տէր Յիսուս Փրկիչ. փրկեա և փարատեցո զցաւս անձին իմոյ ։

Մարդասէր Տէր, վասն սրբուհւոյ անարատի մօր քո և կուսի, և վասն խաչի քոյ պատուականի, Տէր, ընկալ զաղաչանս մեր, և կեցո զմեզ ։

Քարոզ ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն ՚ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց, զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա ։

Եւ եւս վասն հիւանդիս (այս անուն) որ յուսացեալ է կոչել զանուն Տեառն Աստուծոյ՝ և զզօրութիւն նորա ՚ի յօգնութիւն և ՚ի բժշկութիւն հոգւոյ և մարմնոյ իւրոյ. որպէս զի ապրեսցի և կեցցէ, եւ վերստին նորոգեսցի քահանայական աղօթիւք ձերովք՝ և կարողութեամբն Աստուծոյ, զՏէր աղաչեսցուք ։

Զամենասրբուհի զԱստուածածինն՝ զմիշտ կոյսն Մարիամ՝ հանդերձ ամենայն սրբովք, յիշելով զՏէր աղա ։

Եւ եւս միաբան վասն Ճշմարիտ և սուրբ
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծ։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Տէր, որ ողորմութեամբ քով բժշկես զբե-
կումն հոգւոց և մարմնոց մերոց. բժշկեա
զամենայն ախտս և զհիւանդութիւնս հո-
գւոյ և մարմնոյ (այս անուն) ծառայի քո. զի
քո է ողորմիլ և կեցուցանել Աստուած մեր։
Եւ քեզ փառս մատուցանեմք՝ Հօր և Որդ-
ւոյ և Հոգւոյն Սրբոյ այժմ և միշտ և յա-
ւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Օրհնեա՛ Տէր։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողոր-
մութեան քում, ըստ բազում գթութեան
քում քաւեա զանօրէնութիւնս իմ։
Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ,
և 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս։
Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, և
մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Քեզ միայն մեղայ, Տէր, և չար առաջի քո արարի։

Որպէս արդար եղիցիս 'ի բանս քո, եւ յաղթող 'ի դատել քեզ։

Անօրէնութեամբ յղացայ, եւ 'ի մեղս ծնաւ զիս մայր իմ։

Դու, Տէր, զճշմարտութիւն սիրեցեր, զանյայտս և զծածկեալս իմաստութեամբ քով յայտնեցեր ինձ։

Ցօղեա յիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա և քան զձիւն սպիտակ եղէց։

Լսելի արա ինձ զցնծութիւն եւ զուրախութիւն, եւ ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք։

Դարձո զերեսս քո 'ի մեղաց իմոց, և զամենայն անօրէնութիւնս իմ քաւեա յինէն։

Սիրտ սուրբ հաստատեա յիս, Աստուած, և հոգի ուղիղ նորոգեա 'ի փորի իմում։

Մի ընկեներ զիս, Տէր, յերեսաց քոց, և զհոգի քո Սուրբ մի հաներ յինէն։

Տուր ինձ ցնծութիւն փրկութեան քո, և հոգւով պետութեան քով հաստատեա զիս։

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո, և ամբարիշտք առ քեզ դարձցին։

Փրկեա զիս յարեանէ, Աստուած, Աստուած

փրկութեան իմոյ . ցնծասցէ լեզու իմ
յարդարութեան քում։

Տէր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան
իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։

Թէ կամեցեալ էիր, պատարագս մատու-
ցանէաք, բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ
հաճեցար։

Պատարագ Աստուծոյ՝ հոգի խոնարհ, ըղ-
սիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած
ոչ արհամարհէ։

Բարի արա, Տէր, կամօք քովք Սիովնի, և
շինեսցին պարիսպքն Երուսաղէմի։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս ար-
դարութեան, յորժամ ուխտից պատարագս
հանցեն 'ի սեղան քո զուարակս։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Շարական.

Ա2. Հայր բազումողորմ խոստովանիմ
առ քեզ որպէս զանառակ որդին. թող
ինձ ըզմեղս իմ, և ողորմեա։

Տէր որ գըթացար 'ի կինն Քանանացի,
գըթա և յիս 'ի մեղաւորս, և ողոր։

Տէր որ դարձուցեր ըզմաքսաւորն 'ի գի-

տուութիւն ճըշմարտութեան , դարձո եւ
զես զմոլորեալս, և մզոր ։

Յոյս և յարութիւն ազգի մարդկան Քրիս-
տոս Աստուած , զհիւանդութիւն հոգ-
ւոյ իմոյ կենդանացո որպէս երբեմն
զԵզեկիայն ։

Զչարչարանս և ըզմահ յանձն առեր կեն-
դանատու ամենեցուն . զհիւանդութիւն
հոգւոյ իմոյ առողջացո որպէս երբեմն ։

Առ քեզ ապաւինիմք խորան եւ տա-
ճար Աստուծոյ բանին Մարիամ մայր եւ
կոյս . բարեխօսեա առ Քրիստոս վասն ան-
ձանց մերոց ։

Քարոզ ։

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց , բա-
րեխօսութեամբ սուրբ Աստուածածնին ,
և իջանելոյ ՚ի վերայ մեր ողորմութեան և
գթութեան Տեառն Աստուծոյ . ամենակալ
Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի ։

Աղօթք ։

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսու-
թեամբ սուրբ Աստուածածնին , անարատ
ծնողին միածնի որդւոյ քո , եւ աղաչանօք

ամենայն սրբոց քոց. լուր Տէր և ողորմեա, ներեա, քաւեա և թող զմեղս մեր. արժանաւորեա գոհանալով փառաւորել ըզքեզ ընդ Որդւոյ եւ ընդ Սրբոյ Հոգւոյդ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Ալէլուիա ալէլուիա.

Ես ասացի Տէր ողո՛րմեա ինձ, բժշկեա
զանձն իմ, ես մեղայ քեզ։
Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն,
յաւուր չարի փրկէ զնա Տէր։

Յակովբու առաքելոյն 'ի կաթուղիկեայց առաջին
թղթոյն է ընթերցուածս։

Խոստովան եղերուք միմեանց զմեղս, և աղօթս արարէք 'ի վերայ միմեանց, որպէս զի բժշկեսջիք. քանզի յոյժ զօրաւոր են աղօթք արդարոց յօգնականութիւն։
Եղիա մարդ էր իբրեւ զմեզ չարչարելի. և յաղօթս եկաց, և ոչ տեղեաց յերկիր զերիս ամս և զվեց ամիս։
Եւ դարձեալ եկաց յաղօթս՝ և ետուն երկինք զանձրեւ և բուսոյց երկիր զպտուղ իւր։
Եղբարք իմ, եթէ ոք 'ի ձէնջ մոլորեսցի 'ի ճանապարհէ ճշմարտութեան, և դար-

ձուսցէ ոք զնա. գիտասցէ զի որ դարձուսցէ զմեղաւորն 'ի մոլորութեան ճանապարհէն իւրմէ, փրկեսցէ զոգի իւր 'ի մահուանէ, և ծածկեսցէ զբազմութիւն մեղաց։

Ալէլուիա ալէլուիա.

Տէր մի սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս, և մի բարկութեամբ քով խրատեր զիս։

Ողորմեա ինձ Տէր, զի հիւանդ եմ ես, բժշկեա զանձն իմ, զի խռովեցան ոսկերք իմ։

Ալէլուիա Օրթի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Կոչեաց առ ինքն զերկոտասանսն, և սկսաւ առաքել զնոսա երկուս երկուս. եւ տայր նոցա իշխանութիւն 'ի վերայ այսոց պղծոց։

Եւ պատուիրեաց նոցա՝ զի մի՛ ինչ բարձցեն 'ի ճանապարհ, բայց միայն գաւազան. մի՛ պարկ, մի՛ հաց, մի՛ պղինձ 'ի գօտիս. այլ ագանել հողաթափս, եւ մի՛ զգենուցուք ասէ՝ երկուս պարեգօտս։

Եւ ասէր ցնոսա. յոր տուն մտանիցէք, անդէն օթեվանս կալջիք՝ մինչեւ ելանիցէք անտի։

Եւ որ ոչ ընկալցին զձեզ, և ոչ լուիցեն ձեզ, յորժամ ելանիցէք անտի՝ թօթափեսջիք զփոշի ոտից ձերոց 'ի վկայութիւն նոցա։

Եւ ելեալ քարոզէին զի ապաշխարեսցեն. եւ դեւս բազումս հանէին եւ օծանէին իւղով զբազում հիւանդս, եւ բժշկէին զնոսա։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Հաւատամք 'ի մի Աստուած 'ի Հայրն ամենակալ, յարարիչն երկնի և երկրի, երեւելեաց և։ Տե. յերե. 88։

Իսկ մեք փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս. երկիրպագանելով Սրբոյ։

Քարոզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Օրհնեա՛ Տէր։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ.

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողոր-մութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ:

զփոխն ըման սաս:

Շարական:

Ակ. Ծով կենցաղոյս հանապազ զիս ալէկոծէ:
Մըրըրկեալ ալիք թշնամին ինձ յարու-ցանէ:
Նաւապետ բարի. լեր անձին իմոյ ա-պաւէն:

Աղաչեցի ըզբազումողորմ Աստուած, եւ լուաւ ձայնի խնդրուածոյ իմոյ. զի նուաղեցան աչք իմ 'ի տեսանելոյ, եւ յինէն փարատեցոյց զցաւս անձին իմոյ:
Զթագաւորըն Քրիստոս բարեբանե-ցէք, որ 'ի յանձն էառ ըզմահ խաչի եւ խափանեաց ըզմահու թագաւորու-թիւնն. և յինէն փարա:
Փութացիր յօգնութիւն սուրբ Աս-տուածածին. եւ աղաչեա զառ 'ի քէն ըզմարմնացեալ բանն Աստուած. զի

յահաւո՛ր եւ ՚ի մի՛ւսանգամ գալստեա՛նն իւրոյ պարգեւեսցէ՛ մեզ ըզկեա՛նսըն յաւիտե՛՛նից ։

Քարոզ ։

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց, բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին, եւ իջանելոյ ՚ի վերայ մեր ողորմութեան և գթութեան Տեառն Աստուծոյ. ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի ։

Աղօթք ։

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին ։

Ալէլուիա ալէլուիա.

Տէր հովուեսցէ զիս, եւ ինձ ինչ ոչ պակասեսցի ։

Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս ։

Յովհաննու առաքելոյն ՚ի Կաթուղիկեայց առաջին թղթոյն է ընթերցուածս ։

Եղբարք՝ եթէ ասիցեմք՝ եթէ մեղս ինչ մեք ոչ ունիմք, զանձինս խաբեմք. եւ ճշմարտութիւն ՚ի մեզ ոչ գոյ ։

Ապա եթէ խոստովան լինիցիմք զմեղս մեր, հաւատարիմ է նա՝ եւ արդար, առ 'ի թողուլ մեզ զմեղս մեր և սրբել զմեզ յամենայն անիրաւութենէ ։

Եթէ ասիցեմք՝ եթէ ոչինչ մեղաք, սուտ առնեմք զնա, և բան նորա ոչ է 'ի մեզ ։

Որդեակք իմ, զայս գրեմ ձեզ՝ զի մի մեղիցէք. եւ եթէ մեղիցէ ոք, ունիմք բարեխօս առ Աստուած զՅիսուս Քրիստոս՝ զարդարն՝ և զանարատ ։

Եւ նա է քաւութիւն մեղաց մերոց. և ոչ եթէ մերոցն միայն՝ այլ և ամենայն աշխարհի ։

Եւ յայսմիկ գիտեմք՝ եթէ ծանեաք զնա, եթէ զպատուիրանս նորա պահիցեմք ։

Որ ասիցէ՝ եթէ ծանեայ զնա, եւ զպատուիրանս նորա ոչ պահիցէ, սուտ է՝ եւ ճշմարտութիւն 'ի նմա ոչ գոյ ։

Իսկ որ պահիցէ զբան նորա, արդարեւ 'ի նմա կատարեալ է սէրն Աստուծոյ. այսուիկ ճանաչեմք՝ եթէ 'ի նմա եմք ։

Որ ասիցէ 'ի նմա բնակել, այնպէս պարտի գնալ՝ որպէս նայն գնաց ։

Ալէլուիա ալէլուիա.

Ձայնիւ իմով ես առ քեզ Տէր կարդացի,

ձայնիւ իմով առ Աստուած . եւ նայեցաւ առ իս :

Յաւուր նեղութեան իմոյ զԱստուած խնդրեցի ձեռօք իմովք . եւ 'ի գիշերի առաջի նորա ոչ խաբեցայ :

Ալէլուիա Օրթի :

Խաղաղութիւն ամենեցուն :

Եւ ընդ հոգւոյդ քում : Երկիւղածութեամբ լուարուք :

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու :

Փառք քեզ Տէր Աստուած մեր :
Պռօսխումէ : Ասէ Աստուած :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս :

Եւ մտեալ շրջէր ընդ Երիքով . եւ ահա այր մի անուն կոչեցեալ Զակքէոս , եւ նա էր մաքսապետ , և ինքն մեծատուն . եւ խնդրէր տեսանել՝ թէ ո՞վ իցէ Յիսուս , և ոչ կարէր 'ի բազմութենէն , զի կարճ էր հասակաւ :

Եւ ընթացեալ յառաջս , ել 'ի ժանտաթզենին զի տեսանիցէ զնա . քանզի ընդ այն իսկ անցանելոց էր :

Իբրեւ եկն 'ի տեղին , հայեցաւ 'ի վեր Յիսուս՝ և ասէ ցնա . Զակքէ , փութա էջ

այտի, զի այսօր 'ի տան քում արժան է ինձ ագանել. փութացաւ եւ էջ, եւ ընկալաւ զնա ուրախութեամբ:

Իբրեւ տեսին ամենեքին, տրտնջէին եւ ասէին՝ թէ առ առն մեղաւորի եմուտ լուծանել:

Եկն եկաց Զաքէոս, և ասէ ցՏէր. ահա զկէս ընչից իմոց տաց աղքատաց. և եթէ զոք զրկեցի, հատուցից չորեքկին:

Եւ ասէ ցնա Յիսուս. այսօր եղեւ փրկութիւն տանս այսմիկ. քանզի եւ սա որդի Աբրահամու էր:

Զի եկն Որդի Մարդոյ խնդրել և կեցուցանել զկորուսեալն:

Քարոզ:

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Վասն 'ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց զՏէր աղաչեսցուք:

Տէր ողորմեա:

Եւ եւս վասն հիւանդիս (այս անուն) որ յուսացեալ է կոչել զանուն Տեառն, զՏէր աղաչեսցուք:

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛:

Աղօթք ։

Անսկիզբն Աստուած սուրբդ սրբոց, որ զմիածին քո Որդիդ առաքեցեր բժշկել զամենայն ախտս հոգւոց եւ մարմնոց մերոց․ առաքեա զՀոգիդ քո սուրբ, և սրբեա (զայս անուն) ծառայս քո, և ազատեա յամենայն մեղաց․ զի ողորմած ես և գթած ։ Եւ քեզ փառս մատուցանեմք ընդ Որդւոյ և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Քարոզ ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Օրհնեա՛ Տէր ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյ ։

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ ։

զՓոխն ըման ասա ։

Շարական ․

ԲՁ․ Մեղաք մինչեւ յերկինս և զարդար զցասումն քո շարժեցաք 'ի մեզ․ Տէր ըստ մեծի քում ողորմութեանդ, ողորմեա մեզ ։

Իջա՛ք մինչ 'ի դըժո՛խս ընկղմեա՛լք յանօ-
րէնութեան մերում. Տէ՛ր յիշեա՛ զգինս
արեա՛ն Որդւո՛յ քո և ողո՛րմեա՛.

Հալածեա 'ի մէ՛նջ Տէ՛ր նշանա՛ւ խա՛չի
քո զընդդիմամարտ եւ զանե՛րեւոյթ գա-
զա՛նն. Եւ մի՛ տար յապականութի՛ւն
զքո ժառա՛նգութի՛ւնս.

Ջե՛րեկային քե՞զ մաղթե՛մ հառաչ-
մա՛մբ սըրտի իմոյ, որ վա՛սն իմ խոնա՛րհե-
ցա՛ր 'ի յերկնից. յո՛յս կենդանութեա՛ն
և փըրկութեա՛ն իմոյ Տէ՛ր.

Ո՛ր 'ի խաչին բարձե՛ր ըզդա՛տակնիքն մա-
հու, տա՛րածելո՛վ ըզբա՛զուկըս քո. ար-
ձա՛կեա եւ զիս 'ի կա՛պանա՛ց բանսար-
կուին. յո՛յս կենդանու.

Ո՛ր յամենայն ազգա՛ց երա՛նեցա՛ր Ար-
քուհի եւ կո՛յս Մարիամ. աղա՛չեա զա-
'ի քէն զմա՛րմնացեա՛լն Աստուած, ա՛պ-
րեցուցանե՛լ ըզմե՛զ 'ի սպա՛ռնալեաց
գեհենոյն.

Քարոզ.

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց,
բարեխօսութեամբ սուրբ Աստուածած-

նին, եւ իջանելոյ 'ի վերայ մեր ողորմութեան և գթութեան Տեառն Աստուծոյ. ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ
և ողորմեսցի։

Աղօթք։

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին։

Ալէլուիա ալէլուիա.

Բարձր առնեմ զքեզ Տէր, զի ընկալար զիս. եւ ոչ ուրախ արարեր զթշնամին
իմ յիս։

Տէր Աստուած իմ կարդացի առ քեզ եւ բժշկեցեր զիս. Տէր, հաներ 'ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ, որք
իջանեն 'ի գուբ։

Պօղոսի առաքելոյն 'ի Կորնթացւոց երկրորդ
Թղթոյն է ընթերցուածս։

Ապաքէն դուք տաճար Աստուծոյ կենդանւոյ էք. որպէս ասաց Աստուած, թէ բնակեցայց 'ի նոսա, և գնացից 'ի նոսա. և եղէց նոցա Աստուած, և նոքա եղիցին
իմ ժողովուրդք։

Վասն որոյ ելէք 'ի միջոյ նոցա եւ մեկնե-

ցարուք, ասէ Տէր. և 'ի պիղծս մի մեր-
ձենայք. և ես ընկալայց զձեզ. եւ ես ե-
ղէց ձեզ 'ի Հայր, և դուք եղիջիք ինձ յուս-
տերս և 'ի դստերս, ասէ Տէր ամենակալ։
Իսկ որովհետեւ զայս աւետիս ունիմք սի-
րելիք, սրբեսցուք զանձինս մեր յամենայն
պղծութենէ մարմնոյ եւ հոգւոյ, կատա-
րեսցուք զսրբութիւն ահիւն Աստուծոյ։

Ալէլուիա ալէլուիա.

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն,
յաւուր չարի փրկէ զնա Տէր։

Ալէլուիա Օրթի.

Խաղաղութիւն ամենեցուն.

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի.

Փառք քեզ Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Գնաց ընդ նմա. երթայր եւ ժողովուրդ-
բազում զհետ նորա, և նեղէին զնա։
Եւ կին մի էր 'ի տեռատեսութեան արեան
զերկոտասան ամ, եւ յոյժ վշտացեալ 'ի
բազում բժշկաց, եւ ծախեալ զինչս իւր

զամենայն, և չէր ինչ օգտեալ, այլ եւս
առաւել զայրացեալ:

Իբրեւ լուաւ զՅիսուսէ, եկն 'ի մէջ ամբոխին յետոյ՝ և բուռն էհար զհանդերձէ նորա. քանզի խորհէր 'ի մտի, թէ միայն մերձեցայց 'ի հանդերձս նորա՝ փրկեցայց:

Եւ վաղվաղակի ցամաքեցաւ աղբիւր արեան նորա. եւ գիտաց 'ի մարմին իւր՝
թէ բժշկեցաւ 'ի տանջանացն:

Եւ անդէն վաղվաղակի գիտաց Յիսուս յանձն իւր զզօրութիւնն որ ել 'ի նմանէ, դարձաւ յամբոխն եւ ասէ. ո՞վ մերձեցաւ 'ի հանդերձս իմ:

Եւ ասեն ցնա աշակերտքն. տեսանես՝ զի ամբոխդ նեղէ զքեզ, և ասես թէ ո՞վ մերձեցաւ 'ի հանդերձս իմ:

Եւ շուրջ հայէր տեսանել՝ թէ ո՞ զայն
արար:

Եւ կինն զարհուրեալ և դողացեալ վասն որոյ գաղտն արար. քանզի գիտէր զինչ եղեւ նմա. եկն՝ անկաւ առաջի նորա, և
ասաց զամենայն իրսն ստուգութեամբ:

Եւ Յիսուս ասէ ցնա. դուստր՝ հաւատ քո կեցուցին զքեզ. երթ 'ի խաղաղութիւն,
և եղիջիր ողջ 'ի տանջանաց քոց:

Քարոզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն ՚ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց, զՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա։

Եւ եւս վասն հիւանդիս (այս անուն) որ յուսացեալ է կոչել զանուն Տեառն, զՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Աստուած մեծ և սքանչելագործ, որ պահես զուխտս քո, եւ տաս զողորմութիւն սիրելեաց քոց, եւ զթողութիւն մեղաց ՚ի ձեռն Որդւոյ քո Յիսուսի Քրիստոսի. որ նորոգեաց զմեզ ՚ի մեռելութենէ մեղաց մերոց։ Դու ես որ լուսաւոր առնես զկոյրս, եւ կանգնես զանկեալս։ Դու հաներ զմեզ ՚ի խաւարէ, և ՚ի ստուերաց մահու. ասելով ցկապեալս՝ թէ ելէք, և որք ՚ի խաւարին՝ թէ յայտնեցարուք. յորս ծագեաց լոյս գիտութեան օծելոյ քո, որ եկն երեւեցաւ յերկրի, և ընդ մարդկան շրջեցաւ. և որք ընկալան զնա, ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել։

Դու Տէր, փրկական աւազանին վերստին ծննդեամբն զորդէգրութիւն մեզ շնորհեցեր, և հաղորդս արարեր զմեզ սուրբ անուան նորա: Դու ինքն Տէր ամենայնի նայեա (յայս անուն) ծառայ քո, զի փրկեալ 'ի մեղաց, եղիցի արդարացեալ 'ի քեզ, զգեցեալ զՏէր մեր Յիսուս Քրիստոս: Զի ողորմած և մարդասէր Աստուած ես, եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ, այժմ և միշտ և յաւի.

Քարոզ:

Իջեալս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Օրհնեա՛ Տէր:

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւ:

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ:

զՓոխն ըման ասա:

Շարական.

Բկ. Յամենայն ժամ աղաչանք իմ այս են.
'ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր:
Ցանցանաց իմոց զարհուրի միտք իմ.
աղաչեմ զքեզ թող ինձ Տէր:

Արտասուաց իմոց մի լռեր Տէր · զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի ։

Անմահ Թագաւոր որ կամիս ըզկեանս ամենայն մարդկան , որ կարդան առ քեզ · լուր աղաչանաց մերոց եւ նորոգեա հոգւով գիտութեան ։

Որ զառաժամանակեայ ըզցաւսըն բարձեր ՚ի մարմնոյն Եզեկիայ , մշտնջենաւոր ցուցանելով նորմա զհոգեւորական առողջութիւն · լուր աղաչա ։

Անոխակալ եւ բարեգութ , բարեխօսութեամբ սըրբուհւոյ անարատ մօր քո եւ կուսի , լուր աղաչա ։

Քարոզ ։

Սուրբ զԱստուածածինն եւ զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր ՚ի յերկինս , զի կամեցեալ ողորմեսցի՝ եւ գթացեալ կեցուսցէ զարարածս իւր · ամենակալ Տէր Աստուած մեր , կեցո եւ ողորմեա ։

Աղօթք ։

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին ։

Ալէլուիա ալէլուիա.

Աստուած յօգնել ինձ նայեաց, եւ Տէր, յընկերել ինձ փութա։

Ամաչեսցեն և յամօթ լիցին ոյք խնդրէին զանձն իմ. դարձցին յետս և ամաչեսցեն ոյք խորհէին ինձ չար։

Պօղոսի առաքելոյն յԵփեսացւոց թղթոյն է ընթերցուածս.

Եղբարք, աղաչեմք զձեզ ես որ կապեալս եմ 'ի Տէր, արժանի գնալ կոչմանն յոր կոչեցարուք։

Ամենայն խոնարհութեամբ, եւ հեզութեամբ, եւ երկայնմտութեամբ՝ անսալ միմեանց սիրով.

Փութալ պահել զմիաբանութիւն Հոգւոյն յօդիւ խաղաղութեան։

Մի մարմին՝ եւ մի Հոգի. որպէս և կոչեցարուք 'ի մի յոյս կոչման ձերոյ.

Մի է Տէր, մի հաւատք, մի մկրտութիւն.

Մի Աստուած, և Հայր ամենեցուն, որ 'ի վերայ ամենայնի եւ ընդ ամենեսին եւ յամենեսին 'ի մեզ։

Այլ իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ տուեալ են շնորհք ըստ չափոյ պարգեւացն Քրիստոսի։

Ալէլուիա ալէլուիա.

Դատ արա ինձ Տէր՝ զի ես յամբծութեան իմում գնացի . ՚ի Տէր յուսացայ զի մի եղէց հիւանդ ։

Ալէլուիա Օրթի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Ելեալ անտի Յիսուսի գնաց ՚ի կողմանս Տիւրոսի և Սիդոնի ։

Եւ ահա՝ կին մի Քանանացի ՚ի սահմանաց անտի նոցա՝ ելեալ, աղաղակէր և ասէր . Ողորմեաց ինձ Տէր Որդի Դաւթի, դուստր իմ՝ չարաչար այսահարի ։

Եւ նա ոչ ետ նմա պատասխանի ։

Եւ մատուցեալ աշակերտքն նորա՝ աղաչէին զնա եւ ասէին . արձակեա զնա՝ զի աղաղակէ զհետ մեր ։

Նա պատասխանի ետ եւ ասէ . ոչ ուրեք առաքեցայ՝ եթէ ոչ առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի ։

Եւ նա մատուցեալ, երկիրպագանէր նմա
և ասէր. Տէր, օգնեա ինձ։
Պատասխանի ետ նմա և ասէ. ոչ է բար-
ւոք առնուլ զհաց մանկանց՝ եւ արկանել
շանց։
Եւ նա ասէ. այո Տէր, քանզի եւ շունք
կերակրին 'ի փշրանաց անկելոց 'ի սեղանոյ
տեառն իւրեանց։
Յայնժամ պատասխանի ետ նմա Յիսուս,
և ասէ. ով կին դու՝ մեծ են հաւատք քո,
եղիցի քեզ՝ որպէս և կամիս։
Եւ բժշկեցաւ դուստր նորա 'ի նմին ժա-
մու։

Քարոզ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն 'ի վերուստ խաղաղութեան եւ
փրկութեան անձանց մերոց, զՏէր աղա-
չեսցուք։
Տէր ողորմեա։
Եւ ևս վասն հիւանդիս (այս անուն) որ
յուսացեալ է կոչել զանուն Տեառն, զՏէր
աղաչեսցուք։

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Աղօթք։

Բարերար եւ մարդասէր Տէր՝ որ զամե-

նայն հիւանդութիւնս և զամենայն ախտս բժշկես, բժշկեա (զայս անուն) ծառայ քո. յարո զսա 'ի մահճաց ցաւոց. այց արա ողորմութեամբ և գթութեամբ քո. փարատեա 'ի սմանէ զամենայն տկարութիւն և զհիւանդութիւն. զի յարուցեալ քո կարող ձեռամբ, ծառայեսցէ քեզ հանդերձ ամենայն գոհութեամբ: Զի դու ես Աստուած՝ Աստուած ողորմութեան եւ կեցուցիչ. և քեզ մատուցանեմք զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և:

Քարոզ:

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Օրհնեա՛ Տէր:

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ:

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ:

զՓոխն ըստն աւուր:

Շարական.

գջ. Ջանապա՛կան ըզհոգեւոր ըզգանձըն յապական՛նացու՝ կե՛նցաղըս ծախե՛ցի. այլ

առ քեզ միայն պաղատիմ բարերար Փըր-
կիչ, խնայեա 'ի մեղուցեալ ծառայս ։
Զցանկ հոգւոյ իմոյ քակտեցի եւ եղէ
անբարունակ որթ. այլ առ քեզ մի ։
Ոստաքանց եղէ ես որպէս զարմաւենի,
պտղակորոյս որպէս ձիթենի. այլ անյի-
շաչար եւ անոխակալ Փրկիչ, խնայեա 'ի ։
Հառաչեցի զանլռելի ըզհեծութիւն առ
բարեգթութն Աստուած, եւ լուաւ ինձ 'ի
լեռանէ սրբոյ իւրմէ. եւ եհան ըզկեանս
իմ յապականութենէ ։
Աւերեա՟ց ըզմահու կարողութիւնն որ
խաչեցաւ վասն մեր, եւ յարեաւ 'ի մե-
ռելոց որպէս յամենայնի կարող. փըր-
կելով ըզկեանս իմ յապա ։
Աստուած է՟ որ ծընաւ 'ի միշտ կուսէն
'ի փրկութիւն ազգի մարդկան, լուսա-
ւորելով ըզտիեզերս 'ի գիտութիւն ճըշ-
մարտութեան. եւ բարեբանեմք ըզնորա
բարեգթութիւնն ։
Զանարա՟տն օրհնեսցուք զԱստուածա-
ծինն որ կոյս մընաց յետ ծընընդեանն,
եւ տարաւ յորովայնի զանտանելին ամե-

նեցուն, զհամաբնակիցն Հօր և Ամենա-
սուրբ Հոգւոյն ։

Քարոզ ։

Սուրբ զԱստուածածինն եւ զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր ՚ի յերկինս, զի կամեցեալ ողորմեսցի՝ և ։

Աղօթք ։

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսու-թեամբ սուրբ Աստուածածնին ։

Ալէլուիա ալէլուիա.

Ցնծացէք արդարք ՚ի Տէր՝ ուղղոց վայելէ օրհնութիւն, խոստովան եղերուք Տեառն օրհնութեամբ. տասնաղեաւ սաղմոսարա-նաւ սաղմոս ասացէք նմա ։
Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր զի բա-րի է, սաղմոս ասացէք նմա օրհնութեամբ ։

Պօղոսի առաքելոյն ՚ի Հռովմայեցւոց թղթոյն. Ե ընթերցուած ։

Պարտ է մեզ որ կարողս եմք՝ զտկարու-թիւն տկարացն բառնալ, եւ մի անձանց և եթ հաճոյ լինել.
Իւրաքանչիւր ոք ՚ի մէնջ ընկերին հա-ճոյ լիցի ՚ի բարին՝ վասն շինութեան ։

քանզի և Քրիստոս ոչ եթէ անձին հաճոյ եղեւ. այլ որպէս և գրեալ է. Նախատինք նախատողաց քոց անկան 'ի վերայ իմ: Բայց որ ինչ գրեցաւն՝ 'ի մեր վարդապետութիւն գրեցաւ, զի համբերութեամբ և մխիթարութեամբ գրոց զյոյսն ընկալցուք: Այլ Աստուած համբերութեան եւ ամենայն մխիթարութեան տացէ ձեզ զնոյն խորհել ընդ միմեանս ըստ Յիսուսի Քրիստոսի. զի միաբանութեամբ 'ի մի բերան փառաւոր առնիցէք զԱստուած, և զՀայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Վասն որոյ ընկալարուք զմիմեանս, որպէս եւ Քրիստոս ընկալաւ զձեզ 'ի փառս Աստուծոյ:

Ալէլուիա ալէլուիա.

Աստուած յանուան քում կեցո զիս, եւ 'ի զօրութեան քում իրաւ արա ինձ:

Ալէլուիա Օրթի:

Խաղաղութիւն ամենեցուն:

Եւ ընդ հոգւոյդ քում: Երկիւղածութեամբ լուարուք:

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու:

Փառք քեզ Տէր Աստուած մեր:

Պռօսխումէ: Ասէ Աստուած:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Ասէ ցնոսա . ո՞վ է 'ի ձէնջ՝ որոյ իցէ բարեկամ, և երթայցէ առ նա 'ի մէջ գիշերի, և ասիցէ ցնա . բարեկամ, տո՛ւր ինձ փոխ երիս նկանակս . զի բարեկամ իմ եկն առ իս յուղւոյ, և ոչինչ ունիմ դնել առաջի նորա ։

Եւ նա 'ի ներքուստ տայցէ պատասխանի եւ ասիցէ . մի՛ աշխատ առներ զիս, զի դուրքդ փակեալ են, եւ մանկունքս ընդ ինեւ կան յանկողնի, ոչ կարեմ յառնել և տալ քեզ ։

Ասեմ ձեզ . եթէ ոչ յարուցեալ տայցէ նմա վասն բարեկամութեանն, սակայն վասն ժտութեանն յարուցեալ տայցէ նմա՝ զինչ և պիտոյ իցէ ։

Եւ ես ասեմ ձեզ . խնդրեցէք՝ եւ տացի ձեզ, հայցեցէք՝ եւ գտջիք, բաղխեցէք՝ եւ բացցի ձեզ . զի ամենայն որ խնդրէ՝ առնու, եւ որ հայցէ՝ գտանէ, եւ որ բաղխէ՝ բացցի նմա ։

Յո՞ ոք 'ի ձէնջ հայր՝ խնդրիցէ որդի իւր ձուկն, միթէ փոխանակ ձկանն օձ տայցէ նմա . եւ կամ խնդրիցէ ձու, միթէ կարի՞ճ տայցէ նմա ։

Իսկ եթէ դուք որ չարքդ էք՝ գիտէք պարգեւս բարիս տալ որդւոց ձերոց. որչափ եւս առաւել Հայր ձեր յերկնից տացէ բարիս այնոցիկ՝ որ խնդրեն 'ի նմանէ:

Քարոզ:

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Վասն 'ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց, զՏէր աղաչեսցուք:

Տէր ողորմեա:

Եւ եւս վասն հիւանդիս (այս անուն) որ յուսացեալ է կոչել զանուն Տեառն, ըզՏէր աղաչեսցուք:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Աղօթք.

Բազումողորմ և բարերար Տէր, որ զօրացուցեր զմեզ 'ի ձեռն սրբոց Առաքելոցն քահանայական աղօթիւք զհիւանդս բըժըշկել. աղաչեմք զքեզ, շնորհեա բժըշկութիւն եւ փրկութիւն (այս անուն) ծառայիս քո. փարատեցո զամենայն հիւանդութիւնս, եւ սրբեա զաղտեղութիւնս հոգւոյ եւ մարմնոյ սորա մարդասիրու-

թեամբ քով։ Եւ քեզ փառք և իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Օրհնեա՛ Տէր։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ։

զՓոխն ըման սաա։

Շարական.

Գկ. Քրիստոս Աստուած աստուածոց. ողորմեա։

Անօրէնութեամբ ՚ի մեղս երկնեաց զիս մայր իմ, աղաչեմ փրկիչ. ողորմեա։

Վիրաւորեալ մեղօք անկանիմ առ քեզ փրկիչ. մի անտես առներ. ողոր։

Զերեկրայինն քեզ մաղթեմ փրկիչ, որ կենարար բանիւ քո լուծեր զերկունս մահու. փարատեա և զիմ զհիւանդութիւնս. յոյս կենդանութեան մեր կեցո ըզմեզ։

Ո՛ր անմահացո՛ւցեր քո մե՛ռելութեամբդ ա-ւերելով ը՛զդըրունըս դըժո՛խոց մեռուցեր ըզմահ. կե՛նդանագործեա՛ և զիս զմեղօք ըզմեռեալս. յո՛յս կեն։

Մաքուր եւ ա՛նբի՛ծ կոյս յե՛տ ծընըն-դեանն. ո՛ր մարմնով ծընար զարձա՛կո՛ղն ՚ի կա՛պից մահու. բարեխօս լեր վասն անձա՛նց մերոց. փրկել ՚ի սպա՛ռնալեա՛ց գեհենոյն։

Քարոզ։

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց, բարեխօսութեամբ սուրբ Աստուածած-նին, եւ իջանելոյ ՚ի վերայ մեր ողորմու-թեան և գթութեան Տեառն Աստուծոյ. ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի։

Աղօթք։

Ընկալ Տէր զաղաչանս մեր. բարեխօսու-թեամբ սուրբ Աստուածածնին։

[illegible] ալէլուիա.

Յարիցէ Աստուած եւ ցրուեսցին ամե-նայն թշնամիք նորա. փախիցեն ատելիք նորա յերեսաց նորա։

Պօղոսի առաքելոյն 'ի Հռովմայեցւոց թղթոյն է ընթերցուածս ։

Աղաչեմ զձեզ, եղբարք, գթութեամբքն Աստուծոյ՝ պատրաստել զմարմինս ձեր պատարագ կենդանի, սուրբ, հաճոյ Աստուծոյ, զխօսուն պաշտօնդ ձեր. եւ մի կերպարանիք կերպարանօք աշխարհիս այսորիկ, այլ նորոգեցարուք 'ի նորոգութիւն մտաց ձերոց, առ 'ի քննել ձեզ զլաւն, և եթէ զինչ են կամքն Աստուծոյ բարին եւ հաճոյն և կատարեալն ։

Զայս ասեմ շնորհօքն Աստուծոյ որ տըւեալ են ինձ ամենայնի որ է 'ի ձեզ, մի՛ առաւել ինչ խորհել քան զարժանն խորհելոյ. այլ խորհել 'ի զգաստանալ իւրաքանչիւր, որպէս և բաժանեաց Աստուած չափ հաւատոց ։

Ալէլուիա ալէլուիա.

Զի՞ բարի կամ զի՞ վայելուչ, զի բնակին եղբարք 'ի միասին ։

Որպէս իւղ զի իջանէ 'ի գլուխ և 'ի մօրուսն Ահարօնի, և 'ի մօրուացն իջանէ 'ի գրապանս զգեստու նորա ։

Ալէլուիա Օրթի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա . եթէ ունիցիք զհաւատսն Աստուծոյ, ամէն ասեմ ձեզ, որ ոք ասիցէ լերինս այսմիկ՝ բարձիր և անկիր 'ի ծով, և ոչ երկմտիցէ 'ի սրտի իւրում, այլ հաւատայցէ թէ. զոր ասէն լինի, եղիցի նմա զոր ինչ և ասիցէ ։

Վասն այսորիկ ասեմ ձեզ . ամենայն ինչ վասն որոյ աղօթս արարեալ խնդրիցէք, և հաւատայցէք թէ առնուցուք, եղիցի ձեզ ։ Եւ յորժամ յաղօթս կայցէք, թողուցուք եթէ ունիցիք ինչ զումեքէ . զի և Հայրն ձեր որ յերկինս է, թողցէ ձեզ զյանցանս ձեր ։

Քարոզ ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն 'ի վերուստ խաղաղութեան եւ

փրկութեան անձանց մերոց , զՏէր աղա-
չեսցուք ։

Տէր ողորմեա ։

Եւ ևս փասն հիւանդիս (այս անուն) որ յուսացեալ է կոչել զանուն Տեառն , զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա . Տէր ողորմեա . Տէր ողորմեա ։

Աղօթք ։

Տէր Աստուած մեր՝ որ նստիս 'ի վերայ քերովբէից , եւ հայիս յանդունդս ։ Հայեաց (յայս անուն) ծառայս քո 'ի բարձրութենէ սրբութեան քո , հեռացո 'ի սմանէ զամենայն ցաւս եւ զամենայն աղտեղութիւնս , և տուր սմա զառողջութիւն զամենայն աւուրս կենաց իւրոց ։ Եւ քեզ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և ։

Քարոզ ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։ Ընկալ կե ։

Օրհնեա՛լ Տէր ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ ։

Ողորմեա ինձ , Աստուած , ըստ մեծի ողորմութեան քում , ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ ։

զՓառքն ըստ աստ ։

Շարական.

ԴՁ. Անկանի՛մ առաջի՛ քո եւ խնդրեմ
զթողութիւն յանցանաց իմոց. մի՛ ան-
տես առներ Հայ՛ր զաղաչա՛նս իմ.
Աղաղակեմ որպէս մաքսաւորն, եւ հե-
ղումն զարտասուս իմ առաջի՛ քո որպէս
պոռնիկն. մի՛ անտես առ:
Յաներեւոյթ թշնամւոյն պարտեցայ, և
'ի գաղտնի՛ նետի՛ց բանսարկուին վիրա՛-
ւորեցայ. մի՛ անտես առ:
Յո՛յս կենդանութեա՛ն եւ փրկութեա՛ն
իմոյ Տէ՛ր Ա՛ստուա՛ծ իմ, յի՛շեա զիս որ-
պէս երբեմն զԵզեկիայն. եւ դարձո զհո-
գի իմ 'ի դրանց դըժոխոց:
Որ կամաւոր մահուամբ քո մեռուցեր
ըզմահ Քրի՛ստո՛ս Ա՛ստուած. եւ լուսա-
փա՛յլ յարութեամբ քո կենդանագործեցե՛ր
զաշխարհս. կենդանագործեա՛ և զի՛ս ըզմե-
ղօք ըզմեռեալս:
Առ քեզ ապաւինի՛մք սուրբ Ա՛ստուա-
ծածին. բարեխօսեա՛ անդադա՛ր առ Որ-
դի՛դ քո և Աստուա՛ծ մեր. փրկել ըզմեզ

'ի փորձութենէ՛ եւ յամենա՟յն վըտան–
գից մերոց ։

Քարոզ ։

Սուրբ զԱստուածածինն եւ զամենայն
սուրբս բարեխօս արասցուք առ ։

Աղօթք ։

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսու–
թեամբ սուրբ Աստուածածնին ։

Ալէլուիա ալէլուիա ։

Որ բնակեալն է յօգնութիւն բարձրելոյն,
ընդ հովանեաւ Աստուծոյ յերկինս հան–
գիցէ ։

Յովհաննու առաքելոյն 'ի Կաթուղիկեայց առաջին
թղթոյն է ընթերցուածս ։

Եւ դուք օծութիւն ունիք առ 'ի սրբոյն,
և գիտէք ամենեքին ։
Ոչ գրեցի ձեզ՝ եթէ ոչ գիտէք զճշմար–
տութիւնն, այլ թէ գիտէք զնա, և թէ՝
զի ամենայն ստութիւն ոչ է 'ի ճշմար–
տութենէ անտի ։
Իսկ ո՞ իցէ սուտ, եթէ ոչ՝ որ ուրանայ
եթէ Յիսուս չէ Քրիստոսն. Նա իսկ է
նեռն, որ ուրանայ զՀայր և զՈրդի ։

Ամենայն որ ուրանայ զՈրդի, և ոչ զՀայր ընդունի. իսկ որ խոստովանի զՈրդի, նա և զՀայր ընդունի։

Դուք զոր լուարուքն իսկզբանէ՝ 'ի ձեզ բնակեսցէ. զի եթէ 'ի ձեզ բնակեսցէ զոր իսկզբանէն լուարուք, և դուք յՈրդին և 'ի Հայր բնակեսջիք։

Եւ այս են աւետիքն՝ զոր աւետարանեաց նա մեզ՝ զկեանսն յաւիտենականս։

Ալէլուիա ալէլուիա.

Երանի ում թողութիւն եղեւ մեղաց, և ծածկեցան ամենայն յանցանք նորա։

Ալէլուիա Օրթի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիրպագութեամբ լուարուք։

Սուրբ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։
Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Աղաչէր զնա ոմն 'ի փարիսեցւոցն՝ զի կերիցէ ճաշ ընդ նմա. և մտեալ 'ի տուն փարիսեցւոյն՝ բազմեցաւ։

Եւ կին մի էր 'ի քաղաքին մեղաւոր. իբ-

րեւ գիտաց թէ բազմեալ է 'ի տան փա-
րիսեցւոյն, բերեալ շիշ մի իւղոյ անուշից,
կայր յետոյ առ ոտս նորա, լայր. եւ ար-
տասուօքն սկսաւ թանալ զոտս նորա, եւ
հերովք գլխոյ իւրոյ ջնջէր. եւ համբուրէր
զոտս նորա, եւ օծանէր իւղովն։

Եւ տեսեալ փարիսեցւոյն որ կոչեաց զնա,
ասէր ընդ միտս իւր. սա թէ մարգարէ
ոք էր, ապա գիտէր թէ ով եւ որպիսի ոք
կին մերձենայ 'ի սա. զի մեղաւոր է։

Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնա,
Սիմոն, ունիմ ինչ ասել քեզ. Եւ նա ասէ,
ասա, վարդապետ։

Եւ ասէ. երկու պարտապանք էին ուրումն
փոխատուի. մին պարտէր հինգ հարիւր
դահեկան, եւ միւսն յիսուն. եւ իբրեւ ոչ
գոյր նոցա հատուցանել, երկոցունց շնոր-
հեաց. արդ ասա՝ ո՞վ առաւել սիրեսցէ
զնա։

Ասէ Սիմոն. ինձ այսպէս թուի՝ եթէ ո-
րում զբազումն շնորհեաց։

Եւ նա ասէ ցնա. ուղիղ դատեցար։

Եւ դարձեալ 'ի կին կողմն, ասէ ցՍիմոն.
տեսանե՞ս զայս կին. մտի 'ի տուն քո՝ ջուր
ոտից իմոց ոչ ետուր, իսկ սա արտասուօք

իւրովք եմթաց զոտս իմ, և հերով իւրով ջնջեաց. համբոյր մի դու ոչ ետուր ինձ, սա աւասիկ յորմէհետէ մտեալ եմ՝ ոչ դադարեաց ՚ի համբուրելոյ զոտս իմ. իւղով զգլուխ իմ ոչ օծեր, սա իւղով անուշիւ օծ:

Վասն որոյ ասեմ քեզ. Թողեալ լիցին սմա մեղք իւր բազումք, զի յոյժ սիրեաց. զի որում շատ թողուցու՝ շատ սիրէ, եւ որում սակաւ՝ սակաւ:

Եւ ասէ ցնա. Թողեալ լիցին քեզ մեղք քո: Եւ սկսան որ բազմեալն էին ընդ նմա՝ ասել ընդ միտս իւրեանց. ո՞վ է սա՝ որ զմեղս թողու:

Եւ նա ասէ ցկինն. Հաւատք քո կեցուցին զքեզ, երթ ՚ի խաղաղութիւն:

Քարոզ:

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք.

Վասն ՚ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա:

Եւ եւս վասն հիւանդիս (այս անուան) որ յուսացեալ է կոչել զանուն Տեառն, ըզՏէր աղաչեսցուք:

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛:

## Աղօթք ։

Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր, որ ես բժիշկ բարի՝ անձանց մերոց. որ զհիւանդութիւնս մեր բառնաս. որ քո վիրօք ամենեքեան բժշկեցաք ։ Որ հովիւդ ես բարի, եւ խնդրող մոլորեալ ոչխարին ։ Որ անձանց բեկելոց տաս մխիթարութիւն, Եւ կեանս մահացելոց ։ Որ զաղբիւր արեան տեռատեսին քղանցիւ հանդերձի քո բըժըշկեցեր ։ Որ զդուստր Քանանացւոյն 'ի դժնդակ դիւացն ազատեցեր ։ Որ զպարտս երկուց պարտապանացն շնորհեցեր. եւ մեղաւոր կնոջն զթողութիւն ետուր ։ Որ զբժշկութիւն անդամալուծին պարգեւեցեր հանդերձ թողութեամբ մեղաց նորա ։ Որ զմաքսաւորն բանիւ արդարացուցեր. Եւ զաւազակն 'ի վերջին խոստովանութեան նորա ընկալար ։ Որ զմեղս աշխարհի բարձեր, եւ 'ի խաչին բեւեռեցեր ։ Զքեզ աղաչեմք, եւ քեզ պաղատիմք, ներեա, Եւ թող զանօրէնութիւնս եւ զմեղս սորա զկամայ եւ զակամայ, զգիտութեան եւ զանգիտութեան, զոր 'ի գիշերի եւ զոր 'ի տուընջեան ։ Այո՛ Տէր Աստուած, լուր ինձ մեղաւորիս 'ի պահուս յայսմիկ վասն

(այս անուն) ծառայիս քո, անտես արա իբրեւ անյիշաչար Աստուած զյանցանս սորա զամենայն ։ Զբերան սորա քոյին օրհնութեամբդ լցո. զշրթունս սորա բաց, առ 'ի փառաբանութիւն անուանդ քում սրբոյ. զձեռս սորա տարածեա 'ի գործս պատուիրանաց քոց. զոտս սորա առ յընթացս Աւետարանին ուղղեա. եւ զամենայն անդամս սորա եւ զմիտս պարփակեա քոյին շնորհօք ։

Դու Տէր Աստուած մեր՝ որ 'ի ձեռն սրբոց քոց Առաքելոց ծանուցեր մեզ ասելով. թէ զոր կապիցէք 'ի վերայ երկրի՝ եղիցի կապեալ յերկինս. և դարձեալ՝ եթէ ումեք թողուցուք զմեղս՝ թողցին նմա ։ Եւ որպէս լուար Եզեկիայ 'ի նեղութեան անձին իւրում 'ի ժամու մահուան նորա, և ոչ անտես արարեր զաղաչանս նորա. լուր և ինձ մեղաւոր և անարժան ծառայի քո 'ի պահուս յայսմիկ ։ Քանզի դու ես Տէր՝ որ եօթանասնեկի եօթն թողուլ՝ որք անկանին 'ի մեղս, հրամայեցեր քոյին մարդասիրութեամբդ. ապաշաւելով 'ի վերայ չարեաց մերոց, և խնդալով 'ի վերայ դարձի կորուսելոց ։

Տէր Աստուած մեր որ մտեալ ՚ի տուն Զաքէի ասացեր, այսօր եղեւ փրկութիւն տանս այսմիկ. դու որպէս մարդասէր և բազումողորմ Փրկիչ, տուր և այժմ փրկութիւն տանս այսորիկ. զի որպէս մեծութիւն քո, նոյնպէս և ողորմութիւն քո։ Եւ քեզ փառք և երկրպագութիւն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

---

Յայնժամ կէսք ՚ի Քահանայից կալով յաջմէ հիւանդին, և կէսք ՚ի յահեկէ. և Աւագերէցն եկեալ դնէ զԱւետարանն ՚ի վերայ գլխոյ հիւանդին, և ասէ զԱղօթս։

Աստուած ամենակալ՝ արարիչ ամենայն արարածոց. որ առաքեցեր յաշխարհ ըզմիածին Որդիդ քո, որ եկն և փրկեաց ըզտիեզերս ՚ի մեղաց. և բժշկեաց զամենայն ախտս և զհիւանդութիւնս ժողովրդեան քում. ընկղմեաց զմահ, և փոխեաց զմեզ ՚ի կեանս և յանմահութիւն։ Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Աստուած մեր, դիր զամենակարող աջ քո ՚ի վերայ հիւանդիս այսորիկ, և բժշկեա զսա ՚ի ցաւոց իւրոց։ Զի զքեզ փառաւորեսցէ զբժիշկդ հոգւոց

և մարմնոց, և խոստովան լիցի անհեղ աստուածութիւն քո. զի քեզ վայելէ փառք և իշխանութիւն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Աստուած յաւիտենական, որ իջեր 'ի ստորին կողմ երկրի, և շնորհս ծաւալեալ սփռեցեր յարարածս քո։ Առաքեցեր եւ զերանելի Առաքեալսն քո, հրաման տալով նոցա՝ բժշկել զամենայն ախտս և զհիւանդութիւնս ժողովրդեան քում։ Եւ արդ՝ ես ծառայս քո տկարս և անարժանս՝ դնեմ զձեռն իմ 'ի վերայ հիւանդիս այսորիկ, և կարդամ զանհեղ աստուածութիւն քո, եւ խնդրեմ յառատ բարերարութենէդ քումմէ, առաքեա զամենակարող զօրութիւն քո, և բժշկեա զախտս և զհիւանդութիւնս ծառայիս քո այսորիկ՝ նշանաւ ամենայաղթ Խաչիդ քո, որով բարձեր բռնաւորութիւն ազգի մարդկան, և զդատապարտեցեր զթշնամին կենաց եւ փրկութեան մերոյ։ Զի դու ես Աստուած մեր, և բժիշկ հոգւոց և մարմնոց ծառայից քոց, և փարատիչ ամենայն ախտաւորութեանց

մերոց։ Եւ քեզ ընդ Հօր ամենակալի՝ եւ ընդ Հոգւոյդ Ճշմարտի վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ։

Վասն հիւանդաց եւ ամենայն վշտացելոց՝ աղաչեսցուք զՓրկիչն մեր Քրիստոս, զի ողորմեսցի ըստ մեծի ողորմութեան իւրում. և բժշկեսցէ զախտս եւ զհիւանդութիւնս հոգւոց եւ մարմնոց ծառայից իւրոց. եւ կատարեալ առողջութեամբ հաստուսցէ զամենեսեան 'ի մշտնջենաւոր եւ յանախտ կեանս։ Որ առաքեցաւ 'ի Հօրէ 'ի բժշկութիւն ազգի մարդկան՝ միածին Որդին Աստուծոյ. Տէր մեր և Փրկիչ Յիսուս Քրիստոս. կեցուսցէ և ողորմեսցի։

Աղօթք։

Փարատեա զցաւս եւ բժշկեա զհիւանդութիւնս 'ի ժողովրդենէ քումմէ Տէր Աստուած մեր. եւ շնորհեա ամենեցուն զկատարեալ առողջութիւն նշանաւ ամենայաղթ Խաչի քո. որով բարձեր զտկարութիւն ազգի մարդկան, և դատապար-

*տեցեր զթշնամին կենաց եւ փրկութեան մերոյ։ Դու ես կեանք մեր և փրկութիւն՝ բարերար և բազումողորմ Աստուած. որ միայն կարող ես թողուլ զմեղս, և մերժել զախտս և զհիւանդութիւնս 'ի մէնջ. որում յայտնի են պէտք կարեաց մերոց։ Պարգեւիչդ բարեաց՝ պարգեւեա զառատ ողորմութիւն քո 'ի վերայ արարածոց քոց՝ ըստ իւրաքանչիւր պիտոյից. յորոց հանապազ փառաւորեալ գովի ամենասուրբ Երրորդութիւնդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Քարոզ։

*Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ 'ի Տեառնէ՝ զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ 'ի վերայ մեր. Տէրն Ամենակալ կեցուսցէ և ողորմեսցի։*

Կեցո՛ Տէր։

Աղօթք։

*Թագաւոր խաղաղութեան՝ օգնական եւ փրկիչ անձանց մերոց՝ Քրիստոս Աստուած մեր, պարսպեալ պահեա զժողովուրդս քո ընդ հովանեաւ սուրբ և պատուական խա-*

չես քեզ ՚ի խաղաղութեան. փրկեա յերկե-
ւելի եւ յաներեւութից թշնամւոյն. Արժա-
նաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ
ընդ Հօր եւ ընդ Սուրբ Հոգւոյդ, այժմ եւ
միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն։

Հայր մեր որ յերկինս.



# ԿԱՆՈՆ

## ԽԱՉԱԼՈՒԱՑ ԱՌՆԵԼՈՑ

### ՈՐ ԿՈՉԻ

### ԽԱՉԱՀԱՆԳԻՍՏ

Տէր, մի սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս, և մի բարկութեամբ քով խրատեր զիս։

Ողորմեա ինձ, Տէր, զի հիւանդ եմ ես. բժշկեա զանձն իմ, զի խռովեցան ոսկերք իմ։

Անձն իմ յոյժ խռովեցաւ, և դու, Տէր, մինչեւ յե՞րբ։

Դարձ, Տէր, և փրկեա զանձն իմ, կեցո զիս Տէր, ըստ ողորմութեան քում։

Զի ոչ ոք է որ 'ի մահու յիշէ զքեզ, կամ 'ի դժոխս խոստովան առնիցի առ քեզ։

Վաստակեցայ ես 'ի հեծութեան իմում, լուացի զամենայն գիշեր զմահիճս իմ, և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի։

Խռովեցաւ 'ի սրտմտութենէ ակն իմ, և մաշեցայ ես 'ի վերայ ամենայն թշնամեաց իմոց ։

Ի բաց կացէք յինէն ամենեքեան, որք գործէք զանօրէնութիւն ։

Լուաւ Տէր ձայնի լալոյ իմոյ․ լուաւ Տէր աղօթից իմոց․ եւ Տէր զխնդրուածս իմ ընկալաւ ։

Ամաչեսցեն և խռովեսցին յոյժ ամենայն թշնամիք իմ, դարձցին յետս և ամաչեսցեն յոյժ վաղվաղակի և խռովեսցին ։

Շարական ․

ԲՁ․ Ապաւինեցաք 'ի խաչ քո արարիչ յաւիտենից, որ ետուր մեզ պահապան յաղթող ընդդէմ թշնամւոյն․ աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինս մեր ։

Բարձրեալ թագաւոր որ վասն մեր ելեր 'ի խաչ, եւ բարձեր սովաւ զյանցանս նախաստեղծին Ադամայ․ աղա ։

Գլուխ սուրբ հաւատոյ եւ փայտ կենաց մարդկան յայտնեալ, զոր տեսեալ այսոցն պղծոց կործանեցաւ անկանգնելի․ աղա ։

Ողբացաւ թշնամին ընդ յայտնելն [illegible]

Խաչին , եւ ՚ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի . ալլ.

Մեղաք մինչեւ յերկինս և զարդար ըզցասումն քո շարժեցաք ՚ի մեզ . Տէր ըստ մեծի քում ողորմութեանդ ողորմեա մեզ ։

Իջաք մինչ ՚ի դըժոխս ընկըղմեալք յանօրէնութեան մերում . Տէր յիշեա զգինս արեան Որդւոյ քո և ողորմեա ։

Հալածեա ՚ի մէնջ Տէր նըշանաւ խաչի քո զընդդիմամարտ եւ զանհրեւոյթ գազանն . եւ մեզ տուր յապականութենէն զքո ժառանգութիւնս ։

Փառք Հօր և Որդւոյ և ։

Տաճար լուսոյ անըստուերին եւ առագաստ անճառ բանին . որ ըզնախնոյ մօրն Եւայի բարձեր զանէծսն տրտմալի . հայցեա յՈրդւոյ քո միածնի Հօր հաշտութեանըն միջնորդի , բառնալ ՚ի մէնջ ըզխռովութիւն եւ տալ զօդւոց խաղաղութիւն ։

Այժմ և միշտ և ։

Երկինք ցընծայսն եւ երկիրս ուրա-

խանայր, քա՛նզի Փրկի՛չ ցուցաւ Սո՛ւրբ խաչն և լո՛ւսատու տի՛եզերաց. ա՛ղա :

Ալէլուիա ալէլուիա.

Ձայն Տեառն 'ի վերայ ջուրց. և Աստուած փառաց որոտաց, եւ Տէր ինքն 'ի վերայ ջուրց բազմաց :

Ձայն Տեառն զօրութեանց, եւ ձայն Տեառն մեծվայելչութեանց :

Ընթերցուածս 'ի չորրորդ Թագաւորութեանց :

Եւ ասեն արք քաղաքին ցԵղիսէ. ահաւասիկ բնակութիւն քաղաքիս բարի է, որպէս եւ Տէրդ իսկ տեսանէ. եւ ջուրքս չար եւ երկիրս անզաւակ :

Եւ ասէ Եղիսէ. առէք առ իս կուժ մի նոր, և դիք այդր. և բերին առ նա. և ել Եղիսէ յականս ջուրցն, և արկ անդր աղ և ասէ՝ այսպէս ասէ Տէր. բժշկեմ զջուրսդ զայդոսիկ, եւ մի եւս լիցի այդ 'ի մահ եւ յանզաւակութիւն. և բժշկեցան ջուրքն մինչեւ ցայսօր ըստ բանին Եղիսէի զոր խօսեցաւ :

Ալէլուիա ալէլուիա.

Եսուր երկիւղածաց քոց նշան զի ապրեսցին յերեսաց աղեղան :

Ալէլուիա Օրթի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։
Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Ի վերջնում աւուր մեծի տօնին կայր Յիսուս՝ աղաղակէր եւ ասէր . եթէ որ ծարաւի իցէ , եկեսցէ առ իս եւ արբցէ . որ հաւատայ յիս՝ որպէս և ասեն գիրք , գետք յորովայնէ նորա բղխեսցեն ջրոց կենդանութեան ։
Զայս ասէր վասն Հոգւոյն զոր ընդունելոց էին որ հաւատային 'ի նա ։

Քարոզ ։

Աղաչեսցուք զմարդասէրն Աստուած , որ է լոյս եւ ապաւէն անձանց մերոց . որ զամենայաղթ Նշան Սուրբ Խաչին շնորհեաց մեզ զէն անպարտելի ընդդէմ ներգործութեանց սատանայի . զի զամենայն ինչ՝ յոր և մերձեսցի սա , սրբեսցէ ,

մանաւանդ զջուրս զայս . եւ շնորհեսցէ սոցա բժշկութիւն ախտից , եւ փարատումն ցաւոց . ամենակալ Տէր Աստուած
մեր կեցուսցէ և ողորմեսցի ։

## Աղօթք ։

Տէր Աստուած ամենակալ՝ արարիչ ամենայն արարածոց , որ զգեցար մարմին ըստ մերում հողեղէն բնութեանս , և 'ի լուացումն մեղաց սրբիչ և մաքրիչ զջուրս կացուցեր . որ եւ 'ի ձեռն մարգարէին Եղիսէի օրհնեցեր զջուրն չարաշունչ եւ մահաբեր . և այժմ Տէր բարերար , առաքեա զշնորհս Հոգւոյդ Սրբոյ 'ի ջուրս յայս , և օրհնեա * աներեւոյթ աջով քով , և զօրութեամբ ամենայաղթ Խաչի քո ։ Տուր սմա շնորհս , զի ամենեքին որք արբցեն 'ի սմանէ՝ եղիցի նոցա 'ի բժշկութիւն ախտից՝
և 'ի փարատումն ցաւոց ։

Օրհնեա Տէր * զջուրս զայս զօրութեամբ Սուրբ Խաչի քո . զի հօտք և խաշինք որք արբցեն 'ի նմանէ , եղիցի նոցա յանդաւութիւն եւ 'ի ծննդականութիւն ։ Օրհնեա Տէր * զջուրս զայս նշանաւ Սուրբ Խաչին 'ի ձեռն քահանայիս՝ և խնդրեա-

ծոց ժողովրդեանս, զի ուր ցօղեսցի 'ի տունկս եւ 'ի բոյսս. եղիցին անմնասելի 'ի ժանգոյ և 'ի Թրթրոյ՝ և յամենայն պատահարաց. եւ առաւել եւս պտղաբերեսցին 'ի շնորհաւէտութիւն ողջունց մարդկան, եւ 'ի պարս պաշտաման քում։ Եւ գոհանալով փառս մատուցանեմք քեզ. ընդ Հօր եւ ընդ ամենասուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւի։

Ամէն. Ալէլուիա ալէլուիա ալէլուիա։

Օրհնեսցի և օրհնեսցի ջուրս այս նշանաւ Սուրբ Խաչիւս, և Սուրբ Աւետարանաւս, և աւուրս շնորհիւ, յանուն Հօր, և Որդւոյ, և Հոգւոյն Սրբոյ։ (Երիցս կրկնել)։ Օրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Քարոզ։

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո։

Աղօթք։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս։ Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն։ Հայր մեր որ յերկինս։

Եթէ ուրբաթ մասամբք էջէ խաչալուսային , ասա և զայս Շարական :

ԲՁ. Հեղմամբ արեան սրբոց վկայիցն հաշտեաց ընդ մեզ Քրիստոս , և փրկեաց յամենայն փորձութենէ :

Որք նահատակեցան վասն քո 'ի մահ . վիրաւորեալք յաղթեցին թշնամւոյն . սոցին աղաչանօք հաշ :

Որք միացան 'ի սէր ահաւոր քո տէրութեանդ . և մատուցին զանձինս նուրբեանց պատարագ քեզ և զենումն . սոցին աղաչանօք հաշ :



# ԿԱՆՈՆ

## ԴԺՈՒԱՐԱԾԻՆ ՅՂԻ ԿՆՈՋ

---

Ալէլուիա ալէլուիա.

Առ քեզ, Տէր, համբարձի զաչս իմ, որ բնակեալդ ես 'ի յերկինս։

Որպէս աչք ծառայի 'ի ձեռն Տեառն իւրոյ, և որպէս աչք աղախնոյ 'ի ձեռն տիկնոջ իւրոյ։

Այնպէս են աչք մեր առ քեզ Տէր Աստուած մեր, մինչև ողորմեսցիս 'ի վերայ մեր։

Ողորմեա մեզ, Տէր, ողորմեա մեզ, զի բազում լցաք արհամարհանօք։

Եւս առաւել լցան անձինք մեր Նախատանօք, որք նախատեն զմեզ արհամարհանօք ամբարտաւանից։

Ընթերցուածս յԷսայեայ մարգարէէ։

Մինչչև լիցէ յղւոյն ծնեալ, և մինչչև հասեալ լիցեն ցաւք երկանց, ապրեցաւ և ծնաւ արու։

Ո՞ լուաւ, ո՞ ետես այսպիսի ինչ. եթէ երկնեաց երկիր 'ի միում աւուր, և ծնաւ ազգ մի ողջոյն միանգամայն. զի երկնեաց Սիովն, և ծնաւ զմանկունս իւր։

Ես ետու քեզ զյոյսդ զայդ, եւ դու ոչ յիշեցեր զիս՝ ասէ Տէր. ո՞չ ապաքէն զամուլն եւ զծննդականն ես արարի. ասէ Աստուած քո։

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս։

Հաւատովք՝ որ Աբրահամն կոչեցաւ՝ ունկնդիր եղեւ ելանել 'ի տեղին, զոր առնելոց էր 'ի ժառանգութիւն. ել գնաց՝ եւ ոչ գիտէր յո՞ երթիցէ։

Հաւատովք պանդխտեցաւ յերկրին Աւետեաց իբրեւ յօտարութեան. խորանօք բնակեաց Սահակաւ և Յակովբաւ հանդերձ ժառանգակցօք նոցին աւետեաց։

Քանզի ակն ունէր հիմամբ հաստատելոյ քաղաքին, որոյ ճարտարապետ եւ արարիչ Աստուած է։

Հաւատովք և ինքն Սառրա՝ որ ամուլն էր, զօրութիւն առնլոյ զսերմն ողջեծնութեան՝ ընդունէր, և 'ի տարաժամ հասա-

կէ ծնանէր՝ քանզի հաւատարիմ համարե-ցաւ զայն՝ որ խոստացաւն ։

Վասն որոյ և 'ի միոջէն ծնանէին. եւ այն 'ի յանցեալ ժամանակի, իբրեւ զաստեղս երկնից բազմութեամբ. և իբրեւ զաւազ առ ափն ծովու առանց թուոյ ։

Ալէլուիա ալէլուիա.

Ո՛ Տէր փրկեա զանձն իմ, ողորմած Աս-տուած մեր ողորմի և պահէ զտղայս Տէր ։

Ալէլուիա Օրթի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ ։

Ամէն ամէն ասեմ ձեզ, զի լացջիք եւ ողբասջիք դուք, եւ աշխարհ խնդասցէ. դուք տրտմեսջիք. այլ տրտմութիւն ձեր յուրախութիւն եղիցի ։

Կին յորժամ ծնանիցի՝ տրտմութիւն է նմա ։ զի հասեալ է ժամ՝ նորա. այլ յոր-ժամ ծնցի զմանուկն ։ ոչ եւս յիշէ զնե-

ղութիւն վասն խնդութեանն . զի ծնաւ մարդ յաշխարհ ։

Քարոզ ։

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց . ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի ։

Տէր ողորմեա՛ . Տէր ողորմեա՛ , Տէր ողորմեա՛ ։

Աղօթք ։

Տէր Աստուած մեր Յիսուս Քրիստոս՝ մեծ եւ բարձրեալ , անայլայլելի անփոփոխելի և մշտնջենաւոր . որ իջեր 'ի յերկնից և մարմնացար 'ի սրբոյ կուսէն Մարիամայ Հոգւովն Սրբով . և զապականեալն մեղօք զբնութիւն մեր 'ի նախահօրն յանցանաց՝ որով ամենայն կանացի բնութիւն ընկալաւ զպատուհաս անիծից՝ ցաւօք եւ տրտմութեամբ ծնանիլ զզաւակ , սրբեցեր աստուածութեամբ քով ։ Եւ արդ՝ աղաչեմք զքեզ մարդասէր Թագաւոր՝ ստեղծող և նորոգող մեր և բժիշկ հիւանդութեանս մերում , բժշկեա և առողջացո ( զայս անուն ) աղախին քո 'ի հոգեկան և 'ի մարմնական յախտէս յայսմանէ ։ Առաքեա զօգնութիւն քո 'ի սրբութենէ .

քումմէ, և տուր սմա զօրութիւն ծնանիլ զզաւակ, որպէս զի զպտուղ որովայնի իւրոյ մաքրեալ յամենայն արատոյ ծնընդեամբ սուրբ Աւազանին ընծայեսցէ Եկեղեցւոյ քում սրբոյ։ Շնորհեա ծննդականիս այսորիկ համբերութեամբ և առանց վնասու հասանիլ 'ի խնդութիւն, եւ ամենայն տանց հաւատացելոց աճիլ և բազմանալ 'ի փառս տէրութեան քո, և 'ի լրումն աստուածային քո բանից, եթէ աճեցէք և բազմացարուք։ Այո՛ Տէր Աստուած մեր, լուր և այժմ խնդրուածոց անարժան ծառայիս, եւ ամենեցուն որ շուրջ կան աստ, բարեխօսութեամբ անարատ ծնողի քո սուրբ Աստուածածնի, և ամենայն սրբոց քոց։ Զի քեզ միածնի Որդւոյդ, և անսկիզբն և համագոյ Հօր քո, և կենդանարար և ամենասուրբ Հոգւոյդ՝ վայելէ փառք պատիւ եւ երկրպագութիւն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։



# ԿԱՆՈՆ

## ՎԱՍՆ

## ԱՑՍԱՀԱՐԱՑ ԵՒ ԼՈՒՍՆՈՏԻՑ



Որ բնակեալն է յօգնութիւն բարձրելոյն, ընդ հովանեաւ Աստուծոյ յերկինս հան-
գիցէ։

Ասասցէ Տեառն՝ ընդունող իմ ես, ապա-
ւէն իմ Աստուած, և ես յուսամ 'ի նա։

Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին.
և 'ի բանիցն 'ի խռովութենէ։

Ի թիկնամէջս իւր ընկալցի զքեզ. 'ի հո-
վանի թեւոց նորա յուսասցիս։

Որպէս զէն շուրջ եղիցի զքեւ ճշմարտու-
թիւն նորա։

Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերի, և ոչ
'ի նետէ՝ որ թռչի 'ի տուէ։

Ցիրէ որ շրջի 'ի խաւարի, 'ի գայթակղու-
թենէ դիւին 'ի հասարակ աւուր։

Անկցին 'ի կողմանէ քումմէ հազարք, եւ

բեւրք ընդ աջմէ քումմէ, և առ քեզ ինչ
ոչ մերձեսցին ։

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու, և
զհատուցումն մեղաւորաց տեսցես, զի
դու Տէր յոյս իմ ես ։

Զբարձրեալն արարեր քեզ ապաւէն, զի
ոչ հասցեն առ քեզ չարք․ եւ տանջանք
մի մերձեսցին ի յարկս քո ։

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո
՚ի պահել զքեզ յամենայն ճանապարհս քո․

Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ, զի
մի երբէք հարցես զքարի զոտն քո ։

Ի վերայ իժից և քարբից գնասցես դու և
առ ոտն կոխեսցես զառիւծն և զվիշապն ։

Քանզի յիս յուսացաւ, և փրկեցից զնա․
հովանի եղէց նմա, զի ծանեաւ զանուն իմ ։
Կարդասցէ առ իս, և ես լուայց նմա եւ
առ նմա եղէց ՚ի նեղութեան ։

Փրկեցից եւ փառաւոր արարից զնա․ եր-
կայն աւուրբք լցուցից․ եւ ցուցից նմա
զփրկութիւն իմ ։

Ընթերցուածս յեսայեայ մարգարէէ ։

Զիարդ անկաւ յերկնից արուսեակն, որ
ընդ առաւօտն ծագէր․ անկաւ յերկիր․

խորտակեցաւ՝ որ առաքէր առ ամենայն ազգս ։

Դու ասէիր 'ի մտի քում. ելից յերկինս, 'ի վերոյ քան զաստեղս երկնից արկից զաթոռ իմ. նստայց 'ի լերինն բարձու, 'ի վերայ լերանց բարձանց հիւսիսոյ. ելից 'ի վեր քան զամպս, եղէց նմանող բարձրելոյն ։

Արդ ահաւադիկ 'ի դժոխս իջցես եւ 'ի հիմունս երկրի ։

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց Թղթոյն է ընթերցուածս ։

Արդ որովհետեւ մանկունք հաղորդեցին արեան եւ մարմնոյ, եւ ինքն իսկ մերձաւորութեամբ կցորդ եղեւ նոցունց. զի մահուն իւրով խափանեսցէ զայն, որ զիշխանութիւն մահուն ունէր, այսինքն է՝ զսատանայ. Եւ ապրեցուսցէ զայնոսիկ, որ մահուն երկիւղիւ հանապազ կէին վտարանդեալք 'ի ծառայութիւն ։

Ալէլուիա ալէլուիա.

Զթշնամիս իմ հալածականս արարեր, եւ զատելիս իմ սատակեցեր ։

Ալէլուիա Օրթի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Պատասխանի ետ մի ոմն 'ի ժողովրդենէն՝ և ասէ . Վարդապետ , ածի զորդի իմ առ քեզ , զոր ունի այս համր . և ուր հասանէ զարկուցանէ զնա , և փրփրէ . եւ կրճտէ զատամունս իւր և ցամաքի . եւ ասացի ցաշակերտսն քո զի հանցեն , և ոչ կարացին հանել զնա ։

Պատասխանի ետ նոցա եւ ասէ . ո՜վ ազգ անհաւատ , մինչեւ յե՞րբ իցեմ ընդ ձեզ , մինչեւ ցե՞րբ անսայցեմ ձեզ . ածէք զնա առ իս ։

Եւ ածին զնա առ նա . իբրեւ ետես զնա այսն , վաղվաղակի շարժլէաց զնա , և անկեալ յերկիր թաւալէր և փրփրայր ։

Եհարց ցհայր նորա եւ ասէ . քանի՞ ժամանակք են՝ յորմէհետէ այդ եղեւ դմա . եւ նա ասէ . 'ի մանկութենէ . բազում

անգամ 'ի հուր արկանէ և 'ի ջուր՝ զի կորուսցէ զդա . այլ՝ եթէ կարող ինչ ես, օգնեա մեզ, Տէր, գթացեալ 'ի վերայ մեր։

Եւ Յիսուս ասէ ցնա . ասացեր՝ եթէ կարող ես . ամենայն ինչ հնարաւոր է այնմ, որ հաւատայ ։

Եւ վաղվաղակի աղաղակեաց հայր մանկանն և ասէ . Հաւատամ, օգնեա անհաւատութեանս իմում։

Իբրեւ ետես Յիսուս՝ եթէ կուտի ժողովուրդն 'ի վերայ, սաստեաց այսոյն պղծոյ և ասէ . համր՝ և խուլ այս՝ ես տամ քեզ հրաման, ել 'ի դմանէ, եւ այլ եւս՝ մի մտանիցես 'ի դա ։

Եւ աղաղակեաց եւ յոյժ լլկեաց զնա՝ եւ ել . եւ եղեւ պատանեակն իբրեւ զմեռեալ, մինչեւ բազմաց իսկ ասել՝ թէ մեռաւ ։

Եւ Յիսուս կալաւ զձեռանէ նորա յարոյց զնա, և կանգնեցաւ ։

Եւ իբրեւ եմուտ նա 'ի տուն, աշակերտաքն առանձինն հարցին զնա . մեք ընդէր ոչ կարացաք հանել զնա ։

Եւ ասէ ցնոսա . այդ ազգ՝ ոչ իւիք ելանէ, եթէ ոչ պահօք և աղօթիւք ։

Եւ տնէ զԱւետարանն 'ի վերայ գլխոյ այսահարին, և ասէ.

*Սաստեսցէ քեզ Տէր մեր Յիսուս Քրիստոս՝ պիղծ սատանայ, որ եկն յաշխարհ և շրջեցաւ ընդ մարդկան, զի զքոյդ խափանեսցէ զբռնութիւն եւ զմարդիկ ապրեցուսցէ։ Որ 'ի վերայ փայտին զընդդիմակաց զօրութիւնսն խորտակեաց արեգականն խաւարելով, երկիր շարժելով, գերեզմանացն բանալով, մարմինք սրբոցն յառնելով։ Որ ելոյծ մահուամբ զմահ, եւ խափանեաց որ զունելութիւն մահուն ունէր, այսինքն է զքեզ սատանայ։*

*Երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի՝ որ եցոյց զՓայտն կենաց, և կարգեաց զՔերոբէսն և զՍերոբէսն բոցեղէն սրով շուրջանակի պահել զնա. պապանձեաց ել եւ գնա 'ի սմանէ։ Երդմնեցուցանեմ զքեզ 'ի Տէր մեր Յիսուս Քրիստոս՝ որ գնայր որպէս ընդ ցամաք 'ի վերայ ծովուն, եւ սաստէր պտուտից հողմոյն. որոյ հայեցուածն ցամաքեցուցանէ զանդունդս, եւ սպառնալիք նորա մաշեն զլերինս։ Նոյն ինքն եւ այժմ հրամայէ*

անգամ 'ի հուր արկանէ և 'ի ջուր՝ զի կորուսցէ զդա . արդ՝ եթէ կարող ինչ ես, օգնեա մեզ, Տէր, գթացեալ 'ի վերայ մեր։

Եւ Յիսուս ասէ ցնա . ասացեր՝ եթէ կարող ես . ամենայն ինչ հնարաւոր է այնմ, որ հաւատայ։

Եւ վաղվաղակի աղաղակեաց հայր մանկանն և ասէ . Հաւատամ, օգնեա անհաւատութեանս իմում։

Իբրեւ ետես Յիսուս՝ եթէ կուտի ժողովուրդն 'ի վերայ, սաստեաց այսոյն պղծոյ և ասէ . համրդ՝ և խուլ այս՝ ես տամ քեզ հրաման, ել 'ի դմանէ, եւ այլ եւս՝ մի մտանիցես 'ի դա։

Եւ աղաղակեաց եւ յոյժ լլկեաց զնա՝ եւ ել . եւ եղեւ պատանեակն իբրեւ զմեռեալ, մինչեւ բազմաց իսկ ասել՝ թէ մեռաւ։

Եւ Յիսուս կալաւ զձեռանէ նորա յարոյց զնա, և կանգնեցաւ։

Եւ իբրեւ եմուտ նա 'ի տուն, աշակերտաքն առանձինն հարցին ցնա . մեք ընդէ՞ր ոչ կարացաք հանել զնա։

Եւ ասէ ցնոսա . այդ ազգ՝ ոչ իւիք ելանէ, եթէ ոչ պահօք և աղօթիւք։

Եւ դնէ զԱւետարանն 'ի վերայ գլխոյ այսահարին, և ասէ.

Սաստեսցէ քեզ Տէր մեր Յիսուս Քրիստոս՝ պիղծ սատանայ, որ եկն յաշխարհ և շրջեցաւ ընդ մարդկան, զի զքոյդ խափանեսցէ զբռնութիւն եւ զմարդիկ ապրեցուսցէ։ Որ 'ի վերայ փայտին զընդդիմակաց զօրութիւնսն խորտակեաց արեգականն խաւարելով, երկիր շարժելով, գերեզմանացն բանալով, մարմինք սրբոցն յառնելով։ Որ ելոյծ մահուամբ զմահ, եւ խափանեաց որ զօրութիւն մահուն ունէր, այսինքն է զքեզ սատանայ։

Երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի՝ որ եցոյց զՓայտն կենաց, և կարգեաց զՔերովբէսն և զՍերովբէսն բոցեղէն սրով շուրջանակի պահել զնա. պապանձեաց ել եւ գնա 'ի սմանէ։ Երդմնեցուցանեմ զքեզ 'ի Տէր մեր Յիսուս Քրիստոս՝ որ գնայր որպէս ընդ ցամաք 'ի վերայ ծովուն, եւ սաստէր պտուտից հողմոյն. որոյ հայեցուածն ցամաքեցուցանէ զանդունդս, եւ սպառնալիք նորա մաշեն զլերինս։ Նոյն ինքն եւ այժմ հրամայէ

քեզ 'ի ձեռն մեր, երկիր. Ել եւ գնա՛ 'ի ստեղծուածոյս այսմիկ. և մի դառնայցես և մի թագիցես 'ի սմա. և մի եւս պատահեսցես ումեք 'ի սոցանէ. կամ ազդիցես, կամ վարկցես, մի 'ի գիշերի, մի յաւուր, մի 'ի ժամու կամ 'ի տարաժամու. այլ երթիջիր 'ի քոյին խորխորատն մինչեւ 'ի պատրաստեալ տանջանսն քեզ մեծի աւուրըն դատաստանին:

Երկիր յԱստուծոյ, որ նստի յաթոռ Քերովբէից եւ հայի յանդունդս. յորմէ դողան Հրեշտակք. Հրեշտակապետք. Աթոռք, Տէրութիւնք. Իշխանութիւնք. Պետութիւնք. բազմաչեայ Քերովբէքն. յորմէ դողան երկինք և երկիր, ծով և ամենայն որ 'ի նոսա. Ել եւ գնա՛ 'ի ծառայէս Քրիստոսի Աստուծոյ: Երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի որ գնայ 'ի վերայ թեւոց հողմոց. ա՛ առաք զհրեշտակս իւր յոգիս, եւ զպաշտօնեայս իւր 'ի բոց հրոյ. Ել և գնա՛ 'ի ստեղծուածոյս Աստուծոյ յայսմանէ ամենայն հրեշտակօք քո: Զի օրհնեալ և փառաւորեալ է անուն Ամենասուրբ Երրորդութեան Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն. այժմ և:

Աստուած՝ որ մեծ ես եւ ահաւոր և փառաւորեալ յամենայնի գործովք և զօրութեամբ, անհասանելի և անքննելի գոլով. որ յառաջ պատրաստեաց քեզ սատանայ զյաւիտենական տանջանացն զդատաստան. այժմ 'ի ձեռն մեր անպիտան ծառայից իւրոց հրամայեաց քեզ և ամենայն գործակցաց քոց ամենայն զօրութեամբ քով 'ի բաց կալ 'ի ծառայէս Յիսուսի Քրիստոսի, որ զամենայն իշխանութիւն ունի յերկինս և յերկրի. որ ասաց համեր եւ խուլ գիւին, ե՛լ 'ի մարդոյդ և այլ մի՛ մըտաներ 'ի դմա: Ծանի՛ր զքո պիղծ և ունայն զօրութիւնդ, որ եւ խոզիցն իշխանութիւն ոչ ունէիր: Յիշեա՛ որ սաստեացն քեզ, և քոյովք խնդրուածովք յերամակ խոզիցն հրամայեաց քեզ մտանել.

Երկի՛ր յԱստուծոյ, որոյ հրամանաւ երկիր հաստատեցաւ 'ի վերայ ջրոց. որ շինեաց զերկիր եւ կարգեաց. որ հաստատեաց զլերինս կշռով, և զառապարս կըշռորդովք. եւ եդ զաւազ ծովու 'ի սահմանս, և 'ի ջուրս սաստիկս զշաւիղս իւր պատրաստեաց: Որ հայի 'ի լերինս և ծըխեցին. որ արկանէ զլոյս որպէս զօթոց-

որ ձգեալ զերկինս որպէս մազաղաթ . որ յարկեալ 'ի վերայ ջրոց զվերնայարկս նորա ։ Որ հիմնեցոյց զերկիր 'ի վերայ հաստատութեան , զի մի՛ շարժեսցի յաւիտեան ։ Որ կոչեաց զջուրս ծովու , եւ եհեղ զնա 'ի վերայ ամենայն երկրի . Ե՛լ և գնա՛ 'ի սմանէ ։ Երդմնեցուցանեմ ըզքեզ ամենաչար , 'ի փրկական չարչարանսն Քրիստոսի , և 'ի պատուական նորա Մարմին և յԱրիւն , և 'ի գալուստն նորա ահաւոր . զի գայ և ոչ յապաղէ 'ի դատել զերկիր . եւ զքեզ եւ զգործակիցսն քո տանջեսցէ 'ի հուրն յաւիտենից . ուր որդն անքուն է և հուրն ոչ շիջանի ։ Զի զօրութիւն Յիսուսի Քրիստոսի հանդերձ Հարբ և ամենասուրբ Հոգւովն օրհնեալ է այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։ Տէր Սաբաւովթ Աստուած Իսրայէլի , որ փարատես ցաւս եւ զհիւանդութիւնս , եւ զամենայն ախտս բժշկես . Նայեա 'ի վերայ ծառայիս քո , եւ 'ի բաց մերժեա 'ի սմանէ զամենայն ներգործութիւն սատանայի , սաստեա այսոց պղծոց և հալածեա զնոսա . եւ վաղվաղակի քոյին ազդմամբդ փրկեա զծառայս քո . և խորտակեա զսա-

տանայ ընդ ոտիւք սորա, եւ տուր սմա յաղթութիւն ընդդէմ նորա հակառակութեանց, և այսոց նորա պղծոց։ Որպէս զի առ 'ի քէն օգնականութիւն առընկալեալ արժանաւորեսցի անմահ և երկնաւոր քոց պարգևացդ, փառաւորելով զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւիտ։

Աղօթք։

Որ եսդ Տէր Տէր, որ արարեր զմարդն ըստ պատկերի քում եւ ըստ նմանութեան, եւ ետուր նմա իշխանութիւն մշտնջենաւոր կենաց. եւ նորա անկեալ ընդ մեղօք բանսարկուին պատրանօք, և դու ոչ անտես արարեր, այլ տնօրինեցեր մարդանալով Քրիստոսի քո զփրկութիւն աշխարհի։ Դու ինքնին մարդասէր Տէր, զուգակցեա կենաց սորա հրեշտակ լուսաւոր, փրկելով զսա յամենայն խորհրդոց թշնամւոյն, 'ի դիւէ տարաժամէ, յերեւելի եւ յաներեւոյթ պատահարաց չարին։

Եւ տէառնագրէ զլանջսն, զսիրտն, զճերմանն տեղով. յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. և ասէ.

Հալածեա 'ի սմանէ զամենայն շունչ չար,

*որ խոստեցեալ է և որջացեալ 'ի վերա սո-րա, զհոգի մոլորութեան, զհոգի չարու-թեան, զհոգի դառնութեան, զհոգի ստութեան և ամենայն անմաքրութեան, որ ներգործէ ըստ խորամանկութեան թըշ-նամւոյն խաբէութեան։ Շնորհօք և գթու-թեամբ միածնի Որդւոյ քո, ընդ որում օրհնեալ ես Հայր ամենակալ համդերձ բարերար և կենդանարար Սուրբ Հոգւովդ, այժմ եւ միշտ և։*

*Քարոզ։*

*Արթուն միտօք և անզգաստ խորհրդով կաց-ցուք միաբան յաղօթս առաջի Տեառն մե-րոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Հաւա-տով խնդրեսցուք 'ի նմանէ զհրեշտակ խա-ղաղութեան պահապան անձանց մերոց, որ եկեալ բանակեսցէ շուրջ զմեօք, և ա-ներկիւղ պահեսցէ զմեզ յամենայն հրե-ղէն նետից սատանայի, որ թռչի 'ի տուէ, յիրաց խաւարային գնացից, 'ի դայթակ-ղութենէ դիւին 'ի հասարակ աւուր։ Յոր-մէ զգուշութեամբ պահելով աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց, շնոր-հեսցէ մեզ մարդասէրն Աստուած կեալ*

առաքինութեամբ 'ի փրկութիւն անձանց մերոց, 'ի պատիւ և 'ի փառս կենդանացուցչին անուան իւրոյ։ Ցայս հաղորդութեան ընկալցուք 'ի յայտնութեան միածնի Որդւոյն Աստուծոյ, կերպարանակից առնել զմարմին խոնարհութեան մերոյ ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոց. վասն զի զայս խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած Յիսուս Քրիստոս Տէր մեր. կեցուսցէ եւ ողորմեսցի։

Զժամս եւ զառաջիկայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով 'ի Տեառնէ
խնդրեսցուք։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան։
Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց։
Զսրբոյ խաչին մեծ և կարող զօրութիւն։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեա մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Աղօթք։

Զգեցո մեզ Տէր Աստուած մեր զէն արդարութեան զօրաւոր եւ յաղթող լինել ընդդէմ սատանայական պատերազմաց և

զամենայն հրեղէն նետս նորա շիջուցանելով անկասկած լիցուք յիրաց խաւարային գնացից, 'ի գայթակղութենէ դիւին 'ի հասարակ աւուր։ Եւ զգաստացեալք վայելչական տուրնջեամբս առաքինութեամբ կացցուք 'ի փրկութիւն անձանց մերոց, 'ի պատիւ և 'ի փառս սրբոյ Երրորդութեանդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Երկնաւոր խաղաղութեամբ քով պարըսպեալ պահեա զանձինս մեր Տէր զօրութեանց, վասն զի դու ես Աստուած խաղաղութեան, և բաց 'ի քէն զայլ ոք ոչ գիտեմք, և զանուն քո ամենազօր կարդամք յօգնականութիւն անձանց մերոց։ Նայեաց յերկրպագութիւնս մեր, և տուր մեզ առնել զարդարութիւն ճշմարտութեան։ Եւ գոհութեամբ փառաւորեսցուք, զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Տէր, մի՛ յիշեր զմեղս մեր զառաջինս. վաղվաղեսցէ առ մեզ ողորմութիւն քո, զի աղքատացաք յոյժ։

Օգնեա մեզ Աստուած փրկիչ մեր, վասն փառաց անուան քո։

Տէր, փրկեա զմեզ և քաւեա զմեղս մեր վասն անուան քո։

Քարոզ։

Վասն հիւանդաց եւ ամենայն մշտացելոց՝ աղաչեսցուք զՓրկիչն մեր Քրիստոս, զի ողորմեսցի ըստ մեծի ողորմութեան իւրում. և բժշկեսցէ զախտս և զհիւանդութիւնս հոգւոց և մարմնոց ծառայից իւրոց. եւ կատարեալ առողջութեամբ հաստատեսցէ զամենեսեան 'ի մշտնջենաւոր և յանախտ կեանս։ Որ առաքեցաւ 'ի Հօրէ 'ի բժշկութիւն ազգի մարդկան՝ միածին Որդին Աստուծոյ. Տէր մեր և Փրկիչ Յիսուս Քրիստոս. կեցուսցէ և ողորմեսցի։

Աղօթք։

Փարատեա զցաւս եւ բժշկեա զհիւանդութիւնս 'ի ժողովրդենէ քումմէ Տէր Աստուած մեր. և շնոր։ (Տե. յերե. 174).

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն։ Հայր մեր որ յերկինս։



## ՅԱՂՕԹԱՄԱՏՈՅՑ ԳՐՈՑ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

ԲԱՆ ՂԱ.

## Ի ԽՈՐՈՑ ՍՐՏԻՑ ԽՕՍՔ ԸՆԴ ԱՍՏՈՒԾՈՅ

Ա. Տէր Տէր *գթութեանց եւ Աստուած ողորմութեանց, անուն մեծութեան, ձայն ահաւորութեան, կոչումն սաստկութեան, լուր անհասութեան, բարբառ դողութեան, հնչումն հիացման, յուսադրութիւն բարերարութեան, ամենողորմ քաղցրութեան. յորմէ երկուցեալ սասանին ամենայն բնութիւնք եղելոց ՚ի քո սպառնալեաց ահիդ պակուցման, սաւառնին Սերովբէք, ամփոփին Քերովբէք, պարուրին պարք լուսակերպից, երկնչին հիացմամբ բոլոր Պետութիւնք վերնոցն. նոյնք ցնծան դողութեամբ մեծաւ ՚ի մի նուակատիս բերկրութեան. զարհուրին դեւք, ընկրկին չարութեանցն գունդք, պակասին խաւարասիրացն հոգիք, անդնդոց մատնին հրեշտակք ստուերին: կապին նշանաւ խաչին յարձակմունք դիմամարտին, փակին ՚ի սառոյին բանտի քինաւոր ամաղեկացիքն, անխզելի հանգուցիւք պաշարին*

խումբք հակառակորդին, արգելլին անզերծ զընդդանաւ՝ մահազքինացն կաճառք, պնդին 'ի մետաղս ահեղ հրամանիդ այսականացն գումարք, պապանձին կարկեալ ընդդիմաքանիցն դաստակցութիւնք. պարաւանդին հիւծմամբ կորստեան աներեւութիցըն ժողովք. անլոյծ շղթայիւք նեղին տառաքելութիւնք դերաքրիստոսին:

Բ. Ահա կորկառեմ մտաւմբք ձեռինս զտեառնագրութիւն նշանիդ 'ի ժամ գիշերիս, որ ոչ մթանաս խաւարաւ անգիտութեան, ամենեւին տեսականութիւն, քան թէ 'ի լոյս անմատոյց հանգուցեալ բնակես: Ընկալ զաղաչողս վտանգաւոր գոհաբան ընդ պահպանութեամբ թեւոց հզօրիդ, փրկեա 'ի ցնորից եկամուտ պըղտորութեանց. սուրբ արա զզգայարան հայելեաց սրտիս նկատմանց. ամրացո փայտիւդ կենաց 'ի տխրական անրջոց, արեամբ քո սրսկեա զշրջարկութիւնս կայից, ընհետս ելումտից կաթուածով կենարար կողիդ գծագրեա, երգոցն պահպանարան քառակերպիդ ձեւակերպութիւն եղիցի. հանդէպ տեսութեան աչացս ամբարձման փրկականդ քո կրից խորհուրդ տացի.

ընդ բարաւոր յարկիս չարչարանաց քոց գործի հաստիցի, զծառոյդ օրհնութեան հաւատք յուսոյ իմոյ կախեսցի։ Արդ եւ, Տէր, սովաւ զսատակիչն հոգւոց, մտցէ անխափան պաշտպանն լուսոյ, եւ ընդ սաստիկ ծանրութեան ցաւոցս եւ զբեռն պարտեացս թեթեւացո, զոր 'ի լռարանի մըտացս ամփոփման մահճացս անկողնի՝ ուշաբերեալ զյուսահատութեանցն դառն պաղոցն՝ խոստովանիմ ամենագիտիդ զանհամար մասունս գործոց չարաչար անօրէնութեանցս։

Գ. Հանգո զվաստակեալս 'ի բազմածուփս աշխատութենէ, բարձ զտագնապ տարակուսանաց ոգւոյս կործանման, զդառնութիւնն ընդ վշտացն. զհեծութիւնն ընդ կարեացն, զանձկութիւնն ընդ թշուառութեանցն, զհառաչմունսն ընդ խորտակմանցն, զբեկութիւնսն ընդ տապշութեանցն, զթմբրութիւնսն ընդ շրտմանցն, զարբեցութիւնն ընդ յիմարութեանցն, զթերամտութիւնն ընդ խելագարութեանցն, զսառումն սիրոյն եւ զհրային ջերմութիւն աղուական ախտին։ Օժանդակ լեր ակարութեան բազմատխուրս տարտամու-

թեան, բարեգործ աջովդ շնորհի, ձեռամբդ նորոգողի, մատամբդ կենսաբաշխի, փառօքդ մշտափայլի. յարակայութեամբդ անեղծի. երեսօքդ զուարթականի, իսկութեամբ էիդ պաշտելի, բարձրութեամբդ երկրպագելի։ Հատո զչարաչար հեծութիւն կորստականս խեղդման, զնոր գիւտ չարին, զհին խարդախութիւն բանսարկուին, զոտար ազդեցմունս 'ի մահ կըրթողին, զանյարմարական երեւոյթս հանապազորդեան եղեռնագործին, զառաչս հընարադրութիւն դժնդակ դիւին, զողոքական բոցաշնչութիւն ձդող կախարդին։ Պահեա 'ի տեղւոջ հանգստեան մեռօրինակ այսր դադարման յաներեւոյթ մտածութեանց, 'ի մանաւոր սխալութեանց, 'ի մեծագոյն գայթակղութեանց, 'ի փոքրագոյն ոտնառութեանց, 'ի խաբեբայ չար ձանձրութեանց։ Հեռացո զանհանդէպ մտածութիւնն 'ի զգայութեանց ծառայիս յանցաւորի, զկիրս բասրելիս, զվարս թըշնամանելիս, զդիպուածս պատկառելիս, ըդհետս վրիպելիս, զպատիրս ձաղելիս, զխորհուրդս անգոսնելիս, զաւելաբանութիւնս նշկահելիս։ Անոխակալդ հոգւով եւ անշաղախ

մխիթարով զապաւինեալս ՚ի քեզ հանդերձեա, ՚ի շնչմանէ հողմոց, ՚ի զարկմանէ բռնութեանց, ՚ի բախմանէ փոթորկաց, ՚ի յատամանէ մրրկաց, ՚ի յարձակմանէ գազանաց։ Ի կափման աչաց հայեցուած սրտիս մի՛ ստուարասցի, այլ զուարթասցի պայծառասցի վայելչասցի՝ ընդ քեզ փայլեսցի, Տէր Յիսուս Քրիստոս, լուսաւոր վառմամբ անշիջանելեաւ։ Բաննիւ քո սրբեա զպատսպարանս բազմականիս ՚ի խորամանկութեանց, ՚ի զբաղմանց, ՚ի քո ատելի յիշատակաց, ՚ի վերնամարտ մտածմանց, ՚ի քրէական մորոսութեանց, ՚ի տիրանենգ անշնորհութեանց, յաստուածընդդէմ հերձուածութեանց։ Գնդիւք վերնայնոցդ վերակացու ինձ լիցիս։ Պետութեամբք, Իշխանութեամբք զօրաւորօքն անյաղթականաց մաքուր մատակարարաց սուրբ Աստուածութեանդ, Առաքեալքն աւետեաց Աւետարանաւն, Մարգարէքն կատարանօքն, Մաղթանօք երջանկացն ՚ի կատարածի աւուրն ընծայեալ։ Որովք նիրհեսցից երկիւղիւ ըստ քեզ տրտմութեամբ, և զարթեայց շնորհօք քո կրկին ուրախութեամբ. Եթէ վհատութեամբ ննջեցից, յարեայց

դարձեալ հոգեւորական բերկրութեամբ. եթէ ընկողմնեցայց մեղանօք, կանգնեցայց վերստին զատեալ 'ի խղճէ անախտ անբծութեամբ ։

Դ. Լուր խնդրուածոց ամենահառաչ ձայնիս հեծութեան, միայն բազմագութ, բարեխօսութեամբ Սրբոյ Աստուածածնիդ և ամենայն արդարոց և Նահատակաց ընտրելոց ։ Եւ քեզ փառք յամենեցունց իմովս գոչմամբ վերառաքեցեալ սրբովք զուարթնոցն անմահականաց դասուց. 'ի գովեստ Հօր քոյ Աստուծոյ մերոյ և Հոգւոյդ Սրբոյ բնաւից հաստողի եւ նորոգողի. յաւիտեանս յաւիտենից. ամէն ։



# ԿԱՆՈՆ

## ՍԿԻՀ ԵՒ ՄԱՂՁՄԱՆ ՕՐՀՆԵԼՈՅ

Լուանան նախ զիւղն, և զաղն սուրբ խաչիւ, և ասեն.

Ալէլուիա ալէլուիա.

Դատ արա ինձ Տէր, զի ես յամբծութեան իմում գնացի. ի Տէր յուսացայ՝ զի մի՛ եղեց հիւանդ։
Փորձեա զիս Տէր, և քննեա զիս. փորձեա զերիկամունս իմ և զսիրտ իմ։
Ողորմութիւն քո Տէր, առաջի աչաց իմոց. և հաճոյ եղէց ճշմարտութեան քում։
Ոչ նստայց ես յատեան նանրաց, և ընդ անօրէնս ես ոչ մտից։
Ատեցի ես զժողովս չարաց, և ընդ ամբարիշտս ես ոչ նստայց։
Լուացից սրբութեամբ զձեռս իմ, և շուրջ եղէց զսեղանովն քով Տէր։
Լսել ինձ զձայն օրհնութեան քո և պատմել զամենայն սքանչելիս քո։

Տէր, սիրեցի զվայելչութիւն տան քո, և զտեղի յարկի փառաց քոց։
Մի կորուսաներ ընդ ամպարիշտս զանձն իմ, և մի ընդ արս արիւնահեղս զկեանս իմ։
Որոց ձեռք իւրեանց յանօրէնութեան են. և աջ նոցա լի է կաշառօք։
Ես յամբծութեան իմում գնացի. փրկեա զիս Տէր և ողորմեա ինձ։
Ոտն իմ կացցէ յուղղութեան. յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ։

Քարոզ։

Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ ՚ի Տեառնէ՝ զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ ՚ի վերայ մեր. Տէրն Ամենակալ կեցուսցէ և ողորմեսցի։
Կեցո Տէր և ողորմեա։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք, ընկալ կե.
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ.

Եւ ապա [illegible] [illegible], և [illegible] [illegible]։

Ալէլուիա ալէլուիա.
Տէր հովուեսցէ զիս և ինձ ինչ ոչ պակասեսցի։

Ի վայրի դալարւոջ՝ անդ բնակեցոյց զիս.
և առ ջուրս հանգստեան սնոյց զիս ։
Դարձոյց զանձն իմ առ իս, եւ առաջնոր-
դեաց ինձ 'ի ճանապարհս արդարութեան
վասն անուան իւրոյ,
Թէպէտ եւ գնացից ես 'ի մէջ ստուերաց
մահու. ոչ երկեայց 'ի չարէ, զի դու Տէր
ընդ իս ես ։
Ցուպ քո և գաւազան՝ նոքա մխիթարես-
ցեն զիս ։
Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան՝
ակն յանդիման նեղչաց իմոց ։
Օծեր իւղով զգլուխ իմ. բաժակ քո որպէս
անապակ արբեցոյց զիս ։
Ողորմութիւն քո Տէր զհետ իմ եկեսցէ
զամենայն աւուրս կենաց իմոց. բնակել
ինձ 'ի տան Տեառն ընդ երկայն աւուրս ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք, ընկալ կե ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ ։

Աղօթք ։

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր, որ ետուր
մեզ զնիւթս զայս առնել անօծ սրբու-
թեան քում ըստ հաճոյից քոց, առ 'ի քէն
տուելոյ քո մտաւորութեան Արդ՝ ընկալ

զսա 'ի ձեռաց մերոց. եւ սրբեա սրբու-
թեամբ քով, զի արժանի լիցի ընդունիլ
'ի սպասաւորութիւն եկեղեցւոյ քում սըր-
բոյ: Որով եւ բերկրեսցին մատուցողք
սորա, ակն ունելով 'ի քէն բարեաց հա-
տուցման: Եւ զմեզ արժանի արա սրբու-
թեամբ եւ արդարութեամբ կեալ 'ի քա-
հանայութեանս կարգի, պաշտել զքեզ
'ի սուրբ եկեղեցւոջ քում՝ զամենայն ա-
ւուրս կենաց մերոց, եւ ընդունիլ զխոս-
տացեալ բարիսն որ 'ի քէն: Եւ քեզ ընդ
Հօր և ընդ Սուրբ Հոգւոյդ վայելէ փառք
իշխանութիւն և պատիւ. այժմ՝ և միշտ և
յաւիտեանս յաւիտենից, ամէն:



# ԿԱՆՈՆ

## ԵԿԵՂԵՑԻՈՅ ՁԳԵՍՏ ՕՐՀՆԵԼՈՅ

Ալէլուիա ալէլուիա.

ՅԻՇԵԱ Տէր, զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա:

Որպէս երդուաւ Տեառն, եւ ուխտս եդ Աստուծոյ Յակովբայ:

Թէ ոչ մտից 'ի յարկս տան իմոյ, թէ ելից յանկողինս մահճաց իմոց.

Թէ տաց քուն աչաց իմոց, կամ նինջ արտեւանաց իմոց, կամ հանգիստ իրանաց իմոց. մինչեւ գտից զտեղի յարկի Տեառն Աստուծոյ Յակովբայ:

Ահա լուաք զնմանէ յԵփրաթայ, և գտաք զնա 'ի դաշտս մայրեաց:

Մտցուք 'ի յարկս Նորա, երկիրպագցուք 'ի տեղւոջ՝ ուր կացեալ են ոտք Նորա:

Արի Տէր, 'ի հանգիստ քո դու և տապանակ կտակի սրբութեան քո:

Քահանայք քո զգեցցին զարդարութիւն. և սուրբք քո ցնծալով ցնծասցեն.

Վասն Դաւթի սիրելոյ քո մի դարձուցա-
նէր զերեսս քո յօծելոյ քումմէ ։
Երդուաւ Տէր Դաւթի ճշմարտութեամբ՝
և ոչ ստեաց նմա . 'ի պտղոյ որովայնի նորա
նստուցանել յաթոռ նորա ։
Թէ պահեսցեն որդիք քո զօրէնս իմ, եւ
զվկայութիւնս իմ զոր ուսուցից նոցա ։
Որդիք նոցա նստցին յաւիտեանս յաւիտե-
նից յաթոռ քո ։
Հաճեցաւ Տէր ընդ Սիոն , եւ ընտրեաց
բնակիլ 'ի նմա . ասէ՝ այս է հանգիստ իմ
յաւիտեանս յաւիտենից . 'ի սմա բնակե-
ցայց՝ զի հաճեցայ ընդ սա ։
Զայրիս սորա օրհնելով օրհնեցից , և զաղ-
քատս սորա լցուցից հացիւ ։
Երիցանց սորա զգեցուցից զփրկութիւն ,
և սուրբք սորա ցնծալով ցնծասցեն ։
Անդ ծագեցից զեղջիւր 'ի Դաւիթ . պատ-
րաստ արարից զճրագ օծելոյ իմոյ ։
Թշնամեաց նորա զգեցուցից զամօթ . այլ
'ի վերայ նորա ծաղկեսցի սրբութիւն իմ ։

Քարոզ ։

Աղաչեսցուք զմարդասէրն Աստուած , զի
ընկալցի զսպասս պաշտաման մերոյ 'ի հաճոյս բարերար
կամաց իւրոց 'ի պայծառութիւն տան իւ-

րոյ 'ի գովեստ փառաց անուան իւրոյ. եւ կեցուսցէ զարարածս իւր. ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա, Տէր ողորմեա:

Աղօթք:

Տէր Աստուած հզօր բարձրեալ եւ ահաւոր, որ զգեցուցեր զեկեղեցի քո լուսով փառաց քոց, եւ եղեր մեզ զգեստ անապականութեան: Ընկալ 'ի մէնջ զզգեստս զայս. որպէս 'ի ձեռն Մովսիսի զնիւթ խորանին վկայութեան, եւ իբրեւ զհանդերձս մանկանցն Եբրայեցւոց 'ի պատիւ քեզ տարածելոց: Օրհնեա և սրբեա զսա. որպէս ընկալար եւ օրհնեցեր զկտաւսն Յովսեփայ, զոր մատոյց 'ի պատանս աստուածային մարմնոյդ. զի եւ սա արժանի լիցի եկեղեցւոյ քում սրբոյ: Եւ որպէս զի ցնծասցեն մատուցողք սորա, տուր նոցա Տէր, փոխարէն. հատո նոցա աստ և 'ի հանդերձեալ երկրիդ զողորմութիւն քո մեծ եւ զառատ: Եւ քեզ ընդ Հօր եւ Հոգւոյդ Սրբոյ վայելէ փառք իշխա:

Հայր մեր որ յերկինս:

# ԱՂՕԹ·Ք

## ԽՈՒՆԿ ՕՐՀՆԵԼՈՑ

---

ԱՄԵՆԱԿԱԼ Տէր Աստուած մեր, որ ընկալար զխունկն 'ի ձեռաց Ահարոնի եւ որդւոց նորա. եւ ոչ հաճեցար ընդ հուրն օտար, եւ ընդ խունկն օտարոտի. վասն որոյ եւ մեք սարսիմք եւ դողամք, զի մի՛ զնոյն կրեսցուք պատիժ: Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր բարերար, ընկալ զսա 'ի ձեռաց մերոց, որպէս 'ի ձեռաց Ահարոնի ընկալար, եւ Զաքարիայի. եւ պարգեւեա մեզ զշնորհս Հոգւոյդ Սրբոյ. Մերժեա 'ի մէնջ ամենայն ահաւորութիւն խաւարասէր թշնամւոյն. եւ տուր մեզ առնուլ 'ի միտ զահ եւ զերկիւղ Աստուածութեանդ: Շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի որում վայելէ փառք և իշխանութիւն այժմ և միշտ և. յաւի:

# ԿԱՆՈՆ.

## ՆԱԽ ԳԻՐՔ ՕՐՀՆԵԼՈՑ



Սարկաւագն ունելով ’ի վերայ բողկայն ասէ.

ՆԱՅԵՑԱՐՈՒՔ ժողովուրդք յօրէնս իմ. խոնարհեցուցէք զունկն ձեր ’ի բանս բերանոյ իմոյ։

Բացից առակաւ զբերան իմ, և խօսեցայց զառակս ’ի սկզբանէ։

Որպէս լուաք՝ և ծանեաք զայս, և հարքն մեր պատմեցին մեզ։

Ոչ ինչ ծածկեցաւ յորդւոց նոցա յազգ այլ, պատմել զօրհնութիւնս Տեառն, ըզզօրութիւն և զսքանչելիս իւր զոր արար։

Հաստատեաց զվկայութիւն իւր առ Յակովբ, և օրէնս եդ ’ի վերայ Իսրայէլի։

Որ ինչ միանգամ պատուիրեաց հարցն մերոց, ցուցանել զայս որդւոց իւրեանց. զի ծանիցեն յազգ այլ։

Որդիք որք ծնանիցին, յարիցեն և պատմեսցեն զայս որդւոց իւրեանց. զի դիցեն

առ Աստուած զյոյս իւրեանց , եւ մի մոռասցին զգործս Աստուծոյ ։

Զպատուիրանս նորա խնդրելով խնդրեսցեն . և մի եղիցին որպէս և հարքն իւրեանց ։

Ազգ չար և դառնացող . ազգ որ ոչ ուղղեաց զսիրտ իւր , և ոչ հաստատեաց առ Աստուած զհոգի իւր .

Որդիք Եփրեմի լիանձիգք և պնդաձիգք . յաւուր պատերազմի կապարճս դարձուցին ։

Ոչ կացին նոքա յուխտի Տեառն . եւ ըստ իրաւանց նորա ոչ կամեցան գնալ ։

Մոռացան զերախտիս նորա եւ զսքանչելիսն՝ զոր եցոյց նոցա ։

Առաջի հարց նոցա զոր արար զսքանչելիս իւր յերկրին Եգիպտացւոց եւ 'ի դաշտին Տայանու ։

Եհերձ զծովն՝ և անցոյց զնոսա և կացոյց զջուրսն որպէս 'ի տիկս ։

Առաջնորդեաց նոցա ամպով 'ի տուէ , եւ զամենայն գիշեր 'ի լոյս հրոյ ։

Եհերձ զվէմս յանապատին , և ետ ըմպել նոցա որպէս 'ի խորոց մեծէ ։

Եհան զջուրսն 'ի վիմէն , և հոսեաց որպէս զգետս զջուրսն ։

Սակայն յաւելին ՚ի մեղանչել. եւ եւս
բարկացուցին զբարձրեալն յանջրդի ։
փորձեցին զԱստուած ՚ի սիրտս իւրեանց.
՚ի խնդրել զկերակուր անձանց իւրեանց ։
Տրտնջեցին զԱստուծոյ և ասացին . միթէ
կարո՞ղ իցէ Աստուած պատրաստել սե-
ղան յանապատի ։
Քանզի հարկանէր զվէմն՝ և հոսէին ջուրք,
և վտակք խաղային ՚ի նմանէ ։
Աղէ հա՞ց եւս կարասցէ տալ նա մեզ.
կամ պատրաստեսցէ սեղան ժողովրդեան
իւրոյ ։
Վասն այսորիկ լուաւ զայս Տէր եւ յա-
պաղեաց . հուր բորբոքեցաւ ՚ի Յակոբ.
և բարկութիւն ել ՚ի վերայ Իսրայելի ։
Զի ոչ հաւատացին յԱստուած . եւ ոչ
յուսացան ՚ի փրկութիւն նորա ։
Հրաման ետ ամպոց ՚ի վերուստ, եւ զդը-
րունս երկնից եբաց, եւ տեղեաց ՚ի նոսա
զմանանայ ՚ի կերակուր ։
Զհաց երկնից ետ նոցա, զհաց հրեշտա-
կաց կերան մարդիկ . եւ իջոյց ՚ի նոսա
զկերակուր ՚ի լիութիւն ։
Եհան զհողմն հարաւոյ, եւ էած զօրու-
թեամբ իւրով զհիւսիսի ։

Տեղեաց 'ի նոսա միս որպէս զհող. որպէս
զաւազ ծովու զթռչունս թեւաւորս։

Ջարկ 'ի մէջ բանակի նոցա, եւ շուրջ
զվրանօք նոցա։

Կերան եւ յագեցան յոյժ եւ զցանկու-
թիւն նոցա ետ նոցա. եւ ոչինչ կարօտ
եղեն 'ի ցանկութենէ իւրեանց։

Մինչդեռ կերակուրք 'ի բերանս իւրեանց
էին, բարկութիւն յԱստուծոյ ել 'ի վե-
րայ նոցա։

Սպան զբազումս 'ի նոցանէ, եւ զընտիր
ընտիրս Իսրայէլի սատակեաց։

Յայսմ ամենայնի մեղան եւ եւս. եւ ոչ
հաւատացին սքանչելեաց նորա։

Պակասեցան յունայնութեան աւուրք նո-
ցա, և ամք նոցա փութապէս անցին։

Յորժամ սպանանէր զնոսա, խնդրէին զնա.
դառնային եւ առաւօտ առնէին առ Աս-
տուած։

Յիշեցին՝ զի Աստուած օգնական էր նոցա.
Աստուած բարձրեալ փրկիչ էր նոցա։

Սիրեցին զնա բերանօք իւրեանց, եւ
լեզուօք իւրեանց ստեցին նմա. եւ սիրտ
նոցա ոչ էին ուղիղք ընդ նմա. և ոչ հա-
ւատացին ուխտի նորա։

Այլ նա ինքն գթած էր. քաւէր զմեղս
նոցա. և ոչ ապականէր:

Յաճախէր դարձուցանել զբարկութիւն
իւր. և ոչ բորբոքէր զամենայն սրտմտու-
թիւն իւր:

Յիշեաց՝ թէ մարմին են նոքա. հոգի որ
ելանէ, այլ ոչ եւս դառնայ:

Քանիցս անգամ դառնացուցին զնա յա-
նապատի. եւ բարկացուցին զբարձրեալն
յանջրդի:

Դարձան և փորձեցին զԱստուած, և ըզ-
սուրբն Իսրայելի զայրացուցին:

Ոչ յիշեցին զձեռն նորա, յաւուր յորում
փրկեաց զնոսա ՚ի ձեռաց նեղչաց նոցա:

Որպէս արար զնշանս եւ զարուեստս իւր
յերկրին Եգիպտացւոց և ՚ի դաշտին Տա-
նեոս:

Դարձոյց յարիւն զգետս նոցա, և զանձ-
րեւս նոցա, զի մի՛ արբցեն:

Առաքեաց ՚ի նոսա շանաճանճ եւ եկեր
զնոսա. և գորտս ապականեաց զնոսա:

Ետ ժանգոյ զպտուղս նոցա, և զվաստակս
նոցա մարախոյ:

Եհար կարկտիւ զայգիս նոցա, և զթզենիս
նոցա եղեմամբ:

Մատնեաց ՚ի կարկուտ զանասունս նոցա.
և զստացուածս նոցա հրով գանեաց.
Առաքեաց ՚ի նոսա զսրտմտութիւն բար-
կութեան իւրոյ. զսրտմտութիւն զբար-
կութիւն և զնեղութիւն.
Առաքեաց ՚ի նոսա տանջանս ՚ի ձեռն հրեշ-
տակի չարի. և գծեցոյց ՚ի նոսա զսրտմ-
տութիւն բարկութեան իւրոյ.
Ոչ անխնայեաց ՚ի մահուանէ զանձինս նոցա.
և զանասունս նոցա ՚ի մահ մատնեաց.
Եհար զամենայն անդրանիկս Եգիպտաց-
ւոց, զսկիզբն ամենայն վաստակոց նոցա
՚ի յարկս Քամայ:

Քարոզ:

Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ
՚ի Տեառնէ՝ զի ողորմ:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Աղօթք:

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր, որ ե-
տուր մեզ զպատուիրանս քո ՚ի լուսաւո-
րութիւն անձանց մերոց. Ընկալ և այժմ
զնորատիպ գիրս զայս ՚ի ձեռաց մերոց ՚ի
տաճար սուրբ քո: Օրհնեա և սրբեա զսա,
զի որք ընթերցցին. և որք լուիցեն, բա-

նայցին սիրտք նոցա առնել զհրամանս քո գրեալ 'ի սիրտս իւրեանց, լինել քեզ ժողովուրդ սեպհական ։ Պայծառացո, Տէր, և զհոգի մատուցողի սորին . և եթէ յանցեալ ինչ իցէ փոքու կամ մեծի, արա թողութիւն բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին և ամենայն սրբոց ։ Զի դու ես Տէր Աստուած մեր . եւ քեզ վայելէ փառք՝ իշխանութիւն և պատիւ . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։



# ԿԱՆՈՆ

## ԱՂ ՕՐՀՆԵԼՈՑ

ԱՍՏՈՒԱԾ ողորմեա մեզ և օրհնեա զմեզ. երեւեցո զերեսս քո 'ի մեզ, եւ ողորմեա մեզ։

Ճանաչել յերկրի զճանապարհս քո, յազգիս ամենայն զփրկութիւնս քո։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամենայն։

Ուրախ եղիցին եւ ցնծասցեն ազինք, զի դու դատես զժողովուրդս ուղղութեամբ. և ազգաց երկրի դու առաջնորդես։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած. գոհասցին զքէն ժողովուրդք ամենայն։

Երկիր ետ զպտուղ իւր, և օրհնեաց զմեզ Աստուած Աստուած մեր։

Աստուած մեր օրհնեսցէ զմեզ. և 'ի նմանէ երկիցեն ամենայն ծագք երկրի։

Ճաշական.

Դկ. Որ բանականաց պահէին յանեղաշէն դրախտին ըղձանապարհըս ծառոյն կենաց բովանդակաբերն հոյլքըն բոցեղէն սրովբէիւք. այսօր արտափայլեալ ցուցար յերկրի աստուածազարդ փայտ կենաց եւ փրկութեան. ըզքեզ օրհնեն մանկունք սուրբ եկեղեցւոյ:

Սաբեկայ ծառոյն վերաբերեալ խոյ յողջակէզս փոխանակ իսահակայ. այլ ի վերայ քո զենեալ գառն անարատ ի հաշտութիւն Հօր եւ ի բառնալ ըզմեղըս մեր. ըզքեզ օրհն:

Պարծանք Մովսէսին, դաւանեալ ըզքեզ աստուածային բանին տեղի եւ զենարան. քանզի քեւ ապրեցաք ի խածանող եւ յանմարմին պազանէն. Եւ ի վերայ քո հեղեալ շիթք անապական արեանն, ըզկողածնին շընջեաց ըզմեղս. ըզքեզ օրհն:

Քարոզ.

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց.

ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի ։

Տէր ողորմեա՛ , Տէր ողորմեա՛ , Տէր ողորմեա՛ ։

Աղօթք ։

Օրհնեալ ես Տէր Աստուած ամենակալ, արարիչ ամենայն արարածոց. որ արարեր զամենայն արարածս քո բարի և լաւ, եւ չիք ինչ 'ի նոսա խոտան. զոր ետուր 'ի պէտս որդւոց մարդկան ։ Որ արարեր զաղըն 'ի հաստատութիւն երկրի եւ 'ի ժողովս ջուրց ։

Եւ արդ՝ մեք հաւատացեալքս անուան քում սրբոյ, առեալ զպարգեւս քո՝ գոհանամք զառատ ողորմութենէդ քումմէ, եւ փառաւորեմք զամենամեծ տէրութիւն քո ։

Օրհնեա * Տէր, ողորմութեամբդ քո զաղս զայս, եւ սրբեա 'զսա ։ Զի ամենայն ինչ՝ յոր և խառնեսցի սա, եղիցի քեզ 'ի հաճոյս և յընդունելութիւն, և մեզ 'ի մաքրութիւն՝ եւ յառողջութիւն հոգւոյ եւ մարմնոյ ։ Որպէս զի հաստատեալք սովաւ եւ զուարճացեալք, յամենայնի անդադար փառաւորեսցուք զՀայր եւ զՈրդի

և զՍուրբ Հոգի. այժմ և միշտ եւ յաւի-
տեանս յաւիտենից, ամէն։

Ամէն, Ալէլուիա ալէլուիա ալէլուիա.

Օրհնեսցի եւ սրբեսցի տեղս այս նշանաւ սուրբ Խաչիւս և սուրբ Աւետարանաւս. յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. այժմ և միշտ և յաւի։ (Երիցս կրկնել)։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և։

Շարական.

Դ Զ. Ահեղ խորհրդոյ քահանայից, բանզկատարան կայ ՚ի բեմի՝ առաջի սուրբ Սեղանոյն. հուր չիջանի. խնկաւոր մերժի. տրտմեալ հոգւոյն ուրախանայ, զի թողութիւն մեղաց լինի. ողորմած Տէր ողորմեա հոգ։

Հոգւոյն հանգուցելոյ։ Վասն հանգ։ Քրիստոս Որդի Ա։
Հայր մեր որ յերկինս։



# ԿԱՆՈՆ

## ՕՐՀՆՈՒԹԵԱՆ ՀԱՑԻ ՊԱՏԱՐԱԳԻ

### ԿԱՄ

## ՍԵՂԱՆՈՅ ՄԱՏԱՂԻ



ՅԻՇԵՍՑԷ Տէր զամենայն Պատարագս քո և զուխտս քո ընդունելի արասցէ։ Տացէ քեզ Տէր ըստ սրտի քում և զամենայն խորհուրդս քո նա կատարեսցէ։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Շարական.

Դկ. Ո՞ր յանէից ստեղծող դոյից մրարչակից Հօր բանդ Աստուած. Թողութիւն շնորհեա ննջեցելոց քոց ծառայից, յորժամ գաս դատել զոր անարատ ձեռօք ստեղծեր։

Ո՞ր ի Հօրէ առաքեցար և մարմնացար ի սուրբ կուսէն. Թողու։

Ո՞ր ՚ի խաչին անշէջ նշանցար զմահու
լուծեր զիշխանութիւն . Թողու ։
Ո՞ր պըսակիչդ ես քոց որբոց , եւ
անվախճան բարեաց բաշխող . Թողու ։

Աղօթք .

Գոհանամք զքէն Տէր Աստուած ամենակալ, արարիչ ամենայն արարածոց, որ լցեր եւ զարդարեցեր զամենայն երկիր պտղալից եւ վայելուչ պարարտութեամբ , եւ ետուր զնոսա ՚ի պէտս ուրախութեան որդւոց մարդկան , զի փառաւորեսցի հանապազ ամենասուրբ անուն քո՝ ՚ի քո ստեղծեալ ծառայիցս , որք վայելեմք միշտ յամենառատ բարութեան քում ։ Եւ արդ՝ բարերար եւ բազմագութ Տէր , քեզ խոնարհեցուցանեմք զծունր սրտից մերոց , եւ հայցեմք ՚ի բարերարութենէ քումմէ , առաքեա ՚ի ժամուս յայսմիկ զշնորհս ամենազօր Հոգւոյդ Սրբոյ ՚ի վերայ սեղանոյս այսորիկ , եւ օրհնեա ողորմութեամբ քով զառաջիկայ հացս զայս եւ զգինիս , զոր ՚ի քո առատ բարութենէդ մատուցանեմք առաջի քո անկարօտդ Աստուած , ՚ի յիշատակ հոգւոցն հաւատով ՚ի քեզ ննջեցե-

լոյ։ Եւ շնորհեա ամենեցուն որք հաղոր-
դին 'ի սմանէ՝ զփրկութիւն, և զառողջու-
թիւն կենաց, և զթողութիւն յանցանաց։
Եւ զհոգիս ննջեցելոց մերոց յիշեա Տէր՝
և դասաւորեա ընդ սուրբս յերկնաւոր ա-
ռագաստին յանսպառ ուրախութիւնն.
և պարգևեա վարձս բարեաց՝ մատուցո-
ղաց պատարագիս։ Եւ վասն տուաս մար-
դասիրութեան քո Տէր, քննեա զձեռագիր
յանցանաց ամենայն ժողովրդեանս, բա-
րեխօսութեամբ սուրբ Աստուածածնին և
ամենայն քոց սրբոց, և արժանի արա ըզ-
մեզ գտանել ողորմութիւն յաւուր հա-
տուցման ամենայն գործոց։ Զի դու ես
կեանք անփոփոխ, և երանութիւն ամե-
նայն արդարոց։ Եւ քեզ ամենասուրբ Եր-
րորդութեանդ և միոյ Տէրութեանդ վա-
յելէ փառք եւ իշխանութիւն և պատիւ
այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից,
ամէն։

Հոգւոցն հանգուցել։ Վասն հանգ։ Քրիստոս Որդի Աս։
Հայր մեր որ յերկինս։



# ԿԱՆՈՆ
## ՋՐՀՈՐ ՕՐՀՆԵԼՈՅ

Առնու Քահանայն զԽաչն և զԱւետարանն և երթայ ՚ի զդեղեալ ջրհորն. և տայ հանել ջատապատն դոյլ ջուր. և ասա դոյլ մի այլ և ասէ.

Ալէլուիա ալէլուիա.

Ձայն Տեառն ՚ի վերայ ջուրց. եւ Աստուած փառաց որոտաց. եւ Տէր ինքն ՚ի վերայ ջուրց բազմաց։ (Տես. յերես 33)։

Խնկարկէ զջերման հորոյն և ասէ Շարական.

Դկ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգիդ իջեալ ՚ի բարձանց. զանապական պարգեւելս քո բաժանեցեր յառաքելսն։

Որ ՚ի վերայ ջուրցն գոլով սաւառնէիր զարարածս. իջեալ ՚ի ջուրս աւազանին ծնանիս Որդիս Աստուծոյ։

Ո՛ր զարդարեալ նորոգես միշտ ըզնոր
քո զեկեղեցի. պէս պէս շնորհայ քոց
պարգևօ՛ք փայլին մանկունք սորա :

Ապա ընդ շրջանն խաղաղական 'ի ջրհորն և ասէ .

Ալէլուիա ալէլուիա.

Ձայն Տեառն 'ի վերայ ջուրց, և Աստուած
փառաց որոտաց, և Տէր ինքն 'ի վերայ
ջուրց բազմաց :

Ընթերցուած 'ի չորրորդ Թագաւորութեանց :

Եւ ասեն արք քաղաքին ցԵղիսէ. ահա՝
ւասիկ բնակութիւն քաղաքիս բարի է,
որպէս և տէրդ իսկ տեսանէ. և ջուրքս
չար և երկիրս անզաւակ :
Եւ ասէ Եղիսէ. առէք առ իս կուժ մի
նոր, և դիք այդր. և բերին առ նա. և ել
Եղիսէ յականս ջուրցն, և արկ անդր աղ
և ասէ՝ այսպէս ասէ Տէր. բժշկեմ զջուր-
սդ զայդոսիկ, և մի ևս լիցի այդ 'ի
մահ և յանզաւակութիւն. և բժշկեցան
ջուրքն մինչև ցայսօր ըստ բանին Եղիսէի
զոր խօսեցաւ :

Պօղոսի առաքելոյն ՚ի Կորնթացւոց առաջին թղթոյն է ընթերցուած։

Ոչ կամիմ եթէ տգէտ իցէք եղբարք. զի հարքն մեր ամենեքեան ընդ ամպովն էին. և ամենեքին ընդ ծովն անցին. և ամենեքին ՚ի Մովսէս մկրտեցան յամպն և ՚ի ծովն. և ամենեքեան զնոյն հոգեւոր կերակուրն կերին. եւ ամենեքեան զնոյն հոգեւոր ըմպելին արբին. զի ըմպէին ՚ի հոգեւոր վիմէն որ երթայր զհետ նոցա. և վէմն էր ինքն Քրիստոս։

Ալէլուիա ալէլուիա.

Տեառն ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ։

Ալէլուիա Օրթի.

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Վասն Մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Յայնժամ գայ Յիսուս ՚ի Գալիլէէ ՚ի Յորդանան առ Յովհաննէս՝ մկրտիլ ՚ի նմանէ.

և Յովհաննէս արգելու զնա՝ և ասէ. ինձ պիտոյ է 'ի քէն մկրտիլ. եւ դու՝ առ իս գաս։

Պատասխանի ետ Յիսուս՝ եւ ասէ ցնա. Թոյլ տուր այժմ, զի այսպէս վայելէ մեզ լնուլ զամենայն արդարութիւն. եւ ապա թոյլ ետ նմա։ Եւ իբրեւ մկրտեցաւ Յիսուս՝ ել վաղվաղակի 'ի ջրոյ անտի. և ահա բացան նմա երկինք, և ետես զՀոգին Աստուծոյ՝ զի իջանէր իբրեւ զաղաւնի և գայր 'ի վերայ նորա։

Եւ ահա ձայն յերկնից՝ որ ասէր. դա՛ է Որդի իմ սիրելի, ընդ որ հաճեցայ։

Քարոզ։

Աղաչեսցուք զբարերարն Աստուած, եւ խնդրեսցուք 'ի նմանէ. զի մաքրեսցէ զգուշ զայս յամենայն աղտեղութենէ, և տացէ 'ի պէտս ծառայից իւրոց շնորհօք ողորմութեան իւրոյ. ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի։

Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Տէր Աստուած մեր, որ արարիչդ ես ամենայն արարածոց՝ երեւելեաց եւ աներե-

ութից. որ գոյացուցեր զծով եւ զցամաք. եւ զոր 'ի նոսա վայելչութիւն. եւ հայեցեալ տեսեր զամենայն արարածս քո. և ահա բարի են յոյժ. յորոց վերայ ստեղծեալ 'ի քէն զմարդն իշխան կարգեցեր: Իսկ ինքնայօժար կամօք չարացեալ բանսարկուն՝ պատրեալ զնա մերկացոյց 'ի փառացն. եւ սերմանեաց 'ի նմա զլուր չարութեան սերմն: Զոր խնամօք արարչական ողորմութեան քո զերծուցանել կամելով 'ի նորին դառնաճանութենէն՝ ետուր զգրաւորական օրէնս ազգի մարդկան 'ի դաստիարակութիւն: Եւ զտղայաբարոյ միտս նոցա զգուշացուցանելով 'ի հեթանոսական սովորութեանց՝ գրեցեր նոցա զխտրութիւն կերակրոյն: Իսկ յերեւիլ միածնի քո՝ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. որ լուսաւորեաց զեկեղեցի իւր սուրբ՝ աւետարանական վարդապետութեամբն. ուսաք 'ի նմանէ եւ հաւատացաք ոչ արտաքուստ մտանել 'ի մեզ պղծութիւն ինչ յարարածոցս. զոր ետուր մեզ 'ի վայելս մարմնական պիտոյից: Վասն որոյ եւ մեք աշակերտեալքս վարդապետութեան սրբոյ Աւետարանին՝ եւ քարո-

զութեան սրբոց Առաքելոցն . խնդրեմք ՚ի քէն և աղաչեմք, ՚ի վերակոչելս մեր՝ զերկրպագելի անուն Ամենասուրբ Երրորդութեանդ՝ Հօր և Որդւոյ և Հոգւոյդ Սրբոյ . սրբեա ամենակարող զօրութեամբդ զՋրհորս զայս՝ եւ զոր ՚ի սմա զՋուրս մաքրեա յամենայն կարծեալ պղծութենէ՝ ՚ի մերմէ հիւանդամտութենէս . եւ զօրացո զտկար միտս մեր՝ առնուլ զսա առանց խղճի ՚ի վայելս մարմնական պիտոյից մերոց . և գոհութեամբ փառաւորել զքեզ Հայր՝ Որդւովդ միածնիւ եւ Հոգւովդ Սրբով . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Տէր մեր Յիսուս Քրիստոս միածին Որդի և Բանդ Աստուած, որ զախտացեալ բնութիւնս մեր խառնեալ ընդ անախտ աստուածութիւնդ՝ ՚ի վերայ մեր սուրբ արարեր զանձն քո ։ Ուստի եւ մեք սրբեալք ՚ի ճշմարտութենէդ քումմէ՝ գոհանամք զքէն, և աղաչեմք զմիայն բարերարդ եւ զմարդասէրդ, խոնարհեաց առ մեզ որք ժողովեալ եմք յանուն քո սուրբ, և հեղ

զշնորհս Հոգւոյդ Սրբոյ 'ի ջուրս այս՝ նշա-
նաւ սուրբ Խաչին . և սրբեա զսա յամե-
նայն կարծելի եւ յանկարծելի աղտեղու-
թենէ ։ Որպէս զի անխիղճ սրտիւ վայել-
եալ զսա 'ի պէտս մարմնական պիտոյից
մերոց , փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր
և ընդ Սուրբ Հոգւոյդ , այժմ և միշտ եւ
յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Քարոզ ։

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո․

Աղօթք ։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս ։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն ։
Հայր մեր որ յերկինս ։



# ԿԱՆՈՆ

## ՕՐՀՆԵԼՈՅ ԶԱՐՏՕՐԱՅՍ

### ԶՍԵՐՄԱՆԻՍ, ԶԱՐՄՏԻՍ, ԶՇԵՂՋ, ԶԿԱԼ ԵՒ ԶՀՆՁԱՆ

Ալէլուիա ալէլուիա.

*Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած ՚ի Սիոն և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ.*

Ընթերցուած յԱռակաց.

*Պատուեա զՏէր ՚ի քոց արդար վաստակոց, և հան նմա պտուղ ՚ի քոց արդարութեան արմտեաց.*

*Զի լցցին շտեմարանք քո լիութեամբ ցորենոյ, եւ գինեաւ հնձանք քո առաւել եւս բղխեսցեն.*

Ընթերցուած ՚ի Յովէլեայ մարգարէէ.

*Քաջալերեաց, երկիր, խնդա եւ ուրախ լեր, զի մեծացոյց Տէր զառնել իւր ընդ քեզ.*

*Քաջալերեա, երէվայրի. զի դալարեցան դաշտք անապատի. զի ծառ ետ զպտուղ իւր. որթ եւ թզենի ետուն զզօրութիւն իւրեանց։*

*Որդիք Սիովնի, ցնծացէք եւ ուրախ լե-րուք ՚ի Տէր Աստուած ձեր. զի ետ ձեզ Տէր կերակուր արդարութեան. եւ տե-ղասցէ ձեզ անձրեւ կանուխ եւ անագան իբրեւ զառաջինն. և լցցին կալք ցորենոյ, և զեղցին հնձանք գինւոյ և իւղոյ։*

*Եւ հատուցից ձեզ փոխանակ ամացն՝ յորս եկեր մարախն և ջորեակն և թրթուրն, զօր իմ մեծ զոր առաքեցի ՚ի վերայ ձեր. Եւ ուտելով կերիջիք՝ և յագեսջիք, և օրհ-նեսջիք զանուն Տեառն Աստուծոյ ձերոյ, որ արար ընդ ձեզ սքանչելիս. և մի եւս ամաչեսցէ ժողովուրդ իմ յաւիտեան։*

Պօղոսի առաքելոյն ՚ի Կորնթացւոց երկրորդ թղթոյն է ընթերցուածս։

*Այլ այն որ պարգեւէ սերմն սերմանա-հանաց՝ և հաց ՚ի կերակուր, պարգեւեսցէ և բազմացուսցէ զսերմանիս ձեր, և աճե-ցուսցէ զարդիւնս արդարութեան ձերոյ. յամենայնի մեծացեալք ամենայն առա-*

տուլթեամք, որ յօրինէն մեօք գոհութիւն
Աստուծոյ։

Զի պաշտօն հարկիս այսորիկ՝ ոչ միայն առ 'ի լնուլ զպակասութիւն սրբոցն է, այլ առաւելուլ բազմօք գոհութիւնս Աստուծոյ։

Ալէլուիա Օրթի։
Խաղաղութիւն ամենեցուն։
Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։
Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ ասէր. այսպէս է արքայութիւն Աստուծոյ, որպէս զի այր մի արկանիցէ ըզսերմանիս յերկիր։

Եւ ննջիցէ և յառնիցէ զցայգ և զցերեկ. և սերմանիքն բուսանիցին և աճիցին, եւ նա ոչ գիտէ՝ թէ երկիրն ինքնին բերէ զպտուղ. նախ զխոտն, եւ ապա զհասկն, և ապա զցորեան ատոք 'ի հասկին։

Այլ յորժամ տայցէ զպտուղն, վաղվաղակի առաքի մանգաղ, զի հասեալ են հունձք։

Փառք քեզ Տէր Աստուած մեր.

Քարոզ.

Աղաչեսցուք զմարդասէրն Աստուած. զի օրհնեսցէ զսերմանիս եւ զարդիւնս ծառայից իւրոց. ամենակալ Տէր Աս.

Աղօթք.

Օրհնեալ ես Տէր Աստուած ամենակալ, որ վերածես զամպս 'ի ծագաց երկրի, և զփայլատակունս յանձրեւս առնես. կոչես զջուրս ծովու եւ հեղուս 'ի վերայ երեսաց երկրի: Խնդրեմք 'ի քէն և աղաչեմք, աղերսեմք եւ երկրպագեմք՝ խոստովանելով զմեղս մեր, եւ հայցելով զառատ ողորմութիւն քո: Բաց, Տէր, զսահանս երկնից առ 'ի ցօղել մեզ զանձրեւս շահեկանս: Գթա, Տէր, 'ի ծերս և 'ի մանկունս, 'ի տղայս եւ 'ի ստնդեայս, 'ի խաշինս և յանասունս, և յամենայն կենդանիս: Օրհնեա, Տէր, զբերս երկրի մերում, զարտոյ եւ զայգւոյ, զծառոյ եւ զխոտոյ: Օրհնեա, Տէր, զսերմանիս մեր հանդերձ սերմանողօքս. զի առատ ես 'ի պարգեւս քո. տաս սերմն սերմանողաց և հաց 'ի կերակուր մարդկան. աղաչեմք զքեզ Թա-

գաւոր զօրութեանց Աստուած Աստուած մեր, որ խնամօք քովք լնուս զդաշտս եւ զլերինս պարարտութեամբ, հայեաց ՚ի սերմանիս մեր. որ կարօղդ ես առանց սերման շնորհել հասկս՝ և առանց կերակրոյ լնուլ զքաղցեալս: Տուր, Տէր, զառատ ողորմութիւն քո, և աճեցո զարդիւնս ծառայից քոց ՚ի պիտոյս կարեաց կենցաղոյս. զի աչք ամենեցուն ՚ի քեզ յուսան, եւ դու տաս նոցա կերակուր ՚ի ժամու: Օրհնեա, Տէր, և զամպս ՚ի վերուստ, զի զցօղ քաղցրութեան ցօղեսցեն յանդաստանս մեր: Օրհնեա, Տէր, և զարտօրայս մեր, զի առանց ամենայն վնասուց անուցանիցեն զպտուղս իւրեանց: Օրհնեա, Տէր, զմշակս եւ զեզինս սոցա, զի առողջութեամբ ժողովեսցեն զարդիւնս վաստակոց իւրեանց: Օրհնեա, Տէր, և զպսակ տարւոյ քաղցրութեան քո, զի լիութեամբ եւ խաղաղութեամբ կատարեսցի: Օրհնեա, Տէր, զշտեմարանս ցորենոյ, եւ զհնձանս գինւոյ եւ իւղոյ. զի լցեալք յառատութենէ բարեաց քոց՝ առաւել եւս բղխեսցեն ըստ քոյին անսուտ բանիդ: Եթէ երկինք լուիցեն երկրի և երկիր լուիցէ ցորե-

*նոյ և գինւոյ և ձիթոյ, և նորօք լցցի ժողո-
վուրդ իմ։ Եւ զմեզ զամենեսեան արժա-
նի արա խաղաղութեամբ վայելել զպար-
գեւս առատ ողորմութեան քո. և գոհա-
նալով փառաւորել զքեզ ընդ Որդւոյ եւ
ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յա-
ւիտեանս յաւիտենից, ամէն։*

Քարոզ։

*Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սա։*

Աղօթք։

*Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն։
Հայր մեր որ յերկինս։*



# ԱՂՕԹՔ

## ՎԱՍՆ ԵՐԱՇՏԻ

Տէր Աստուած մեր, որ յաղագս առ քեզ նախանձուն՝ լուար Եղիայի մարգարէին 'ի ժամանակին յայնմիկ. և երկնի հրամայեցեր արգելուլ զանձրեւ, զի մի՛ տացէ երկիր զպտուղ իւր. և դարձեալ յաղագս խնդրոյ նորա՝ ցօղ պտղաբեր պարգեւեցեր։ Դու Տէր ամենայնի՝ շարժեալ 'ի բարեգթութենէ քումմէ՝ անձրեւ ըստ կամաց քոց պատրաստեցեր ժառանգութեան քում. եւ զբազում մեղս մեր անտես արարեր։ Եւ այժմ աղաչեմք զքեզ, զանձրեւս քո առաքեա. որք պէտս ունին եւ խնդրեն 'ի քէն։ Ուրախ արա զերեսս երկրի յաղագս ժողովրդեան քո, եւ վասն տղայոց՝ եւ անասնոց, եւ ամենայն կենդանեաց. որք ակն ունին առ քեզ՝ տալ նոցա կերակուր 'ի ժամու։ Զի դու ես Տէր Աստուած մեր՝ Աստուած բարերար. եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

# ԿԱՆՈՆ

## ՆՈՐՈԳ ՍԱՓՐԵԼՈՑ ՋՀԵՐՍ

## ՊԱՏԱՆԻՈՑՆ



Շարական.

Գջ. Մանկունք ըզՏէր օրհնեցէք. որոյ անունն որ էն, եւ միշտ եղիցի անուն Տեառն օրհնեալ։

Ծագմամբ լուսոյ զարդարեալդ զազգըս մարդկան Թագաւորըն Քրիստոս. եւ միշտ եղիցի անուն Տեառն օրհնեալ.

Որդիք լուսոյ տուք ըզփառս Հօրըն լուսոյ, Որդւոյն միածնի եւ Սուրբ Հոգւոյն յաւիտեանս ամէն։

Ալէլուիա ալէլուիա.

Օրհնեցէք մանկունք զՏէր եւ օրհնեցէք զանուն Տեառն։

Ալէլուիա Օրթի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։
Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Ո՞չ ապաքէն երկու ճնճղուկք դանգի միոջ վաճառին, եւ մի ՚ի նոցանէ յերկիր ոչ անկցի առանց Հօր ձերոյ ։

Այլ ձեր եւ ամենայն իսկ հեր գլխոյ թուեալ է, եւ արդ՝ մի երկնչիցիք, զի լաւ էք քան զբազում ճնճղուկս ։

Ամենայն՝ որ խոստովանեսցի յիս առաջի մարդկան, խոստովանեցից եւ ես զնմանէ առաջի Հօր իմոյ որ յերկինսն է ։

Աղօթք ։

Զքեզ աղաչեմք Տէր Աստուած փրկութեան մերոյ, որպէս օրհնեցեր զԴաւիթ ձեռամբ մարգարէին Սամուելի. նոյնպէս օրհնեա զողջոյս զայս ձեռամբ անարժանութեան իմոյ. եւ տպաւորեա ՚ի սմա զՀոգիդ քո սուրբ. որպէս զի յառաջա-

Նալով հասակաւ՝ լի աւուրբք՝ եւ ալեօք ծերութեան վայելեսցէ 'ի բարութեան քում։ Եւ քեզ յամենայնի փառք եւ իշխանութիւն, այժմ՝ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Եւ նախ քան կտրէ զհերս պսակաւորին
Ի չորից կողմանց ասելով.

Հարթին հերք գլխոյ (այս անուն) ծառայի, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

Աղօթք։

Եւ վասն Սուրբ Խաչի քո պատուականի Տէր ընկալ զաղաչանս մեր եւ կեցո զմեզ։

Քարոզ։

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սա։

Աղօթք։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս։
Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն։
Հայր մեր որ յերկինս։



# ԿԱՆՈՆ

## ԹԱՂՄԱՆ

### ՆՆՋԵՑԵԼՈՑ ԱՇԽԱՐՀԱԿԱՆԱՑ

### ԱՐԱՆՑ ԵՒ ԿԱՆԱՆՑ



Ալէլուիա ալէլուիա.

Երկինք պատմեն զփա։ Քնղ՝ Դատեան։

Օրհնեալ Հոգիդ Սուրբ Աստուած Ճշմարիտ։

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողոր-
մութեան քում, ըստ բազում գթութեան
քում քաւեա զանօրէնութիւնս իմ։

զփոխն ըման սաա։

Փառք Հոր և Որդւոյ և։



## ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ

ԱՁ. Դատեա՛ Տէր զայնոսիկ՝ որք դատեն զիս. ալէ՜լուիա՛. մարտի՛ր ընդ այնոսիկ որք մարտընչի՛ն ընդ իս. ալէ՜լուիա՛։

Առ զզէն և զասպար քո. և արի՛ յօգնել ինձ. հան զսուր քո ընդդէմ հալածչաց իմոց, արգե՛լ զնոսա. և ասա՛ դու ցանձն իմ, թէ փրկութիւն քո եմ ես։

Ամաչեսցեն և յամօթ լիցին՝ որք խնդրէին զանձն իմ. դարձին յետս և ամաչեսցեն, որք խորհէին ինձ չար։

Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ և հրեշտակ Տեառն նեղեսցէ զնոսա։

Եղիցին ճանապարհք նոցա ՚ի խաւար եւ ՚ի գայթակղութիւն. և հրեշտակ Աստուծոյ հալածեսցէ զնոսա։

Ի նանիր թագուցին ինձ որոգայթ յապականութեան իւրեանց, եւ ՚ի նանիր նախատեցին զանձն իմ։

Կցորդ. Տէ՜ր՝ յերկինս է ողորմութի՛ւն քո. ճշմարտութի՛ւն քո մի՛նչեւ յամպս. ալէ՜լուիա ալէ՜լուիա՛։

Արդարութիւն քո որպէս լերինք Աստուած.

իրաւունք քո որպէս խորք բազումք. ըզ-մարդիկ և զանասունս կեցուցանես դու Տէր։
Որպէս զի բազում արարեր զողորմութիւն քո Աստուած. այլ որդիք մարդկան 'ի հովանի թևոց քոց յուսասցին։
Արբեսցին նոքա 'ի պարարտութենէ տան քո. և զուղխս փափկութեան քո տացես ըմպել նոցա։
Ի քէն է Տէր աղբիւր կենաց. և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։
Ծագեա զողորմութիւնս քո՝ որք ճանաչեն զքեզ, զարդարութիւնս քո՝ որք ուղիղ են սրտիւք։
Մի եկեսցեն 'ի վերայ մեր ոտք ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի դողացուսցեն զմեզ։
Անդ անկցին ամենեքեան՝ որք գործեն զանօրէնութիւն, մերժեսցին և այլ մի կարասցեն հաստատիլ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։ Ընկալ կե ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ ։

Կցուրդ ։ Ես ասացի 'ի վերանալ յինէն աւուրց իմոց՝ թէ գնացի ես 'ի դրունս դժոխոց ։

Շարական, Դկ.

Ա-գ. օրհ. Ի վերանալ յինէն աւուրց իմոց. Տէր օգնեա ինձ միայն մարդասէր:
Զչարչարանս խաչին եւ մահու յանձն առեր. Տէր օգնեա:
Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի և միշտ կուսի. Տէր օգնեա:

Ա-գ. օրհ. Ամենասուրբ Երրորդութեանդ երկրպագեն զօրք երկնայինք, եւ ստեղծուածք անարատ ձեռացդ փառաւորելով զտէրութիւնդ քո հանապազ:
Ամենազօր խաչին քո Տէր երկրպագեսցուք. որով բարձեր ըզդատակնիք մահու քո արարածոցս. փառա:
Ամենօրհնեալ Աստուածամայր Մարիամ, քերովբէական աթոռ Արարչին մերոյ տնօրէնութեան. զոր երանեցին ամենայն ազինք հանապազ:

Ապաշ. Քրիստոս Աստուած յոյս ապաշխարողաց. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց:
Առ քեզ բազմագութ ապաւինեալ կար-

դամբ . մի մերժեր ըզմեզ յողորմու-
թենէ քումմէ ։

Որպէս զաւազակն աղաղակեմ առ քեզ . յիշեա եւ զիս Տէր ՚ի քում յարքայու-
թեանդ ։

Աղաչ . Ըզմեղս իմ խոստովանիմ լինիմ առ քեզ Քրիստոս, որ միայնդ ես բազ-
մագութ թողութեամբ . ողորմեա ինձ
Աստուած ։

Դու Տէր որ ճշմարտութեանց ես սի-
րող, եւ քննես ըզծածուկս գաղտնեաց
սրտի իմոյ . ողորմ ։

Տուր ինձ ցընծութիւն փրկութեան, եւ հոգւով տէրութեանդ քո հաստա-
տեա զիս . եւ ողորմ ։

Աղաչ . Ալիք յանցանաց զիս ալէկոծեն, եւ մեղք իմ բազում զիս յանդիմանեն ։
Արդ զինչ արարից մեղուցեալ անձամբս, որ չեմ ապրելոց յահագին հըրոյն ։
Մեղայ քեզ Քրիստոս Որդի Աստուծոյ, շնորհեա զթողութիւն բազում յանցա-
նաց իմոց ։

Աղաչ . Տէր, որ ՚ի մէջ երկրին աղբերա-

ցուցեր ըզջուրն 'ի վիմէն.

Տէր, 'ի սրտէ իմմէ հան ինձ արտասուս
ապաշխարութեան։

Զի կեցից և ապաշխարութեամբ ապրե-
ցայց 'ի հանդերձեալ քոց դատաստանաց։

Աղաչ. Մեղուցեալ անձամբ կարդամ
առ քեզ Հայր երկնաւոր, օգնեա ինձ
'ի նեղութեանս. որ մեղօք եմ մեռեալ
օգնեա ինձ։

Վիրաւորեցայ ես յաներեւոյթ թշնամ-
ւոյն. բժիշկ հիւանդաց. բժշկեա զիմ
զհիւանդութիւնս. որ մեղօք եմ։

Մոլորեցայ ես որպէս ոչխար կորուսեալ.
խնդրող գերելոց խնդրեա զիս զմոլոր-
եալս. որ մեղօք եմ մեռեալ օգ։

Աղաչ. Մեղայ քեզ Տէր քաւեա զիս
և ողորմեա ինձ Աստուած։

Ոչխար եմ բանաւոր հօտի քո և առ քեզ
ապաւինիմ հովիւ բարի. խնդրեա զիս
զմոլորեալս և ողոր։

Ի ծովու մեղաց ալէկոծեալ եմ ես. առ
քեզ աղաղակեմ նաւապետ բարի. փրկ-
եա զիս 'ի վտանգէս և ողոր։

Աղաւ. Զարհուրեալ դողացան ամե-
նամեղ անձն իմ, յահէղ քոց դատաս-
տանաց, յաններելի տանջանացն։

Քանզի կամաւ մերձեցայ ի մեղս
մեծամեծս. արդ կամ եւ մնայ ինձ
աններելի պատուհասն։

Արդ անկեալ աղաչեմ Փրկիչ եւ բա-
րերար. խնայեա յիս ի մեղուցեալս,
եւ ողորմեա ինձ բազմամեղիս։

Աղաւ. Ամենակալ քաւեա զմեղս
իմ. զի Աստուած ես ապաշխարողաց.

Եւ զհոգիդ Սուրբ մի հաներ յինէն.
զի Աստուած ես ապաշ։

Եւ փրկեա զիս յահագին հրոյն. զի
Աստուած ես ապաշխարողաց։

Աղաւ. Յորժամ իմ ի մանկութենէ իմմէ.
մի թողուր զիս Տէր Աստուած իմ։

Յորժամ իմ ի ժամանակի ծերութեան
իմոյ. մի թողուր զիս Տէր Աստ։

Յորժամ իմ ի միւսանգամ գալստեանն
քո. մի անտես առներ զիս Տէր Աստ։

Մար. Զհզօրութեան քո զզօրսն բաց
մեզ Տէր. եւ արժանի արա զմեզ լուսա-

ղէն յարկաց քոց ընդ սուրբըս քո։
Ի պատրաստեալ քո յօթեվանըս սրբոց
քոց ընկալ և ընդմեզ փրկիչ յորդէգրու-
թիւն 'ի դըպրութեան կենաց։
Ի նըստիլ քո յատենի դատաւոր ահեղ
խնայեա յարարածըս քո, բարեխօսու-
թեամբ և աղօթիւք սուրբ Ծընգնաւորացն։
Գրէ. Ո՞ր կոչեցեր ըզհեռացեալըս 'ի հար-
սանիս քո միածնին, ըմպել զբաժակն ի-
մաստութեան 'ի ձեռըն սրբոյն Գրիգո-
րի. բարեխօսութեամբ սորա ողորմեա
մեզ Աստուած։
Ո՞ր գերագոյն քան ըզբնութիւն չարչա-
րանօք քո ընտրելոյն դարձուցեր ըզմո-
լորեալըս 'ի գիտութիւն ճըշմարտու-
թեան. բարե։
Ո՞ր 'ի վիրապն անդընդային ջաղխեր նո-
վաւ զգլուխ վիշապին. 'ի գբի ներքնում
իջմամբ նորին բարձրացուցեր զմեզ 'ի
յերկինս. բարե։
Յոր. Յարեար երեւեցար առաքելոցն,
եւ մեզ փրկիչ ողորմեա։
Քեզ Քրիստոսի թագաւորիդ անմահի

Երկրպագանեմք, և զյարութիւնդ քո
փառաւորեմք։

Փառաըք փըրկողիդ և միածնիդ անմահի. փըրկեա ըզժողովուրդըս քո զոր ըստացար
պատուական արեամբըդ քո սըրբոյ։

Հոգ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգիդ իջեալ 'ի բարձանց. զանապական պարգեւըս քո բաժանեցեր յառա-
քելըսն։

Որ 'ի վերայ ջուրցն գոլով ստեղծանէիր զարարածս. իջեալ 'ի ջուրս աւազանին
ծնանիս Որդիս Աստուծոյ։

Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի. պէս պէս շնորհաց քոց պար-
գեւօք փայլին մանկունըք սորա։

Հան. Հայր անըսկիզբըն բարեխօսամ մարդասէր. որ ստեղծիչդ ես հոգւոց եւ մարմնոց. յիշեա զնընջեցեալսն մեր և
հանգո ընդ սուրբըս քո։

Որդիդ միածին որ գըթածդ ես առ ամենեսեան. և խաչիւ և արեամբ գնեցեր ըզքո ժողովուրդըս. յիշեա զգինս արեան
քո Տէր, և հան։

Հոգւոյդ ճշմարտիտ որ աղբիւրդ ես անսպա-
պառելի, եւ լցուցիչ ամենայն բարու-
թեանց. յիշեա զննջեցեալսն մեր և:

Մեծ. Ի քեզ եմք ապաւինեալ Քրիստոսի
մայր Աստուծոյ մերոյ:

Որ քան զերկինս բարձրագոյն Մարիամ.
պարծանք եկեղեցւոյ. Քրիստոս:

Որ քան զարեգակն պայծառագոյն Մա-
րիամ, մի դադարիր բարեխօսել վասն
մեր. Քրիստոսի մայր Աստուծոյ մերոյ:

Խաչ. Խաչի քո Քրիստոս երկրպագեն
արարածք ամենայն որ ի փրկութիւն մեզ
կանգնեցաւ. սա եղիցի մեզ պահապան
յաղթող, ապրեցուցանել զմեզ ի պատ-
րանաց թշնամւոյն:

Ի սմա բարձրացար բարձրեալդ անեղծից որ
փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողովել
ըզհեռացեալսն կենսաբեր փայտիւն. ապ-
րեցուցանել զմեզ ի պատ:

Փառք Հօր և Որդւոյ և: Այժմ և միշտ և:

Սուրբ լուսաւորեցան արարածք ամե-
նայն. սմա սպասէին արգելեալքն ի

մեղաւո՛ր բա՛նտին. որ ազատեա՛ց ըզ-
մեզ 'ի պատրա՛մ։

Քարոզ։

Վասն 'ի վերուստ խաղաղութեան եւ
փրկութեան անձանց մերոց, զՏէր աղա-
չեսցուք։ Տէր ողորմեա։
Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայ-
նի աղաչանաց մերոց, զՏէր աղա։
Վասն քաւիչ եւ ներող լինելոյ Աստուծոյ
'ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա։
Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր
զկամայ և զակամայ, զՏէր աղա։
Վասն զի մի ընդ խոտանսն գտանիցիմք
յաւուրն պատասխանատուութեան, ըզ-
Տէր աղա։
Վասն հոգւոցն հանգուցելոց, որք ճշ-
մարիտ եւ ուղիղ հաւատով 'ի Քրիստոս
ննջեցին, զՏէր աղա։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։
Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Աստուած յաւիտենական, անսկիզբն՝ ա-

նեղ՝ անիմանալի՝ անհասանելի խորհուրդ։ Հայր բարեխնամող. ծնող միածնի Որդւոյ. եւ արտաքս առաքող Հոգւոյդ Սրբոյ, որ ՚ի քէն ելանէ՝ եւ լնու զամենայն արարածս։ Դու Տէր, կարող զօրութեամբ քով՝ առեալ հող յերկրէ՝ արարեր զմարդն, և բնակեցուցեր զնա յանախտ եւ յանաշխատ կեանս անմահս, եւ պատուիրանադրութեամբ քով զգեցուցեր զնա անամօթ փառօք ՚ի դրախտին փափկութեան։ Սակայն չարին խանդացեալ ընդ մեծութիւն փառաց պատուոյ նորա, զոր ՚ի քումմէ բարերարութենէդ ընկալեալ էր, եւ պատրեալ զնա յաղագս անհասիցն ցանկութեանց. որ եւ զիւր տեղի փառացն ոչ պահեաց, կամակոր եղեալ յերեսաց քոց Տէր։ Իսկ յանցանել նորա ըզպատուիրանաւ քով՝ հանեալ եդեր զնա արտաքոյ դրախտին փափկութեան, զգեցուցանելով նմա զմաշկեղէն հանդերձս, զախորալի և զախտաւոր մարմինս. և սահմանեցեր հողադարձիլ հողոյն.

Սակայն եւ ոչ այնու անտես արարեր ըզնա, այլ առաքեցեր զմիածին Որդիդ քո, որ եկեալ մարմնացաւ յանարատ եւ յա-

նապական կուսէն Մարիամայ, և զգեցաւ զհնացեալ մարմին ծառայութեան մերոյ, զոր ծառայեցաք մահու մեղաց՝ տարագրութեամբ 'ի ձեռն կնոջն դաւաճանութեան. եւ ազատեցոյց աստուածութեամբն իւրով 'ի ձեռն փրկական խաչին իւրոյ՝ եւ անապական թաղմանն։ Զի զոր վասն անսուտ բանի քո հարկիւ պարտէաք մեռանել, եբարձ սքանչելագործ յարութեամբն իւրով. եւ լուսաւորեաց վազգս որդւոց մարդկան 'ի նոյն նմանութիւն պատկերի քո, որով ստեղծեր ըզնախնիսն մեր զՀայր. եւ ծանոյց մեզ զանուն քո, որով արժանաւորեցաք կոչել զքեզ Հայր։ Վասն զի նստելով ընդ աջմէ քումմէ մարմնովն զոր 'ի մէնջն էառ, եւ մեզ խոստացաւ յոյս յարութեան կենաց 'ի միւսանգամ գալստեան իւրում 'ի դատաստան յաւուրն յետնում։ Եւ պարգեւեաց մեզ զժամադրութիւն գործոց բարեաց զանցաւոր կեանս որով մարթասցուք գտանել զերկիրն կենդանեաց 'ի ձեռն վարդապետութեան որբոց Առաքելոց իւրոց, որովք եբարձ զդիւամոլ կռապաշտութիւն յաշխարհէս։

Եւ այժմ բարերար և բազումողորմ Աստուած՝ ընկալ զհոգի ծառայիս այսորիկ, որ ելից զժամանակ պանդխտութեան իւրոյ 'ի վերայ երկրի, եւ ընկալեալ զլուծումն յաշխատութեանց, եւ յաշխարհահեղձ պատրողական խաբէութեանց. և դասաւորեա զնա ընդ սուրբս՝ քո յարքայութեանդ երկնից, ուստի մերժեալ են ցաւք և հեծութիւնք, միշտ յարազուարճ բերկրանօք պայծառացեալ տեսլեամբ աստուածային փառաց քոց, ուր ուրախանան ամենայն ընտրեալք քո։ Ընդ նոսին դասաւորեա Տէր, զհոգի հանգուցելոյս մերոյ այսորիկ. զի և մեք սովաւ հանդերձ փառաւորեսցուք զքեզ Հայր՝ ընդ Որդւոյ և ընդ Սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Հայր մեր որ յերկինս և յերկրի և յամենայնի. սուրբ եղիցի անուն քո 'ի վերայ մեր։ Եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի, և փառաւորեսցի անուն քո յաւիտեան։ Որ պատրաստեցեր մեզ հանգիստ յերկրաւոր՝ աշխատութեանցս՝ յանանց եւ յանախտ կեանս։ Որ 'ի ձեռն

միածնի քո սպաներ զմահ, և լուսաւորեցեր զմեզ 'ի կենանս եւ յանեղծութիւն։ Որ փրկեցեր զսուրբս քո յիշխանութենէ խաւարի, եւ փոխեցեր յարքայութիւն Որդւոյ քո սիրելւոյ՝ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Ընկալ եւ այժմ մարդասէր Տէր՝ աղաչեմք զքեզ՝ զհոգի սորա ընդ արդարս քո 'ի հանգստեան քում, եւ թողեա զսա 'ի համարս սրբոց քոց 'ի ձեռն միածնի Որդւոյ քո, և Նորագոյն Հոգւոյդ Սրբոյ։ Ընդ որում քեզ Հօր ամենակալի, վայելէ փառք եւ իշխանութիւն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ալէլուիա ալէլուիա.

Ահա չափով եդեր զաւուրս իմ. և կար զօրութեան իմոյ որպէս ոչինչ է առաջի իմ. սակայն ընդունայն է ամենայն մարդ մնեղի։

Ապաքէն որպէս 'ի պատկերի շրջի մարդ. սակայն 'ի զուր խռովի, գանձէ և ոչ գիտէ ում ժողովէ։

Պօղոսի առաքելոյն 'ի Կորնթացւոց երկրորդ թղթոյն է ընթերցուածս։

Օրհնեալ է Աստուած եւ Հայր Տեառն

մերոյ Յիսուսի Քրիստոսի. Հայր գթութեանց, և Աստուած ամենայն մխիթարութեան. որ մխիթարէն զմեզ յամենայն նեղութիւնս մեր. առ 'ի կարող լինելոյ մեզ մխիթարել զայնոսիկ՝ որ յամենայն նեղութիւնս իցեն, մխիթարութեամբն՝ որով մեք մխիթարիմք յԱստուծոյ:

Զի որպէս առաւելեալ չարչարանքն Քրիստոսի 'ի մեզ, նոյնպէս և 'ի ձեռն Քրիստոսի առաւել լիցի և մխիթարութիւնն մեր: Զի եթէ նեղիմք, վասն ձերոյ մխիթարութեան և փրկութեան. և եթէ մխիթարիմք, վասն ձերոյ մխիթարութեան եւ փրկութեան. որ յաջողեալն է համբերութեամբ նոյնին չարչարանաց, զոր և մեքն չարչարիմք.: և յոյսն մեր հաստատուն է վասն ձեր. քանզի գիտեմք՝ եթէ որպէս կցորդ եմք չարչարանացն՝ նոյնպէս և մխիթարութեանն:

Քանզի ոչ կամիմ տգէտս լինել ձեզ եղբարք՝ վասն նեղութեան մերոյ եղելոյ յԱսիա. զի առաւել քան զկար մեր ծանրացաք, մինչեւ անյոյս լինելոյ մեզ եւ 'ի կենաց:

Այլ անձամբ յանձինս զվճիռ մահու ընկալաք · զի մի յանձինս ապաստանիցիմք, այլ յԱստուած՝ որ յարուցանէ զմեռեալս · որ յայնպիսի մահուանէ փրկեաց զմեզ՝ և փրկեսցէ · քանզի յուսացեալ եմք, եթէ տակաւին փրկեսցէ օգնականութեամբ աղօթից ձերոց վասն մեր ։

Ալէլուիա ալէլուիա ·

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի · ձայնիւ իմով առ Աստուած, և նայեցաւ առ իս ։

Ալէլուիա Օրթի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա · ամէն ամէն ասեմ ձեզ · ոչ կարէ Որդի մարդոյ առնել յանձնէ եւ ոչ ինչ, եթէ ոչ տեսանիցէ զՀայրն զի առնէ · զի զոր նայն առնէ, զնոյն եւ Որդին նմին նման գործէ ։

Զի Հայր սիրէ զՈրդի, եւ զամենայն ինչ ցուցանէ նմա՝ զոր ինքն առնէ. եւ մեծամեծս եւս քան զսոյնս ցուցանէ նմա զգործս, ընդ որ դուքդ զարմանայք։

Զի որպէս Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ, նոյնպէս եւ Որդի զորս կամի կենդանի առնէ։

Եւ ոչ եթէ Հայր դատի զոք, այլ զամենայն դատաստանն ետ Որդւոյ իւրոյ. զի ամենեքեան պատուեսցեն զՈրդի, որպէս պատուեն զՀայրն, որ ոչ պատուէ զՈրդին, ոչ պատուէ զՀայր զառաքիչն նորա։

Քարոզ։

Վասն ուղղելոյ զգնացս մեր 'ի ճանապարհըս խաղաղութեան՝ զՏէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։

Վասն ցրելոյ 'ի մէնջ զամենայն խորհուրդս չարին՝ զՏէր աղա։

Վասն պարգեւելոյ մեզ առողջ խորհուրդս և առաքինի վարս՝ զՏէր աղա։

Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյն իւրոյ՝ զՏէր աղա։

Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղվաղակի ընդ ոտիւք մերովք՝ զՏէր աղա։

վասն հոգւոցն հանգուցելոց՝ որք ճշմա-
րիտ և ուղիղ հաւատով ՚ի Քրիստոս ննջե-
ցին՝ զՏէր աղաչ։

Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ։
Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Աղօթք։

Աստուած հոգւոց և ստեղծիչ մարմնոց. որ զմահ խափանեցեր՝ և զսատանայ կո-
խեցեր. և աշխարհի կեանս պարգևեցեր։
Հանգո զհոգի ծառայիս քո ՚ի տեղւոջ լու-
սոյ՝ և ՚ի տեղւոջ հանգստեան, ուստի փա-
խուցեալ են ամենայն ցաւք և տրտմու-
թիւնք և հեծութիւնք։ Եւ ամենայն մե-
ղաց առ ՚ի սմանէ գործելոց ներումն ա-
րասցես, եթէ բանիւ՝ և եթէ գործով
և եթէ մտածութեամբ. Դու որպէս բա-
րերար և ողորմած և մարդասէր Աստ-
ուած՝ թողութիւն շնորհեա սմա։ Վասն
զի ո՞վ է մարդ՝ որ կեցցէ և ոչ մեղիցէ.
զի դու միայն ես առանց մեղաց. և ար-
քայութիւն քո՝ արքայութիւն յաւիտե-
նից՝ որ ոչ անցանէ. և բանք քո ճշմարիտ
են. և դու ես կեանք և յարութիւն ա-

մենայն ննջեցելոց. եւ քեզ ընդ Հօր եւ Սուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Խաղաղութիւն ամենեցուն:

Ամենակալ Տէր, որ բարերարութեամբ քով զաշխարհս արարեր. եւ ստեղծեր զմարդն 'ի հողոյ, և եդեր զնա 'ի կեանս և 'ի փառաբանութեան քում. և լցուցեր զնա բարւոք պարգեւօք՝ եւ առատ ողորմութեամբ քով: Իսկ նա խաբեալ 'ի չարէն՝ արտաքսեցաւ 'ի դրախտէն՝ եւ անկաւ յերկիր մահու, և զանիծաբեր կեանըս ժառանգեաց: Այլ դու ողորմած Տէր՝ ոչ անտես արարեր զնա 'ի խնամոց գթութեան քո, այլ դարձեալ անդրէն առ քեզ դարձուցեր, եւ հանգուցեր 'ի հանգիստ կամաց քոց:

Վասն որոյ աղաչեմք զքեզ Հայր երկնաւոր՝ 'ի վերայ ամենայն ննջեցելոց, մանաւանդ որ այժմ հանգուցեալս է. ընկալ զհոգի սորա խաղաղութեամբ, եւ հանգո ընդ սուրբս քո: Եւ մեք գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Որդւոյ եւ ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւի:

Ե— ապա առ Շարական.

Դկ. Աստուած անեղ անժամանակ, Հայր անըսկիզբն եւ անքանակ. Որդւոյ պատճառ ծննդեամբ անճառ, Հոգւոյն բըղխմամբ անքըննաքար. աղաչեմք ըզքեզ գըթած՝ երկայնամիտ և ողորմած, ողորմեա քո ստեղծուածոյս՝ 'ի քեզ յուսով
նըննջեցելոյս:

Բանդ որ 'ի ծոց Հօր միածին, և կերպարան սկըզբնատըպին, որով երկինք գոյացան, աշխարհ լըրիւ հաստատեցան. հայցեմք 'ի քէն Տէր և փըրկիչ, ամենողորմ
և կեցուցիչ. ողորմեա քո ստեղծ:

Դձ. Արարիչ և մարդասէր անոխակալ եւ բարեգութ, որ գովիս 'ի սըրովբէից Տէր դատաւոր արդարութեան. ընդ սրբոց Առաքելոց Տէր պըսակեա զմեր ննջեցեալսն. ողորմած Տէր ողորմեա հոգւոցըն
մեր ննջեցելոց:

Հոգւոցն հանգուցել: Վասն հանգ: Քրիստոս Որդի Ա.:
Հայր մեր որ յերկինս:

### Տօնին յԸնծայելին և այլն.

### Շարական, գկ.

Հանգ. Բանդ Աստուած որ ի ծոց Հօր, վասն մերոյ փրկութեան ի յերկնից խոնարհեցար, զի զմեզ նորոգեսցես ի կեանս. Աստուած հարցըն մերոց։

Որ հանդերձեալ ես գալ փառօք Հօր զարթուցանել զննջեցեալըն ի սուրբ անուանըդ քո. նորոգեա եւ ըզմեր ննջեցեալսն Աստուած հար։

Անմահութեանց տուող Քրիստոս եւ պարգեւիչ կենդանութեան, ի միւսանգամ գալստեանն և յաշխարհական անտեղին թողութիւն շնորհեա մեր ննջեցելոցն. Աստուած հար։

Որ նըստիս ընդ աջմէ Հօր ծնողի իւրոյ. և մարդասիրապէս խընամէ զարարածըս. բարձր արա։

Որ զհողացեալ բնութիւն մարդկան նորոգէ իւր աստուածութեամբն, եւ կենագործէ ի կեանս անմահ. բարձր։

Յանըսկըզբնական ծոցոյ Հօր խոնարհեալ բանըդ մարմնացար ի Կուսէն վասըն

փրկութեան մերոյ , աղաչեմք ըզքեզ .
զնընջեցեալսըն մեր 'ի քեզ ուղիղ հա-
ւատով յիշեա Տէր յորժամ գաս Թա-
գաւորութեամբըդ քո ։

Անոխակալ քաղցրութեամբ Որդի Աստու-
ծոյ , հաճեցար բառնալ ըզմեղս աշխարհի
քո խաչելութեամբն . աղա ։

Կամաւորական մահուամբ քո լուծեր
զերկունըս մահու , եւ արժանի արարեր
Թողութեան յանցանաց քաւիչ քո ա-
րեամբ . աղա ։

Որ փոխանակ մեղաւորաց ըզմեռանիլ
յանձն առեր . կենդանելով 'ի դըժոխըս փըր-
կեցեր 'ի մեղսասէր բանտէն ըզգերեալ-
սըն . աղա ։

Բարեբանեմք զանչափ քո զմարդասիրու-
Թիւնդ , որ երեքօրեայ յարուցեալ զկեն-
դանութիւն պարգեւեցեր աշխարհի . ա ։
Տէր . Լոյս 'ի լուսոյ զմեզ լուսաւորեա ,
որ փառօք Հօր հանդերձեալ ես գալ 'ի
դատել զերկիր . արժանաւորեա և ըզմեր
ըզնըննջեցեալսն անճառ խոստմանց քոց
ընդ սուրբըս քո ։

Հօր և Հոգւոյ համագոյակից, 'ի տիեզե-
րական անհեղ ատենին արժա։

Երկնի և երկրի արդար դատաւոր, յոր-
ժամ հատուցանես ըստ գործոց իւրա-
քանչիւրոց, արժա։

Մեծ. Լեառըն վիմածին, աղբիւր յոր-
դառատ, բարունակ ծաղկեալ, այգի
վայելուչ, սրովբէ հողեղէն. րաբունց
բանին տուն անօրէնութեան, տաղա-
ւար Հոգւոյն. առ ծընեալն 'ի քէն միշտ
բարեխօսեա անդադար հայցմամբ շնոր-
հել զթողութիւն մեր ննջեցելոցն։

Փափկութեան դրախտին բացող բանա-
լի. Քրիստոսի բարձող նըմանող երկնից,
սափոր ոսկեղէն լի մանանայիւ, գաւա-
ղան ծաղկեալ յարմատոյն Յեսսեայ, տա-
ճար լուսոյ մայր. առ ծըն։

Ցօղ քաղցրածաւալ, ցանկալի զուարթ-
նոցն, նիւթեղէն սրովբէ. գեղ մարգար-
տափայլ, հիմն Եկեղեցւոյ. մաքուր ա-
ղաւնի, ամպ հովանաւոր սուրբ կուսի Մա-
րիամ. առ ծընեալն 'ի քէն միշտ բարե-
խօսեա անդադար հայցմամբ շնոր։

Խաչ. Ո՛վ պահապան որ ծա՛գեցար յԵդե-մայ, նշան յաղթութեա՛ն ընդդէմ աներեւոյթ թշնամւոյն.

Դու փակելո՛յ դրախտի՛ն բացող եւ ա՛ռաջ-նորդ ա՛ւազակին. որ զբոցեղէ՛ն սուրըն կա՛պտեա՛ց ա՛նեղին հրամանաւ.

Փառք Հօր եւ Որդւոյ եւ. Այժմ եւ միշտ եւ.

Քեւ ցընծա՛ն ըստորայինքս ամենայն ՚ի միւսանգամ քո գա՛լըստեանն. եւ յաւէժ զուարճանա՛ն դասք ա՛նմարմնոցն ա՛ռ-էի՛ցս.

Ալէլուիա ալէլուիա.

Երանի ամենեցուն որ բնակեալ են ՚ի տան Տեառն, յաւիտեանս յաւիտենից օրհնես-ցեն զնա.

Որպէս սիրելի են յարկք քո Տէր զօրու-թեանց, ցանկայ եւ փափագի անձն իմ ՚ի գաւիթս քո.

Պօղոսի առաքելոյն ՚ի Թեսաղոնիկեցւոց առաջին Թղթոյն է ընթերցուածս.

Ոչ կամիմ եղբարք՝ եթէ տգէտք իցէք վասն ննջեցելոցն. զի մի՛ տրտմիցիք որպէս եւ այլքն որոց ոչ գոյ յոյս.

Եթէ հաւատամք՝ եթէ Յիսուս մեռաւ և յարեաւ. նոյնպէս և Աստուած զննջեցեալսն ՚ի ձեռն Յիսուսի ածցէ ընդ նմա։ Բայց զայս ասեմք Տեառն բանիւ, թէ մեք որ կենդանիքս եմք մնացեալք՝ ՚ի գալըստեանն Տեառն ոչ ժամանեմք ննջեցելոցն։ Զի ինքն Տէր հրամանաւ ՚ի ձայն հրեշտակապետի, և ՚ի փող Աստուծոյ իջանէ յերկնից. եւ մեռեալք ՚ի Քրիստոս՝ յարիցեն յառաջագոյն։

Ապա եւ մեք որ կենդանւոյն մնացեալ իցեմք, նոքօք հանդերձ յափշտակիցուք ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. և այնպէս յամենայն ժամ ընդ Տեառն լինիցիմք։ Այսուհետեւ մխիթարեցէք զմիմեանս բանիւքս այսոքիւք։

Ալէլուիա ալէլուիա.

Բարձր առնեմ զքեզ Տէր զի ընկալար զիս. և ոչ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս։

Ալէլուիա Օրթի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիրպագութեամբ լուարուք։

Որոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ։

Ամէն ամէն ասեմ ձեզ. եթէ ոչ հատն ցորենոյ անկեալ յերկիր մեռանիցի ինքն միայն կայ. ապա եթէ մեռանիցի, բազում արդիւնս առնէ։

Որ սիրէ զանձն իւր՝ արձակէ զնա. եւ որ ատեայ զանձն իւր յաշխարհիս յայսմիկ, 'ի կեանսն յաւիտենականս պահեսցէ զնա։

Եթէ ոք զիս պաշտեսցէ, զկնի իմ եկեսցէ. և ուր եսն եմ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի։

Եթէ ոք զիս պաշտեսցէ, պատուեսցէ զնա Հայրն իմ։

Քարոզ։

Վասն հրաժարելոյ անձանց ննջեցելոց՝ զՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա։

Վասն քաւութեան մեղաց և թողութեան յանցանաց սորա եւ մեր՝ զՏէր աղա։

Վասն առաջնորդելոյ սմա յանստուեր օթեւանս, զոր պատրաստեաց Որդին մի-ածին 'ի տան Հօր իւրոյ՝ զՏէր աղա։

Վասն լսելոյ սմա զձայն կենարար փողոյն. և վերանալ ընդ առաջ Փրկչին՝ զՏէր աղա։

Վասն արժանի լինելոյ սմա դասիլ յաջա-
կողմեան դասուն՝ կՏէր աղա։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ։

Տէր ողորմեա․ Տէր ողորմեա․ Տէր ողորմեա։

Աղօթք։

Որ Թագաւորդ ես յաւիտենից Քրիստոս Աստուած եւ եւս, եւ առնես զամենայն ինչ ողորմութեամբ առաւել քան զոր խնդրեմք եւ իմանամք․ որ զամենայն ինչ 'ի բարի մատակարարեցեր որդւոց մարդկան։ Ընկալ զհոգի ծառայիս քո այսորիկ, և հանգո ընդ սուրբս քո՝ որք 'ի սկզբանէ հաճոյ եղեն քեզ․ Ընկալ զսա ընդ արդարս քո, եւ 'ի խորանս սիրողաց քոց բնակեցո զսա։ Եւ եթէ մարդկօրէն ինչ յանցեալ իցէ սորա՝ բանիւ, կամ գործով, կամ մտածութեամբ, դու որպէս մարդասէր և բարերար Աստուած՝ թողութիւն շնորհեա սմա․ եւ զմեր ամենեցուն ելս յերկրէ աստի՝ խաղաղութեամբ յաջողեա, լինել ժառանգորդ երկնից արքայութեանդ։ Զի յամենայնի փառաւորեացուք զքեզ ընդ

Հօր և Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յա-
ւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Գթած եւ մարդասէր Աստուած՝ հանգո զհոգի ծառայիս քո այսորիկ յօթևանս արդարոց, և զմեր հաւատոյ քրիստոնէութեան առանց մեղաց պարգևեա կատարել, հաստատելով զմեզ յամենայն գործս բարիս, շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Ընդ որում Հօր և Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Հոգւոյն հանգուցեալ։ Վասն հանգ։ Քրիստոս Որդի Աս։
Հայր մեր որ յերկինս։

---

Տանին 'ի գերեզման, ասելով. Տեսեալ զքեզ մահու։ Ես ասացի. մինչ մերձենան 'ի գերեզման, հանգիստ տանին և ասեն։

Ալէլուիա ալէլուիա.

Զճանապարհս իմ ուղիղ արա ինձ ըստ բանի քում, եւ մի տիրեսցեն ինձ ամենայն մեղք։

Ալէլուիա Օրթի.

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։
Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Յայնմ ժամանակի պատասխանի ետ Յիսուս՝ եւ ասէ. գոհանամ զքէն Հայր՝ Տէր երկնի և երկրի. զի ծածկեցեր զայս յիմաստնոց և 'ի գիտնոց, և յայտնեցեր տղայոց. այո՛ Հայր. զի այսպէս հաճոյ եղեւ առաջի քո։

Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ։ Եւ ոչ ոք ճանաչէ զՈրդի եթէ ոչ Հայր. և ոչ զՀայր ոք ճանաչէ՝ եթէ ոչ Որդի, և ում Որդին կամի յայտնել։

Եկայք առ իս ամենայն վաստակեալք եւ բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ. առէք զլուծ իմ 'ի ձեզ, և ուսարուք յինէն զի հեզ եմ եւ խոնարհ սրտիւ. եւ գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է. և բեռն իմ փոքրոգի։

Հոգւոցն հանգուցելոց։ Վասն հանգ։ Քրիստոս Որդի Ա..։

## Եւ Երրորդ ի Գերեզմանն աւուրն .

### Շարական , ԴՁ .

Հանգ . Մերձեցայ ես ՚ի դուռըն գերեզմանի , եւ եհաս ինձ ժամանակ մտանել ՚ի յարգանդ երկրի յորմէ ստեղծեալ եմք ամենեքեան . բըժիշկ իմաստուն և ճարտարապետ , բըժըշկեա զհոգւոյ իմ զհիւանդութիւն . արարող և յոյս փրկութեան մերոյ ։

Եղիցի ձեռըն քո պահապան անձին իմոյ . եւ աջ քո բարի առաջնորդեսցէ ինձ ՚ի յարդարութիւն . բըժիշկ ։

Բըղխեսցես առ իս ըզգութ մարդասիրութեանդ . եւ յաղբերէդ կենաց լըւասցես զմեղս անձին իմոյ . բըժիշկ ։

Կեցցէ անձն իմ օրհնեսցէ ըզքեզ զամենայն աւուրըս կենաց իմոց . և առ քեզ ապաւինիմ հովիւ բանաւոր հօտի . դարձո զմոլորեալս ՚ի հօտ քո Քրիստոս . բըժիշկ իմաս ։

Մեծ . Ըզքեզ օրհնութեամբ մեծացուցանեմք ։

Որ զԲանն Աստուծոյ յարգանդի կրեցեր Սրբուհի անարատ, և անճառապէս ծնար զվերամձգողն երկնից. զքեզ օրհնութեամբ մեծաւ:

Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալոյ ՚ի քո գիրկս. և արեգականն արդարութեան եղեր արեւելք. զքեզ օրհնութեամբ մեծաւ:

Խաչ. Զօրութիւն Սուրբ Խաչի քո Քրիստոս որ կանգնեցեր ՚ի փրկութիւն աշխարհի. սա պահեսցէ զմեզ յամենայն փորձութենէ:

Քանզի ՚ի սմա բարձրացար Աստուած, և ՚ի սմա հեղեր զպատուական սուրբ զարիւնդ. սա:

Փառք Հօր և Որդւոյ և:

Եւ զքո միւսանգամ զգալուստդ նշանաւ Խաչի քո ցուցեր աշխարհի. սա պահեսցէ զմեզ յա:

Եւ հասեալ ՚ի գերեզման ասեն.

Դարձ անձն իմ ՚ի հանգիստ քո զի Տէր կոչեաց զքեզ:

Միրեցի՛ զի լուիցէ Տէր զձայն աղօթի՛ց իմոց . զի խոնարհեցո՛յց զունկն իւր առ իս .
և ես յաւուրս իմ կարդացի՛ առ նա ։

Շրջեցա՛ն զինեւ երկունք մահու . և վիշտք
դժոխոց գտի՛ն զիս ։

Զնեղութի՛ւն և զանձկութիւն գտի , և զա-
նուն Տեառն կա՛րդացի ։

Ո՛ Տէր փրկեա զանձն իմ . ողորմած Աստուած մեր , ողորմի՛ եւ պահէ զտղա՛յս
Տէր ։

Ե՛ս խոնարհ եղէ՝ և Տէր կեցո՛յց զիս ։

Դա՛րձ անձն իմ 'ի հանգիստ քո՛ , զի Տէր
կոչեա՛ց զքե՛զ ։

Պօղոսի առաքելոյն 'ի Կորնթացւոց առաջին
թղթոյն է ընթերցուածս ։

Ապա եթէ Քրիստոս քարոզի թէ 'ի մեռելոց յարուցեալ է , զիա՞րդ ասեն ոմանք 'ի ձէնջ՝ եթէ յարութիւն մեռելոց չիք . եթէ յարութիւն մեռելոց չիք , ապա եւ Քրիստոս չէ յարուցեալ . եւ եթէ Քրիստոս չիցէ յարուցեալ , ընդունայն է քարոզութիւնն մեր . ընդունայն են եւ հաւատքն ձեր . եւ գտանիցիմք սուտ վկայք

Աստուծոյ, զի վկայեցաք զԱստուծոյ՝ եթէ յարոյց զՔրիստոս. զոր ոչն արդեօք յարոյց՝ եթէ մեռեալք ոչ յառնեն։

Իսկ եթէ մեռեալք ոչ յառնեն, ապա և Քրիստոս չէ յարուցեալ. և եթէ Քրիստոս չիցէ յարուցեալ, ընդունայն են հաւատքն ձեր. և տակաւին ՚ի նմին մեղս կայցէք։

Իսկ արդ՝ որ ննջեցինն ՚ի Քրիստոս, կորեա՞ն արդեօք. եթէ այսու կենօքս միայն յուսացեալ եմք ՚ի Քրիստոս, ապա ողորմելի եմք քան զամենայն մարդիկ։

Այլ արդ՝ Քրիստոս յարուցեալ է ՚ի մեռելոց, առաջին պտուղ ննջեցելոց. քանզի մարդով եղեւ մահ, եւ մարդով յարութիւն մեռելոց. որպէս Ադամաւ ամենեքին մեռանին, նոյնպէս եւ Քրիստոսիւ ամենեքին կենդանասցին, իւրաքանչիւր յիւրում կարգի. նախ՝ Քրիստոս, և ապա Քրիստոսեանք ՚ի գալստեան նորա. և ապա կատարած։

Ալէլուիա ալէլուիա.

Տէր լուր աղօթից իմոց. աղաղակ իմ առ քեզ եկեսցէ. եւ մի դարձուցաներ զերեսս քո յինէն.

Ալէլուիա Օրհի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիրպագութեամբ լուարուք ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։
Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ ։

Ամէն ամէն ասեմ ձեզ. զի որ զբանն իմ լսէ, եւ հաւատայ այնմ որ առաքեացն զիս, ընդունի զկեանսն յաւիտենականս. եւ 'ի դատաստան ոչ մտանէ, այլ փոխեցաւ 'ի մահուանէ 'ի կեանս ։

Ամէն ամէն ասեմ ձեզ, զի գայ ժամանակ՝ և արդէն իսկ է. յորժամ մեռեալք լսիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ. և որք լսիցենն կեցցեն .

Զի որպէս Հայր ունի կեանս յանձին իւրում, նոյնպէս ետ և Որդւոյ ունել կեանս յանձին իւրում ։

Եւ իշխանութիւն ետ նմա դատաստան առնել. եւ զի Որդի մարդոյ է, ընդ այն զի՞ զարմանայք ։

Զի եկեսցէ ժամանակ՝ յորում ամենեքին

որ 'ի գերեզմանս կայցեն, լուիցեն ձայնի նորա․ և ելիցեն արտաքս․ որոց զբարիս գործեալ իցէ՝ 'ի յարութիւն կենաց, եւ որոց զչար արարեալ իցէ՝ 'ի յարութիւն դատաստանաց։

Ոչ կարեմ ես յանձնէ առնել եւ ոչ ինչ․ այլ որպէս լսեմ՝ դատիմ, և դատաստանն իմ արդար է․ զի ոչ խնդրեմ զկամս իմ, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեաց զիս։

Քարոզ։

Վասն ուղղելոյ զգնացս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան՝ զՏէր աղաչեսցուք․ Տէր ողորմեա։

Վասն ցրելոյ 'ի մէնջ զամենայն խորհուրդս չարին՝ զՏէր աղա։

Վասն պարգեւելոյ մեզ առողջ խորհուրդս և առաքինի վարս՝ զՏէր աղա․

Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյն իւրոյ՝ զՏէր աղա։

Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղվաղակի ընդ ոտիւք մերովք՝ զՏէր աղա։

Վասն հոգւոցն հանգուցելոց՝ որք ճշմարիտ և ուղիղ հաւատով 'ի Քրիստոս ննջեցին՝ զՏէր աղա։

Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու ։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ ։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛ ։

Աղօթք ։

Աստուած հոգւոց և ստեղծիչ մարմնոց. Տէր ես կենդանեաց՝ եւ յարութիւն մեռելոց. տուիչ ես բարեաց՝ և մխիթարիչ ամենայն վշտացելոց, եւ հանգուցիչ՝ հաւատով 'ի քեզ ննջեցելոց ։ Զոր ժողովեցեր ճշմարտութեամբ քով 'ի կոչումն հաւատոյ, եւ խոստացար հաւատացելոց քոց զհանգիստն յաւիտենական կենացն անվախճանից ։ Քանզի շնորհեցեր նախահօրն մերում զանմահական կեանս, և կացուցեր զնա 'ի վերայ ամենայն ձեռակերտաց քոց, եւ զամենայն ինչ հնազանդ արարեր 'ի ներքոյ ոտից նորա. և 'ի ձեռն յանցանացն նորա կոչեցեր զնա յերկիր ուստի առաւ ։ Եւ դարձեալ խոստացար 'ի ձեռն գալստեան միածնի քո յաշխարհս՝ անճառելի խոստմամբ՝ յարուցանել զմեռեալս, և ասել ամենակարող և հզօր բանիւ քով, եկայք առ իս ամենայն աշխատեալք և ծանրաբեռինք, և ես հանգու-

ցից զձեզ։ Հանգո Տէր Աստուած մեր՝ զհոգի ծառայիս քո ըստ բանից այդորիկ․ եւ գրեա զսա 'ի գիր հանգստեան փառաւոր արքայութեան քո․ եւ պարգեւեա սմա մասն և բաժին 'ի խորանսդ յաւիտենականս։ Եւ եթէ մարդկօրէն մեղուցեալ ինչ իցէ սորա 'ի յանցանս աշխարհիս այսորիկ․ անըլախձան քո բանիւդ թողութիւն շնորհեա սմա․ և յամենայն մեղաց և 'ի սնոտի խաբէութեանց զհոգի սորա ազատեա․ և զամենայն ժողովուրդս քո օրհնեա։ Զի 'ի բերանոյ ամենայն արարածոց քոց փառաւորի ամենասուրբ տէրութիւն քո, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Արդ՝ խնդրեմք 'ի քէն Թագաւոր Թագաւորաց եւ տէր տերանց, յորժամ գաս Քրիստոս, եւ երեւիս մեծութեամբ քով․ գունդք հրեշտակաց եւ զօրութիւնք առաջի քո ընթանան։ Գաս հրացմամբ եւ ձայնիւ փողոյ, զարթուցանես զննջեցեալսն, յարուցանես զմեռեալս, կանգնես զգլորեալս, բժշկես զվիրաւորեալս․ գաս

բոցով, և դատիս անշէջ հրով։ Ծագիս ՚ի վերուստ յարեւելից կողմանէ, եւ սուրբ Խաչն առաջի քո. յայտնեալ երեւիս յերկրի, և հատուցանես իւրաքանչիւր ումեք. Բանին դպրութիւնք. կարգին աթոռք. լինի ահեղ դատաստան. դնին կշիռք արդարութեան, եւ ընդունի իւրաքանչիւր ըստ գործոց իւրոց. վկայքն պսակին ըստ ճգնութեանցն, եւ մեղաւորքն տանջին ըստ յանցանացն։ Դատես զխաչեցողսն, տանջես զմեղաւորսն. պապակին ուրացողքն։ Յայնժամ յայտնին կառք հրեղէնք յերկնից. լինի ձայն փողոյ մեծի. ընթանան զօրութիւնք. սարսափին հրեշտակք. փայլատակի հուր. խաւարի արեգակն, եւ լուսին. թօթափին աստեղք. խառնակին ամպք. ցամաքի ծով. հիանան արարածք ամենայն։ Ուրախանան բարիքն, եւ ողբան չարքն. բերկրին երկրպագուքն Քրիստոսի. եւ հառաչեն ուրացողքն։ Պսակքն յայտնին, եւ կուսանքն խնդան, առագաստն զարդարի և իմաստուն կուսանքն պատրաստք մտանեն ճրագունք վառեալք։ Իսկ յիմար կուսանքն դատարկացեալք. ճրագք անցեալք. գլուխք

խոնարհեալք, սիրտք տրտմեալք, ոգիք լքեալք եւ տարակուսեալք հալածին 'ի ձայնէն Թագաւորին որ ասէ, Թէ ոչ գիտեմ զձեզ: Խնդան աջակողմեանքն, եւ լան ձախակողմեանքն. խայտան օդիքն, և մերժին այծիքն յերեսաց Տեառն. լոյսն պայծառանայ, եւ խաւարն նուաղի. դժոխքն աղաղակէ, եւ սատանայ յամօթ լինի. ցանկութիւնն անցանէ, եւ որդն ոչ մեռանի: Յայնժամ բարերար եւ մարդասէր Տէր՝ յորժամ այս ամենայն կարգի 'ի քումմէ մեծութենէդ, յիշեա զհոգի ծառայիս քո այսորիկ, եւ դասաւորեալ պայծառացո ընդ սուրբս քո յարքայութեանդ երկնից: Եւ զամենայն զոր ինչ մեղուցեալ իցէ սորա՝ բանիւ, կամ գործով, կամ մտածութեամբ, զկամայ և զակամայ, զգիտութեան և զանգիտութեան, ներեա և թող սմա քոյով մարդասիրութեամբդ, վասն զի ո՞վ է մարդ որ կեցցէ եւ ոչ մեղիցէ. զի դու միայն ես առանց մեղաց. և արքայութիւն քո՝ արքայութիւն յաւիտենից որ ոչ անցանէ: Եւ քեզ վայելէ փառք և իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւի:

Ապա Քահանայն առ մի հող առեալ ՚ի յերան
խաչակնքէ, և ասէ․

Օրհնեա ☩ Տէր՝ ողորմութեամբ քով զհողս ծառայիս քո այսորիկ, և յիշեա զսա․ զի հող էր՝ եւ անդրէն ՚ի հող դարձաւ ըստ հրամանի քում։ (Երիցս նշնէ)։

Ապա ձգէ զհողն ՚ի գերեզմանն, և ասէ․

Օրհնութիւնն աստուածային իջցէ ՚ի հող մահու սորին․ և բուսուսցէ յօրն վերջին․ անուամբ Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ․ այժմ և միշտ և յաւի ։

Շարական․

Մերձեցայ ես ՚ի դուռըն գերեզմանի․
(Տես յերես 279)։

Ապա էջուցանէն զննջեցեալն ՚ի գերեզմանն։

Ալէլուիա ալէլուիա․

Տէր հովուեսցէ զիս և ինձ ինչ ոչ պակաս եսցի։

Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս․ և առ ջուրս հանգստեան սնոյց զիս։

Դարձոյց զանձն իմ առ իս, եւ առաջնոր-

դեաց ինձ 'ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ։

Թէպէտ և գնայցից ես 'ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց 'ի չարէ. զի դու Տէր ընդ իս ես։

Ցուպ քո եւ գաւազան՝ նոքա մխիթարեսցեն զիս։

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան՝ ակն յանդիման նեղչաց իմոց։

Օծեր իւղով զգլուխ իմ. բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս։

Ողորմութիւն քո Տէր, զհետ իմ եկեսցէ զամենայն աւուրս կենաց իմոց. բնակիլ ինձ 'ի տան Տեառն ընդ երկայն աւուրս։

Մաղթանք.

Տէր, ուղղեա զգնացս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան։ Տէր, ուղղեա և առաջնորդեա հոգւոյ մերոյ եւ ամենայն հաւատացելոց գնալ յարդարութեան ճանապարհն և 'ի կեանսն յաւիտենից։

Քարոզ։

Աղաչեսցուք զամենակալն Աստուած, զի յաջողեալ ուղղեսցէ զճանապարհս ծա-

ռայից իւրոց 'ի բարի և 'ի խաղաղութիւն. Ամենակալ Տէր Ա՜ մեր կեցո և ողորմեա։

Աղօթք.

Առաջնորդ կենաց և պարգևւիչ խաղաղութեան Քրիստոս Աստուած մեր, առաջնորդեա մեզ գնալ 'ի ճանապարհս քո արդարութեամբ և խաղաղութեամբ ժամանել 'ի նաւահանգիստն կենաց և փրկութեան շնորհօք ողորմութեան քո. զի դու ես օգնական և փրկիչ մեր. և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պա։

Խաղաղութիւն ամենեցուն.

Օրհնեալ ես Տէր Աստուած Փրկիչ մեր, որ յամենայն ժամ ընդ մեզ ես, և ոչ երբէք թողուս 'ի ձեռանէ քումմէ զայնոսիկ' որք հաւատով եւ ճշմարտութեամբ կարդան առ քեզ։ Աղաչեմք եւ խնդրեմք 'ի քէն Տէր, ճանապարհորդակից լեր ծառայից քոց' քոյին վերակացութեամբդ պահելով 'ի խաղաղութեան. եւ առաջնորդեա մեզ միւսանգամ խաղաղութեամբ եւ խնդութեամբ հասանել յիւրաքանչիւր բնակութիւնս 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր. որում վայելէ փառք իշխանութիւն

և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Եւ դարձեալ հող ձգէ, և ասէ.

Հող օրհնութեան իջցէ 'ի գերեզման սորին, և բուսուսցէ յօրն վերջին ։
( Երկէց՝ յերկնէ ):

Ապա ծածկեն հողով, և ասեն աղօթելով։

Ողորմած Աստուա՜ծ քաւեա՛ զանօրէնութիւնս իմ։
Հաւատ ունե՛լո՛վ հոգի՛ խաղաղութեա՛ն, ե՛րթ առ արարի՛չըն հայցելո՛վ, Աստուա՜ծ իմ հա՛նգո՛։
Ես ասացի՛ 'ի զարմանմա՛ն իմում, թէ ամենայն մարդ սուտ է՛։
Հաւատ ունե՛լո՛վ հոգի՛ խաղաղութեա՛ն, ե՛րթ առ արարի՛չըն հայցելո՛վ, Աստուա՜ծ իմ հա՛նգո՛։
Զճանապա՛րհս իմ ուղի՛ղ արա ինձ ըստ բանի՛ քո՛ւմ. և մի՛ տիրեսցեն ինձ ամենա՛յն մեղք ։
Հաւատ ունե՛լո՛վ հոգի՛ խաղաղութեա՛ն,

Ե՛րթ առ արարի՛չըն հայցելո՛վ, Աստուա՜ծ
ի՛մ հա՛նգո՛։

Որ ետո՛ւր հոգի Յիսո՛ւս, ըզսա պահեա՛
զի՛ քոյ խաչի՛ եւ Յարութեա՛նըդ հա՛ւա-
տա՜ց թագաւո՛ր երկնաւո՛ր, հանգո ըզ-
հո՛գի սորա՛ յի՛շելո՜վ սո՛րա զհաւա՛տս։

Ի՛ քաղա՛ք Տեառըն զօրութեանց եւ 'ի
քաղա՛ք թագաւո՛րին մեծի՛. ուր ժողովք
սըրբո՛ցն են 'ի խա՛ղաղութեան, գնա՛սցես
յուսո՛վ եւ հանգիցես ընդ հրե՛շտա՜կա՛ց
դա՛սս, տեսա՛նել ըզլո՜յսըն յաւի՛տենի՛ց։

Մե՛րձեցաւ անձն իմ 'ի հո՛ղ յորմէ ստե՛ղ-
ծե՛ր զի՛ս, եւ հոգւոյս մե՛կնեալ յինէ՛ն.
Տէ՛ր զապաւինեա՛լս յիշեա՜ 'ի քո՛ւմ գա-
լըստեա՛նն։

Ստե՛ղծուած եմ անարատ ձեռա՛ց քո՛ց մի՛
ա՛նտես առնե՛ր, այլ խնայեա՛ յիս յահա՛-
գին աւուրն. Տէ՛ր զապաւի։

Յո՛րժամ գա՛ս փառօք Հօր դատե՛լ ըզտիե-
զե՛րս ամենայն, և հա՛րկանի փո՜ղ հընչմա՛ն
յարութեա՛ն Տէ՛ր.

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Ընդ Քրի՛ստոսի պահելո՛վ յաղթո՛ղ լե՛ցո՛ւք

փորձողին. և ը՛նդ հրեշտա՛կս երգե՛սցուք. Փառք ՚ի բարձո՛ւնս Ա՜ստուծոյ։

Փա՛ռք ՚ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն ՚ի։

Փառք՝ պատիւ և երկրպա։

Եդի՛ն զիս ՚ի գբի ներքնումն ՚ի խաւարի և ՚ի ստուերս մա՜հո՛ւ։

Տէր Աստուա՛ծ փրկութեան իմոյ ՚ի տուէ կարդա՛ցի և գիշերի առա՜ջի քո՛յ։

Քարոզ։

Վասն ՚ի վերուստ սահմանութեան ՚ի Տեառնէ անձանց մերոց, եւ հաճոյական աղօթս առնելոյ՝ զՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա։

Վասն ընդունելոյ Տեառն Աստուծոյ ըզհոգի հանգուցելոյս ՚ի հանգստեան արդարոց՝ զՏէր աղա։

Վասն թողլոյ սմա զյանցանս զկամայ եւ զակամայ՝ զՏէր աղա։

Վասն արժանի լինելոյ սմա՝ խաղաղութեամբ և մեծաւ յուսով սպասել տեառնագալուստ փողոյն՝ զՏէր աղա։

Վասն քաղցրաբարբառ լսելոյ սմա զահա-
ւոր ձայնն որ ասէ, եթէ արիք՝ ահա գայ
Քրիստոս՝ զՏէր աղա։
Վասն համարձակապէս տեսանելոյ սմա
զանապական եւ զանստուեր լոյսն՝ զՏէր
աղաչես։
Վասն աչալրջութեամբ եւ առանց ամօ-
թոյ կալ սմա առաջի արդար դատաւորին
Քրիստոսի՝ զՏէր աղա։
Վասն տալոյ սմա տեղի 'ի հայրական խը-
նամոցն յաջակողմեան դասուն՝ զՏէր աղա։
Վասն լսելոյ սմա զերանաւէտ զձայնն,
եթէ եկայք օրհնեալք Հօր իմոյ 'ի տեղի
հանգստեան՝ զՏէր աղա։
Վասն պարգեւելոյ սմա զերկնային պսակն
կենաց և անմահութեան՝ զՏէր աղա։
Վասն հրեշտակի խաղաղութեան աւան-
դելոյ զհոգի սորա 'ի տեղի արդարոցն՝
զՏէր աղա։
Վասն առաքման շնորհաց մեծի՝ եւ ամե-
նազօր աջոյն Քրիստոսի 'ի հողանիւթեայ
յարկ տապանի սորա՝ զՏէր աղա։
Վասն կնքելոյ զգերեզմանս զայս նշանաւ
խաչին իւրոյ մինչեւ 'ի գալուստն իւր սուրբ՝
զՏէր աղա։

Վասն առաքելոյ զշնորհս Հոգւոյն Սրբոյ
'ի սիրտ լսողաց հաւատացելոց անուան
իւրոյ՝ զՏէր աղա։
Վասն մխիթարելոյ զվշտագնեալս սրտիւք
'ի ձեռն ողորմութեան իւրոյ՝ զՏէր աղա։
Վասն պահելոյ զմնացորդս սորա յամենայն
հնարից սատանայի՝ զՏէր աղա։
Վասն հոգւոյն հանգուցելոյ՝ որք ճշմարիտ և ուղիղ հաւատով 'ի Քրիստոս ննջեցին՝ զՏէր աղա։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ։

Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր, որ ըստեղծեր զմարդն հող յերկրէ, և փչեցեր յերեսս նորա շունչ կենդանի, լինելով նմա կամօք քո 'ի հոգի կենդանարար. եւ եդեր զնա 'ի դրախտին փափկութեան գործել զնա եւ պահել։ Եւ յանցանել նորա զպատուիրանաւ քով՝ հանեալ եդեր զնա արտաքոյ դրախտին փափկութեան յերկիր ուստի առաւ, մատնելով զնա տաժանա-

ւոր և ախտալից կենցաղոյս այսորիկ. և եդեր սահման ասելով. հող էիր՝ և 'ի հող դարձցիս :

Եւ այժմ Տէր բարերար՝ ընկալ զծառայս քո զայս, որ ելից զժամանակ պանդխտութեան իւրոյ 'ի վերայ երկրի. և ըստ հրամանի քում եմուտ 'ի յարգանդ երկրի, յորմէ ծնանելոց է վերստին 'ի կեանս անմահականս : Եւ այժմ Տէր Աստուած մեր՝ ձգեա զպահպանողական աջ քո, և կնքեա զտեղի հանգստեան սորա. զի եղիցին 'ի զգուշութեան և 'ի պահպանութեան ոսկերք սորա իբրև զգանձս պատուականս առաջի աստուածութեանդ քո. և մի իշխեսցէ մերձենալ 'ի սա թշնամին երևելի կամ աներևոյթ : Եւ զհոգի սորա զոր աւանդեցեր 'ի ձեռն հրեշտակի քո՝ մերձեցո առ սուրբ փառս աթոռոյ քո, ընդ այլ պայծառացեալ հոգիսն ցնծալ պարել և զուարճանալ շուրջ զարքունական աթոռովդ. մինչեւ յօր կրկնակի կենսաբեր գալստեան քո յերկնից՝ փառօք Հօր, և ամենայն հրեշտակօք սրբովք : Յորժամ գաս 'ի նորոգել և կանգնել զանկեալ և զկործանեալ պատկերս քո, այցելութեամբ այց արա Տէր,

ծառայիս քո այսորիկ. և հան սմա մասն և բաժին յարքայութեանդ երկնից ընդ այնոսիկ՝ որք սիրեցին զքեզ յամենայն սըրտէ, եւ յամենայն զօրութենէ իւրեանց։ Զի յամենայնի մեծացեալ և փառաւորեալ եղիցիս Տէր մեր Յիսուս Քրիստոս՝ ընդ Հօր և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Խաղաղութիւն ամենեցուն։

Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ, կենդանի եւ կենդանարար, կերպարան եւ կնիք Հօր. որ վասն նախաստեղծին քո Ադամայ անկելոյն յանցանօք 'ի փառակենցաղ դրախտէն, կամաւ Հօր եւ հաճութեամբ Սուրբ Հոգւոյն խոնարհեցար յերկնից՝ եւ իջեր յերկիր, եւ առեր մարմին 'ի սրբոյ Կուսէն. խաչիւ և անապական արեամբդ քով զհնացեալս մեղօք վերստին նորոգեցեր. որպէս զի ստեղծուածն առաջին որ առանց ապականութեան էր, 'ի հանդերձեալ յարութեանն մեռելոց՝ երեւեցի փառօք։ Զի դու ինքնին Տէր վասն մերոյ փրկութեան իջեր 'ի գերեզման. աւերեցեր զդժոխս. ողորմելով արգելեալ հոգ-

ւոյն 'ի նմա . լուծեր զերկունս մահու թաղմամբ քով . եւ աստուածաչքանչ յարութեամբ քով ազատութիւն եւ նորոգութիւն շնորհեցեր յուսացելոցս 'ի քեզ։ Եւ այժմ դու նոյն ինքն Տէր Աստուած մեր՝ գթա 'ի մեղուցեալ ծառայս քո . որ վախճանեալ զերկրաւոր զկեանսն իւր ։ Եւ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին՝ և ամենայն սրբոց քոց որք յաւիտենից հաճոյ եղեն քեզ , ներեա քաւեա և թող զմեղս իւր զոր գործեաց՝ զկամայ և զակամայ . քանզի ոչ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի ։ Օրհնեա ※ Տէր , եւ զհողանիւթեայ յարկ տապանի սորա , և կնքեա անարատ աջովդ , եւ պատուական խաչիւդ . յորում հեղեր ըզփրկական արիւնդ 'ի թողութիւն մեղաց մերոց։ Օրհնեա ※ Տէր , եւ զմնացորդս սորա . սփոփեա և մխիթարեա և փարատեա 'ի սըրտից սոցա զսուգ եւ զտրտմութիւն . եւ խաղաղական կենօք աճեցո և զարգացո և միացո 'ի սէր սրբութեան քո ։ Ընդ նոսին՝ աշխատաւորացս եւ համօրէն զհետ եկելոցս ողորմեա Տէր , եւ տուր զբարի պարգեւաց քոց զհատուցումն ։ Հալածեա եւ

հեռացո 'ի սոցանէ զխորամանկութիւն սատանայի, եւ զգաստութեամբ առաջնորդեա 'ի շաւիղս արդարութեան քո, հասանիլ 'ի կոչումն փողագոչ ձայնի Հրեշտակապետին 'ի յաւիտենական հանգիստն։ Զարթուցեալք 'ի յայս մահահանգիստ քնոյս՝ եւ սրաթռիչ լուսեղէն ամպովք ընդ առաջ ելանել քոյ փառաց, եւ արժանի լինել բարեբանող փառաւորութեամբ օրհնել զքեզ Քրիստոս Աստուած մեր՝ ընդ Հօր և Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ
և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Փա՞յլին արդա՜րքն յարքայութեա՜ն և ճըգնաւորքն 'ի հանգըստեանն. մա՞րտիրո՜սքըն պըսակի՛ն և կուսանաց լապտերք վառին. դա՞սեցո՜ Տէր ընդ նոսին որք զքեզ Աստուա՛ծ խոստովանին. ա՞րդարութեա՜մբ մի՞ դատեսցի՜ն այլ գըթութեամբ քո քաւե՛սցին։

Քո՞ անպատո՜ւմ խոնարհութեա՞մբդ որ թաղեցար մե՛ռելութեամբ, ե՞ւ յարուցե՜ր յորդւո՛ց մարդկան որք հաւա՛տով 'ի քեզ անկան. յա՞րո և զմե՜զ արդարու-

թեամբ և զնընջեցեալսն ողորմութեամբ. զի կենդանեացըս բերանով տայցեն քեզ փառս ընդ Հօր Հոգւով:

Փառաց 'ի փառըս բարձրանան, աջակող-մեանքըն վերանան, յորժամ լըսեն զերա-նական ձայն օրհնութեան 'ի քէն կոչ-ման. Ննջեցելըս մեր լըսեցո զաստուա-ծային բարբառըդ քո. դասաւորեա ըզ-սա վերնոցն երգել քեզ ըզփառս ընդ զուարթնոցն:

Քահանայք եւ ժողովուրդք հայցեմք 'ի քէն Տէր բարեգութ, ընդ ննջեցեալսըն հաւատով ընկալ ըզմեզ նովին յուսով, յԵրուսաղէմ քաղաք վերին յորում ար-դարքըն ժողովին. փառս վերերգել միշտ ընդ նոսին Երրորդութեանդ երրեակ ան-ձին:

Ի վերին Երուսաղէմ 'ի բնակա-րանըս հրեշտակաց, ուր Ենովք եւ Եղիաս կան ծերացեալ աղաւնա-կերպ. 'ի դրախտին Եդեմական պայծառացեալ արժանաւորս. ողոր-

մամ ծ Տէր ողորմեա հոգւոյն մեր
ննջեցելոց ։

Հոգւոցն հանգուցեալ ։ Վասն հանգ ։ Քրիստոս Որդի Ա. ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ․ ընկալ կե ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ ։

Օրհնեսցի ※ եւ կնքեալ պահեսցի գերեզման եւ ոսկերք ծառայիս Աստուծոյ, նշանաւ սուրբ խաչիս, եւ բանիւ սուրբ Աւետարանիս, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ․ ընկալ կե ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ ։

Օրհնեսցի ※ եւ կնքեալ պահեսցի շիրիմ և ոսկերք ծառայիս Աստուծոյ ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կե ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ ։

Օրհնեսցի ※ և կնքեալ պահեսցի դամբարան և ոսկերք ծառայիս ։

Կեցուսցէ և ողորմեսցի ։

Անշարժ եղիցի կնիք ※ տէրութեան ի վերայ գերեզմանի ծառայիս Աստուծոյ

մինչեւ 'ի գալուստն Քրիստոսի․ որ եկեալ միասանգամ նորոգեսցէ փառօք 'ի փառս Հօր և Հոգւոյն Սրբոյ, ամէն։

Հայր մեր որ յերկինս։

---

Սաղմ՝ ԽԳ Երգեան 'ի փոխն ննջեցելոյն ասէ․

Ալէլուիա ալէլուիա․

Այս ամենայն եկն 'ի վերայ մեր, եւ մեք զքեզ ոչ մոռացաք, եւ ոչ ստեցաք ուխտի քում, եւ ոչ դարձաք յետս սրտիւք մերովք։

Դարձուցեր զշաւիղս մեր 'ի ճանապարհաց քոց, խոնարհ արարեր զմեզ 'ի տեղի չարչարանաց, եւ ծածկեցին զմեզ ըստուերք մահու։

Թէ մոռացեա՞լ իցէ մեր զանուն Աստուծոյ մերոյ, կամ ձգեա՞լ իցէ զձեռս մեր առ աստուածս օտարս։

Սակայն Աստուած խնդրէ զայս․ զի նա քննէ զգաղտնիս սրտից մերոց։

Վասն քո մեռանիմք զօրհանապազ, համարեցաք որպէս զոչխար 'ի զենումն։

Զարթիր, ընդէ՞ր ննջես Տէր․ արի եւ մի՛ մերժեր զմեզ իսպառ։

Զմէ՞ դարձուցանես զերեսս քո 'ի մէնջ. մոռանաս զաղքատութիւն եւ զնեղու-
թիւնս մեր:

Խոնարհ եղեն մինչեւ 'ի հող անձինք մեր. և յերկիր կցեցան մէջք մեր:

Արի Տէր օգնեա մեզ եւ փրկեա զմեզ, վասն անուան քո:

Փառք Հօր և Որդւոյ և. Այժմ և միշտ և.:

Քարոզ:

Խնդրեսցուք հաւատով 'ի Հօրէ վասն քաւութեան մեղաց, և թողութեան յանցանաց. փրկելոյ զմեզ 'ի վշտաց և 'ի նեղութեանց. իջանելոյ 'ի վերայ մեր ողորմութեան եւ գթութեան Տեառն Աստուծոյ ամենակալին. կեցո և ողորմեա:

Աղօթք:

Հայր գթութեանց՝ եւ Աստուած ամենայն մխիթարութեան, որ մխիթարես զմեզ յամենայն նեղութիւնս մեր. հարկանես՝ և դու բժշկես. և ոչ երբէք թողուս 'ի ձեռանէ քումմէ զաստեղծուածս քո: Տուր սոցա Տէր, հոգի զգաստութեան, հոգի մխիթարութեան. քեւ մխիթարեա

զմշտագնեալս սրտիւք եւ բժշկեա զմէրս տրտմութեան սոցա։ Զի հաստատուն յուսով փառաց քոց առողջացեալք ՚ի սգոյ տրտմութեան իւրեանց, փառաւորեսցեն զամենամեծ տէրութիւնդ քո, այժմ եւ միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Հոգւոցն հանգուցելոց Քրիս։ Վասն հանգուցեալ։

Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ և։

Հայր մեր որ յերկինս։



# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ԱՅԳՈՒՑ ԿԱՏԱՐԵԼՈՑ

Գան 'ի միասամ առաւօրն 'ի գերեզմանն
և ասէն զամէյծան :

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք :
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ. :

Քահանայն խունկ արկանէ և ասէ .

Շարական , Դկ .

Ղաղ. Յիսուս միածինն անմահութեանց պարգեւատուն երեւեցաւ մեզ , խափանեաց զզօրութիւն մահու :
Բղխումն արտասուաց Մարիամու եւ Մարթայի անկեալ առ ոտսն Տեառն , խնդրէին զնորոգումն եղբօրն :
Բանիւ բանն Աստուած կենագործեաց ըզՂազարոս 'ի թաղմանէն , և եկեալ արտաքս անապական :

Թաղ. Յովսէփ քեզ հաւատացեալ Պիղատոսի աղերսէր, շնորհել զտէրունեան մարմին:

Զանապական զաստուածացեալ մարմինդ պատեալ սուրբ կտաւովք, եւ եդ 'ի գերեզմանի:

Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ 'ի քերովբէս, վեմով կնքեցար յերկրի:

Յար. Յորժամ եկին 'ի գերեզմանն իւղաբեր կանայքն. եւ բերին զխունկսն 'ի խընկել զանապական մարմինն:

Յայնժամ հրեշտակն աւետարանէր յարեաւ Քրիստոս. պատմեցէք աշակերտացն զյարութիւնն Տեառն.

Իսկ նոցա զարհուրեալ վասն ահագին տեսլեանն. պատմէին աշակերտացն զահագին տեսիլն:

Հոգ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց Հոգիդ իջեալ 'ի բարձանց. զանապական պարգեւուքս քո բաժանեցեր յառաքեալսն:

Որ 'ի վերայ ջուրցն գոլով ստեղծանէիր

զարարածս . իջեալ 'ի ջուրս աւազանին ծնանիս Որդիս Աստուծոյ ։

Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի . պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլին մանկունք սորա ։

Հանգ. Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ 'ի հրեղէն կառս . յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց , եւ հանգո ընդ սուրբս քո ։

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան և ներող յանցանաց մերոց . յիշեա զհո ։

Որ միւսանգամ գալոց ես հայրենի փառօք նորոգել զնախաստեղծին ծընունդ . յիշեա զհո ։

Մեծ. Ի քեզ եմք ապաւինեալ Քրիստոսի մայր Աստուծոյ մերոյ ։

Որ քան զերկինս բարձրագոյն Մարիամ , պարծանք եկեղեցւոյ . Քրիստո ։

Որ քան զարեգակն պայծառագոյն Մարիամ , մի դադարեր բարեխօսել վասն մեր , Քրիստոսի մայր Աստու ։

Խաչ. Սուրբ զխաչ քո շնորհեցեր զէն եկեղեցւոյ քում սրբոյ . որով դատա-

պարտեալ պարտեցաւ Թըշնամին .

Սովաւ պահպանեա զժողովուրդս քո Քրիստոս . որով երկըրպագեմք քեզ ընդ Հօր և Հոգւոյն ։

Ի քեզ ապաւինիմք Քրիստոս որ գալոցդ ես խաչիւ . որպէս զի փըրկեսցես ըզմեզ յայնմ աւուր ահեղ ատենին ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Ընդ սուրբըս քո դասեա և ընդ արդարսըն պըսակեա 'ի տեղի անկելոց հրեշտակաց ըզնընջեցեալսըն մեր կարգաւորեա . որ ողորմածդ ես յամենայնի ։

Ալէլուիա ալէլուիա .

Ի խորոց կարդացի առ քեզ Տէր Տէր . լուր ձայնի իմում ։

Եղիցին ականջք քո 'ի լսել զձայն աղօթից իմոց ։

Պօղոսի առաքելոյն 'ի Կորնթացւոց երկրորդ թղթոյն է ընթերցուածս ։

Այլ մեք պարտիմք գոհանալ զԱստուծոյ յամենայն ժամ՝ վասն ձեր եղբարք սիրեցեալք 'ի Տեառնէ . զի ընտրեաց զմեզ Աստուած 'ի սկզբանէ 'ի փրկութիւն՝ սըր-

բութեամբ հոգւոյն, եւ հաւատովքն ճշմարտութեան. յոր եւ կոչեաց զձեզ աւետարանաւն մերով ՚ի փրկութիւն փառացն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Այսուհետեւ եղբարք՝ հաստատուն կացէք՝ և պինդ կալարուք զաւանդութիւնսըն՝ զոր ուսարուք, եթէ բանիւ, և եթէ թղթով մերով։

Այլ ինքն Տէր մեր Յիսուս Քրիստոս, և Աստուած Հայր մեր, որ սիրեացն զմեզ՝ և ետ մեզ մխիթարութիւն յաւիտենից՝ և յոյս բարեաց շնորհօք, մխիթարեսցէ զսիրտս ձեր, և հաստատեսցէ յամենայն բանս և ՚ի գործս բարութեան։

Ալէլուիա ալէլուիա.

Բարձր առնեմ զքեզ Տէր, զի ընկալար զիս. և ոչ ուրախ արարեր զթշնամին իմ յիս։

Ալէլուիա Օրթի։

Խաղաղութիւն ամենեցուն։

Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանէն Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ ։

Զգոյշ լերուք անձանց, գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութեամբ եւ արբեցութեամբ՝ եւ հոգովք աշխարհականօք, և յանկարծակի հասանիցէ 'ի վերայ ձեր օրն այն. զի իբրեւ զորոգայթ հասանիցէ 'ի վերայ ամենեցուն որ բնակեալ են ընդ ամենայն երեսս երկրի ։

Արթուն կացէք այսուհետեւ, յամենայն ժամ աղօթս արարէք, զի արժանի լինիջիք զերծանիլ յայնմ յամենայնէ որ լինելոց է, և կալ առաջի Որդւոյ մարդոյ ։

Եւ 'ի տուէ 'ի Տաճարին ուսուցանէր, և զգիշերս ելեալ ագանէր 'ի լերինն՝ որ կոչիւր ձիթենեաց ։

Եւ ամենայն ժողովուրդն կանխէր ընդ առաւօտս առ նա 'ի Տաճարն լսել 'ի նմանէ ։

Քարոզ ։

Վասն 'ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց. զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա ։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց, զՏէր աղա ։

վասն քաւիչ եւ ներող լինելոյ Աստուծոյ
՚ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա։
վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր
զկամայ և զակամայ, զՏէր աղա։
վասն զի մի ընդ խոտանսն գտանիցիմք
յաւուրն պատասխանատուութեան, ըզ-
Տէր աղա։
վասն հոգւոցն հանգուցելոց, որք ճշ-
մարիտ եւ ուղիղ հաւատով ՚ի Քրիստոս
ննջեցին, զՏէր աղա։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Աղօթք։

Գոհանամք զքէն Տէր՝ Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ յայց ելեր. և ար-դարութեամբ քով փրկեցեր զմեզ ՚ի մե-քենայից բանսարկուին. զի նախանձեցաւ և եհան զմեզ պատրանօք ՚ի յաւէժական կենացն, արտասահմանելով զմեզ ՚ի կո-րուստ և յապականութիւն։ Այլ դու բա-րերար և մարդասէր Աստուած՝ ոչ թողեր զնորա դառնութիւն թունիցն ՚ի մեզ յա-

բակայ. վասն որոյ զմահ կոչեցեր և հեղեր 'ի վերայ ամենայն արարածոց քոց, զի մի՛ անմահ մնասցէ չարութիւնն պատահեալ. այլ բառնալով զմեզ 'ի կենացս յայսցանէ՝ եւ հատանելով 'ի մեղաց, եղեւ փրկութիւն՝ բարերարիդ պատուհասն: Իսկ 'ի վախճան աւուրցս այսոցիկ առաքեցեր զՈրդիդ քո սիրելի 'ի կերպարանս մահու մեղաց. որ դատապարտեաց զմեղս մարմնով իւրով և կամաւոր խաչելութեամբն իւրով, խորտակեաց զզօրութիւն Թշնամւոյն. եղեւ առաջին պտուղ ննջեցելոց, և աստուածահրաշ յարութեամբն իւրով հրաւիրեաց զմեզ յիւր անմահութիւնն: Յոր հաւատացեալ ծառայս քո այս՝ մկրտեցաւ 'ի մահ Քրիստոսի քո. և լցեալ այժմ զժամանակ պանդխտութեան կենցաղավարութեան իւրոյ, փոխեցաւ 'ի կէտ սահմանադրութեան քո: Վասն որոյ աղաչեմք ըզքեզ Հայր սուրբ՝ միջնորդութեամբ Մարմնոյ և Արեան միածնի Որդւոյ քո՝ և խոնարհութեան. Թող զպարտիս սորա զկամաւ և զակամայ, զոր վիրաւորեաց անմարմին Թշնամին պատրանօք խաբէութեան իւրոյ, զի դու միայն ես սուրբ և բարերար:

Տէր, որ յանգոյութենէ 'ի գոյութիւն ա-
ծեր զամենայն ։

Եւ այժմ զվէրս սորա բժշկեա, և խաղա-
ղութեամբ անցո զսա ընդ խաւարային
իշխանութիւնս, զի մի՛ զչարութիւն իւ-
րեանց գտցեն 'ի ծառայս քո ։ Այլ ջնջեա
Տէր, զձեռագիր ներգործութեանց նոցա՝
զոր 'ի սմա սերմանեցին, եւ տուր սմա
ճանապարհ բարի ։ Բացակայ եղիցի 'ի
սմանէ հրեղէն սուրն՝ որ պահէ զճանա-
պարհ ծառոյն կենաց, պատկառելով 'ի
փրկական նշանէ Խաչին՝ որ զպտուղն կե-
նաց մեզ ընծայեցոյց առ հաւատչեայ յա-
ւիտենական կենացն եւ առաջնորդ ։ Յոր
ապաւինեալ ծառայս քո՝ սովաւ հասցէ
'ի պահեստ՝ ուր սուրբք ամենայն հաւա-
քեալ սպասեն մեծի հարսանեացդ, յե-
րեւիլ մեծիդ Աստուծոյ և Փրկչիդ Յիսու-
սի Քրիստոսի ։ Ի ձայն փողոյ մեծի՝ յոր-
ժամ սասանին տարրեղէն արարածք. գա-
լարին երկինք. նսեմանան լուսաւորք.
թօթափին աստեղք. ցոլանան գետք հր-
րեղէնք յերկնից. եւ երեւին բանակք
անմահից ։

Եւ յակնարկել դատաւորիդ սասանի եր-

կիր • բանին կնքեալ գերեզմանք • Նորոգին հողացեալ մարմինք • և հոգիքն սլացեալ իբրեւ զարծուիս՝ անդր հասանեն, և զգենուն զանապական մարմինսն 'ի վայրկեան ժամանակի, եւ ժամանեն յիւրաքանչիւր տեղիս ։

Աղաչեմք զքեզ Տէր՝ ժամանեցո զծառայս քո զայս յանսպառ ուրախութիւնսն • և զամենեսեան զմեզ զհաւատացեալքս 'ի քեզ՝ խաղաղութեամբ պահեա, եւ մխիթարեա հոգւով և մարմնով ։ Զի արժանի լիցուք փառաւորել զՀայր և զՈրդի և ըզՍուրբ Հոգի, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր, որ անդորրիչ ես ննջելոց • և ընդունող հոգւոցն հանգուցելոց • ընկալ զհոգի ծառայիս քո 'ի բարի • և փարատեա զսուգ և տրտմութիւն 'ի սիրելեաց սորա, որք հետեւեցան յուղարկել զսա ընդ երկայնաձիգ ճանապարհն • և մորմոքին 'ի վերայ անդառնալի ուղեգնացութեան սորա • և յաւէժ անջատելոյ 'ի սմանէ առ ժամանակ մի՝ մին-

չեւ յիւրեանց յուղի անկանիլն յայսմ բազմաժողով ծովածուփ կենցաղոյս ։ Եւ զչափաւոր արտասուս սոցա ընկալ քեզ 'ի հաճոյս, եւ մի 'ի զայրացումն. և մխիթարեալ սփոփեսցես զլքեալ սիրտս սոցա գալստեամբ շնորհի քո. եւ զօրացուսցես զտարակուսեալ հոգիս սոցա առաքմամբ Հոգւոյդ Սրբոյ ։ Եւ * կնքեալ պահեսցես զգերեզմանս փակեալս յանուն քո՝ նշանաւ Խաչիւ քով՝ մինչեւ յօր կրկնակի կենսաբեր գալստեանն քո ։ Զի քո ամենակարող զօրութեամբդ՝ եղեմնապատ և ձիւնաթաղեալ պահին ամենայն արմատք, և սերմանիքն թաղեալ յերկիր մեռանին, և 'ի ժամանակս որոտընդոստ գարնանայնին յարութեանն զուարճացեալ պայծառանան. զորս

կարգեցեր մեզ 'ի սպաս պիտոյից ։

Իսկ զբանական կենդանիքս պահեալ անկորուստ՝ խնամով աստուածութեան քո՝ յարուցանես դարձեալ 'ի հողոյ, և նորոգես 'ի պատկեր փառաց քոց ։ Վասն որոյ խոնարհեցար 'ի հայրական ծոցոյ՝ լինել մեզ պատկերակից՝ հացդ անմահութեան ։ որ ոչ մնացեր 'ի քո մշտնջենաւոր անմահութիւնդ, այլ հատդ կենդանութեան զմահ

յանձն առեր, զի բազում արասցես ար-
դիւնս։ Իջեր 'ի գերեզման, լուծեր զեր-
կուս մահու, և զդժոխս աւերեցեր. որ
յերկնաւորաց օրհնիս, և յերկրաւորաց,
և 'ի սանդարամետականաց երկրպագիս. և
լի է ամենայն երկիր փառօք քո։

Արդ՝ պահեա ամենազօր Տէր՝ զհոգի սորա
առ ամենայն սուրբս եւ սիրելիս անուան
քո, եւ զգերեզման ծառայիս քո այսորիկ
* կնքեալ պահեսցես. որ փակես զխորս,
եւ կնքես ամենազօր աջով քով։ Որպէս
երկինք՝ և երկնից երկինք՝ և երկիր ամե-
նայն հաստատեալ կան բանիւ քով. այս-
պէս անշարժ եղիցի * կնիք տէրութեան
քո 'ի վերայ բնակութեան սորա եւ պա-
հարանի ծառայիս։ Եւ մի իշխեսցէ մեր-
ձենալ 'ի սա պիղծ եւ անմաքուր դեւն,
որպէս 'ի մարմին և յոսկերս հեթանոսաց,
որք ոչ ունին զծնունդ սուրբ Աւազանին,
և զկնիքն ահաւոր եւ պատկառելի 'ի վե-
րայ գերեզմանացն։ Այլ ծառայս քո այս՝
որ հրաւիրեալ կոչեցաւ 'ի քոյոց հրաւի-
րողացդ 'ի հանգիստ քո. որ հաւատա-
ցեալ 'ի քեզ 'ի կենդանութեան իւրում՝
թաղեցաւ ընդ քեզ մկրտութեամբն 'ի

մահ, եւ սերմանեալ պահեցաւ 'ի քէն,
և կոչեցեալ՝ յերկիր դարձաւ ։

Լուր աղաչանաց մերոց մարդասէր Տէր՝ և թող սմա զամենայն մեղս իւր զոր մեղաւ. եւ քաւիչ լեր ամենայն սխալանաց սորա, եթէ կամայ եւ եթէ ակամայ, եթէ բանիւ՝ եւ եթէ գործով. եթէ խորհրդով՝ եւ եթէ մտածութեամբ. զամենայն կտակ չարին պատառեա, և զձեռագիր մեղացն ջնջեա Տէր, եւ զաղտ հնութեանն լուա ։ Զի անպատկառ լիցի 'ի մեծի որոտընդոստ աւուրն վերջնում, ընդ համօրէն պահպանելոցն 'ի քէն՝ ընդ առաջ վերանալ քեզ նորափետուր արփիափայլ դիմօք՝ զարդարեալ 'ի զարդ անկողոպտելի. յորժամ գաս եւ երեւիս Աստուածդ 'ի մէջ աստուածացելոց բաժանել եւ որոշել զզանազան պատիւս սիրելեաց քոց ։

Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր՝ եւ զմեզ զամենեսեան զհաւատացեալքս 'ի քեզ արժանի արա՝ զայս ահաւոր եւ զսոսկալի օրս տպաւորել հանապազ առաջի աչաց մերոց. և յամենայն զգալի և 'ի պատրողական կենցաղավարութեանց պատապա-

րեա զմիտս եւ զգայարանս մեր ։ Պատկերացո Տէր՝ զանհրաժեշտ գալուստ քո առաջի աչաց մերոց . դու Տէր քաղցրութեամբդ քո քաւեա զմեզ ՚ի մեղաց մերոց . ՚ի հանդերձեալ գեհենէն փրկեա զմեզ զամենեսեան , եւ ժամանեցո արժանապէս հանդիպիլ փառաց փեսայիդ ՚ի գալստեան քում՝ ամենագութ Տէր ։ Նորոգեա եւ զմարմին խոնարհութեան մերոյ ըստ անեղծ փառաց քոց՝ Յիսուս Քրիստոս Աստուած մեր ։ Եւ քեզ ընդ Հօր՝ եւ Սուրբ Հոգւոյդ՝ վայելէ փառք՝ իշխանութիւն եւ պատիւ , այժմ եւ միշտ եւ յաւիտեանս

յաւիտենից , ամէն ։

Փա՜ռաց ՚ի փա՜ռըս բարձրա՛նան , աջակողմեա՛նքըն վերանան , յորժամ լըսեն զերա՛նական ձայն օրհնո՛ւթեան ՚ի քէ՛ն կոչման . Նը՛նջեցելո՛յս մեր լըսեցո զաստուածայի՛ն բարբառըդ քո . դասաւորեա ըզսա՛ վերնոցն երգե՛լ ըզփառս ընդ զը՛ւարթնոցն ։

Քա՛հանա՜յք եւ ժողովո՛ւրդք հայցե՛մք ՚ի քէն Տէր բարեգութ , ընդ նընջեցեա՛լըսն հա՛ւատով ընկալ ըզմեզ նովի՛ն յուսով . յԵ՛-

րուսաղէմ քաղաք վերին յորում արդարքն ժողովին. փառս վերներգել միշտ ընդ նոսին Երրորդութեանդ երրեակ անձին։

Ի վերինն Երուսաղէմ ՚ի բնակարանս հրեշտակաց, ուր Ենովք եւ Եղիա կան ծերացեալ աղաւնանկերպ. ՚ի դրախտին Եդեմական պայծառացեալ արժանապէս. ողորմամբ Տէր ողորմեա հոգւոցն մեր ննջեցելոց։

Հոգւոցն հանգուցեալ։ Վ. ձայն հանգ. Քրիստոս Որդի Ա.։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կե։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Օրհնեսցի ※ եւ կնքեալ պահեսցի գերեզման եւ ոսկերք ծառայիս Աստուծոյ, նշանաւ սուրբ Խաչիս, եւ բանիւ սուրբ Աւետարանիս, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կե։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Օրհնեսցի ※ եւ կնքեալ պահեսցի շիրիմ և ոսկերք ծառայիս Աստուծոյ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կե ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ ։

Օրհնեսցի ※ և կնքեալ պահեսցի դամբարան և ոսկերք ծառայիս ։

Կեցուսցէ և ողորմեսցի ։

Անշարժ եղիցի կնիք ※ տէրութեան ՚ի վերայ գերեզմանի ծառայիս Աստուծոյ՝ մինչև ՚ի գալուստն Քրիստոսի. որ եկեալ միւսանգամ նորոգեսցէ փառօք ՚ի փառս Հօր և Հոգւոյն Սրբոյ, ամէն ։

Հայր մեր որ յերկինս ։



# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ԵՕԹՆ ԱՒՈՒՐ

ԿԱՄ

## ՔԱՌԱՍՆՕՐԵԱՑ ԵՒ ԿԱՄ ՏԱՐԵՄՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՑ



Երթան ի Գերեզման, և ասեն զամենեցան ։

Շարական, գկ.

*Ղող. Յիսուս միածինն անմահութեանց պարգեւատուն երեւեցաւ մեզ, խափանեաց զզօրութիւն մահու։*

*Բղխմամբ արտասուաց Մարիամու եւ Մարթայի անկեալ առ ոտսն Տեառն, խնդրէին զնորոգումն եղբօրն ։*

*Բանիւ բանն Աստուած կենագործեաց ըզՂազարոս ի թաղմանէ, և եկեալ արտաքս անապական ։*

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ ։

Այսպէս ասէ Տէր. գամ ժողովել զամենայն ազգս և զլեզուս. եկեսցեն և տեսցեն զփառս իմ. և թողից ՚ի վերայ նոցա նշան ։

Եւ առաքեցից ՚ի նոցանէ փրկեալս յազգս, ՚ի Թարսիս. և ՚ի Փուդ. և ՚ի Լուդ. և ՚ի Մոսոք, և ՚ի Թոբէլ. և Ցելլադա, և ՚ի կղզիս հեռաւորս՝ որոց չիցէ լուեալ զանուն իմ. եւ ոչ տեսեալ զփառս իմ. և պատմեսցեն զփառս իմ և զանուն իմ ՚ի մէջ ազգաց ։

Եւ ածցեն զեղբարս իւրեանց յամենայն ազգաց պատարագ Տեառն. հեծեալս կառօք՝ հանդերձ պալարակապ երիվարօք եւ հովանոցօք ՚ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, ասէ Տէր ։

Պօղոսի առաքելոյն ՚ի Կորնթացւոց առաջին թղթոյն է ընթերցուածս ։

Այլ ասիցէ ոք. զիա՞րդ յառնեն մեռեալք՝ կամ որո՞վ մարմնով գայցեն ։

Անմիտ, դու զոր սերմանես, ո՞չ կենդանանայ՝ եթէ ոչ մեռանիցի ։

*Եւ զոր սերմանեսն, ոչ զնոյն մարմին զոր ծնանելոցն իցէ՝ սերմանես, այլ հատ մերկ. եթէ ցորենոյ իցէ՝ և եթէ այլոց սերմանեաց:*

*Եւ Աստուած տայ նմա մարմին՝ որպէս և կամի. և իւրաքանչիւր սերմանեացն զիւր մարմին:*

*Ոչ ամենայն մարմին նոյն մարմին է, այլ՝ այլ մարմին է մարդկան եւ այլ մարմին անասնոց, այլ մարմին թռչնոց՝ և այլ մարմին ձկանց:*

*Եւ մարմինք երկնաւորք՝ և մարմինք երկրաւորք. այլ՝ այլ փառք երկնաւորաց՝ և այլ փառք երկրաւորաց: Այլ փառք արեգական, և այլ փառք լուսնի, և այլ փառք աստեղաց. և աստղ քան զաստղ առաւել է փառօք:*

Ալէլուիա ալէլուիա.

*Տէր ողորմութիւն քո յաւիտեան զգործս ձեռաց քոց մի՛ անտես առներ:*

Ալէլուիա Օրթի:

Խաղաղութիւն ամենեցուն:

Եւ ընդ հոգւոյդ քում: Երկիրպագութեամբ լուարուք:

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու:

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։
Դասախումբն ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ ։

Խաղաղութիւն թողում ձեզ, զխաղաղութիւն զիմ տամ ձեզ, ոչ որպէս աշխարհս տայ՝ տամ ես ձեզ. մի խռովեսցին սիրտք ձեր, և մի զանգիտեսցեն ։

Լուայք զի ասացի ես ձեզ՝ թէ երթամ և գամ առ ձեզ. եթէ սիրէիք զիս՝ ապա ուրախ լեալ էր ձեր՝ եթէ ես առ Հայր երթամ, զի Հայր իմ մեծ է քան զիս ։

Եւ այժմ ասացի ձեզ մինչչեւ եղեալ. զի յորժամ լինիցի, հաւատասջիք ։

Ոչ եւս այլ շատ խօսեցայց ընդ ձեզ. գայ իշխան աշխարհիս այսորիկ, և յիս ինչ ոչ գտանէ. այլ զի ծանիցէ աշխարհ՝ եթէ սիրեմ զՀայր. եւ որպէս պատուիրեաց ինձ Հայր՝ այնպէս առնեմ. օ՛ն արիք գնասցուք աստի ։

Քարոզ ։

Վասն ՚ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց. զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա ։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայ-
նի աղաչանաց մերոց. զՏէր աղա։
Վասն քաւիչ եւ ներող լինելոյ Աստուծոյ
'ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա։
Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր
զկամայ և զակամայ, զՏէր աղա։
Վասն զի մի ընդ խոտանսն գտանիցիմք
յաւուրն պատասխանատուութեան, ըզ-
Տէր աղա։
Վասն հոգւոցն հանգուցելոց, որք ճըշ-
մարիտ եւ ուղիղ հաւատով 'ի Քրիստոս
ննջեցին, զՏէր աղա։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։

Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Աստուած յաւիտենական եւ թագաւոր անմահ, որ ստեղծեր զմարդն 'ի հողոյ. եւ եդեր զնա 'ի դրախտին փափկութեան գործել զնա և պահել. և պատուիրանադրեցեր կալ ըստ հրամանի քում։ Իսկ բանսարկու թշնամին պատրողական բանիւք խաբեալ զնա, խրատեաց լուծանել

զաստուածական հրամանսդ ։ Եւ նորա ունկնդիր եղեալ չարին, արտաքսեցաւ 'ի լուսեղէն փառացն . և փոխանակ անմահութեան՝ մահու եղեւ ժառանգաւոր, ըստ արարչական հրամանիդ զոր ասացեր, հող էիր և 'ի հող դարձցիս . և ոչ կարացին արարածք հնացուցանել զհրամայեալն 'ի քէն։ Եւ արդ՝ Տէր Աստուած մեր ողորմած եւ մարդասէր՝ գթա 'ի ծառայս քո յայս, որ ելից զերկրաւոր կեանս իւր, և դարձաւ անդրէն 'ի հող ըստ հրամանի քում ։ Ընկալ զհոգի սորա, և խառնեա 'ի գունդս հրեշտակաց քոց . և արժանի արա պարել եւ ցնծալ ընդ սուրբս և ընդ սիրելիս անուան քո սրբոց ։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ այժմ և միշտ և յաւի ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր՝ յոյս ամենայն արարածոց, որ նստիս յաթոռ քերովբէականս, և բարեբանեալ երկրպագիս յերկնաւորաց և յերկրաւորաց . որ և կոչեցեր զծառայս քո զայս 'ի հանդերձեալ կեանսդ՝ զոր խոստացար ամենայն հաւա-

տացելոց քոց։ Գթա 'ի ստեղծուածս ձեռաց քոց, եւ հանգո զհոգի սորա 'ի խորանսդ լուսոյ, բարեխօսութեամբ մօր քո սրբոյ

կուսին Մարիամու։

Լուր Տէր պաղատանաց մերոց, որ հայցեմք 'ի քէն զթողութիւն սորա եւ մեր. զի դու ես Աստուած արդարոց և մեղաւորաց. փառք սրբոց, եւ հանգիստ աշխատելոց։ Ընկալ զհոգի սորա 'ի տեղւոջ լուսոյ և 'ի տեղւոջ հանգստեան. 'ի թիւս սրբոց՝ և 'ի համբուրս արդարոց։ Եւ հանգո զսա 'ի գոգն Աբրահամու ընդ այլ պայծառացեալ սրբոց քոց. և զմեզ արժանի արա Տէր՝ հասանիլ մասին ժառանգութեան սրբոցն 'ի լոյս։ Զի ընդ նոսին միշտ գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և Հոգւոյդ Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Փա՛յլին արդա՜րքն յարքայութեա՜ն և՛՛։
Քո՛ անպատու՜մ խոնարհութեա՛մբդ որ՛՛։

(Տէ. Երէ. 300)։

Փա՛ռաց 'ի փա՜ռըս բարձրա՛նան, աջա՛՛։
Քա՛հանա՜յք և ժողովո՛ւրդք հայցե՛մք 'ի՛՛։

(Տէ. Երէ. 301)։

Տըրտմահաղորդ չարչարանօք 'ի յանձն առեր ըզմահ խաչին. եւ փայտին բարձող եղեր վասն Ադամայ նախաստեղծին. ողորմեա Տէր ողորմեա հոգւոցըն մեր նընջեցելոց։

Հոգւոցն հանգուցե։ Վասն հանգ։ Քրիստոս Որդի Ա․․

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կե։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ․

Օրհնեսցի ※ եւ կնքեալ պահեսցի գերեզման եւ ոսկերք ծառայիս Աստուծոյ, նշանաւ սուրբ խաչիս, եւ բանիւ սուրբ Աւետարանիս, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

(Տե․ յէրե․ 302)։

Հայր մեր որ յերկինս։



# ԿԱՆՈՆ
## ՏՂԱՅԱԹԱՂ ԿԱՏԱՐԵԼՈՅ

Ալէլուիա ալէլուիա.

Առ քեզ Տէր համբար. մինչ ի Դատեան :

Օրհնեալ Հոգիդ Սուրբ Աստուած ճշմարիտ :

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում. ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ:

զփոխն ըման ասա :

Փառք Հօր և Որդւոյ և :

## ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ

ԱՁ. Դատեա՛ Տէր զա՜յնոսիկ՝ ո՛յք դա՛տեն զի՛ս. ա՛լէ՜լո՛ւիա՛. մարտի՛ր ընդ այնոսիկ որք մա՛րտը՛նչի՛ն ը՛նդի՛ս ա՛լէ՜լուիա՛:

Առ զզէն և զասպար քո. և արի՛ յօգնել
ինձ. հան զսուր քո ընդդէմ հալածչաց
իմոց, արգե՛լ զնոսա. և ասա՛ դու ցանձն
իմ, թէ փրկութիւն քո ես եմ։

Ամաչեսցեն և յամօթ լիցին՝ որք խնդրէին
զանձն իմ. դարձցին յետս և ամաչեսցեն,
որք խորհէին ինձ չար։

Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ
և հրեշտակ Տեառն նեղեսցէ զնոսա։

Եղիցին ճանապարհք նոցա ՚ի խաւար եւ
՚ի գայթակղութիւն, և հրեշտակ Աստուծոյ
հալածեսցէ զնոսա։

Ի նանիր թագուցին ինձ որոգայթ յապա-
կանութեան իւրեանց, եւ ՚ի նանիր նա-
խատեցին զանձն իմ։

Կցորդ. Տէ՛ր՝ յերկինս է ողորմութի՛ւն քո՛.
ճշմարտութի՛ւն քո՛ մի՛նչե՛ւ յա՛մպս. ալէ՜-
լո՛ւիա ա՛լէ՜լո՛ւիա՛։

Արդարութիւն քո որպէս լերինք Աստուած.
իրաւունք քո որպէս խորք բազումք. ըզ-
մարդիկ և զանասուն կեցուցանես դու Տէր։
Որպէս զի բազում արարեր զողորմութիւն
քո Աստուած. այլ որդիք մարդկան ՚ի հո-
վանի թեւոց քոց յուսասցին։

Արբեսցին նոքա 'ի պարարտութենէ տան
քո . և զուղխս փափկութեան քո տացես
ըմպել նոցա ։

Ի քէն է Տէր աղբիւր կենաց . և լուսով
երեսաց քոց տեսանեմք զլոյս ։

Տարածեա զողորմութիւնս քո՝ որք ճանաչեն
զքեզ, զարդարութիւնս քո՝ որք ուղիղ են
սրտիւք ։

Մի եկեսցեն 'ի վերայ մեր ոտք ամբարտա-
ւանից . եւ ձեռք մեղաւորաց մի դողա-
ցուսցեն զմեզ ։

Անդ անկցին ամենեքեան՝ որք գործեն զա-
նօրէնութիւն, մերժեսցին և այլ մի կա-
րասցեն հաստատիլ ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Օրհնեցէք մանկունք զՏէր եւ օրհնեցէք
զանուն Տեառն ։

Շարական, ԱՁ .

Հանգ. Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո
Տէր պատուեցեր ըզմեզ. ընկալ և այժմ
ըզննջեցեալսըն 'ի քեզ ուղիղ հաւատով,
ըստ մեծի քում ողորմութեան ։

Որ շնորհօք սուրբ Հոգւոյն լուսաւորե-
ցեր, յիշատակի իւրեանց զհոգիս նոցա
ընկալ մարդասէր, ըստ մեծի.

Որք հաղորդեցան Մարմնոյ և Արեան քո
Տէր. հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս
քո Քրիստոս Աստուած. քանզի գինք
սուրբ արեան քո են:

Զհոգիս ծառայից քոց Քրիստոս, ընկալ
ի դաս անդրանկաց գրելոց յերկինս:
Ընկալ վասն սոցա ըզքանաւոր պատա-
րագս ի մէնջ. և շնորհեա նոցա ըզթո-
ղութիւն գտանել յաւուրն յետնում:

Աղաղ. Ողոր. Հայր բազումողորմ խոստո-
վանիմ առ քեզ որպէս զանառակ որդին.
Թող ինձ ըզմեղս իմ, և ողորմեա:
Տէր որ գթացար ի կինն Քանանացի,
գթա և յիս ի մեղաւորս, և ողորմ:
Տէր որ դարձուցեր ըզմաքսաւորն ի գի-
տութիւն ճշմարտութեան, դարձո եւ
զիս զմոլորեալս, և ողորմ:

Աղաղ. Տէր. Տէր որ ի վերայ քերովբէից
փառաւորանիս, քաղցրութեամբ խոնար-
հեալ ընկալ զաղաչանս մեր:

Տէր որ շնորհեցեր ողորմութիւն ազգի մարդկան, քաղցրուն։

Տէր որ ուսուցեր մեզ յամենայն ժամ փառըս տալ անուանըդ քում սրբոյ, քաղցրութեամբ խոնար։

Դաշ. Կենդանութեանց բաշխող Քրիստոս ՚ի Բեթանիա եկուորեալ այսօր, բարեկամին Ղազարու պարգեւէ զկենդանութիւն։

Տընօրինաբար արտասուելով ընդ Մարթայի և ընդ Մարիամու ողբակցէր. եւ որպէս մարդ հարցանէր ուր եդիք ըզՂազարոս։

Եւ որպէս զԱստուած բարբառով յարուցանէ ՚ի մեռելոց ըզչորեքօրեայն. եւ զուգընթաց ձայնին մեռեալն ելին արտաքս անապական։

Յոր. Ողբ. Անճառելի Հօր էակից, ՚ի խաչ ելեր կամաւ Հօր. ողորմեա։

Անմահութեանց տուող Քրիստոս, ՚ի գերեզմանն իջեր որպէս մարդ. ողոր։

Եւ յերրորդ աւուր յարեար, յոյս յարութեան ցուցար մեզ. ողոր։

Հ․Գ․ Տէր․ Ո՛ր ՚ի քրովբէական կա՛ռաւրդ
հա՛նգչիս, այսօր իջե՛ր յերկնից ՚ի դա՛մս
Առաքե՛լոցըն սուրբ Հո՛գի օրհնեա՛լ ես
Թագաւո՞ր անմա՛հ ։

Ո՛ր գընա՛ս ՚ի վերայ Թե՛ւոց հո՜ղմոց, ա՛յ-
սօր ՚ի հրեղէ՛ն լեզո՛ւս բաժանեա՛լ հան-
գեա՛ր յԱ՛ռաքեալսն սուրբ Հո՛գի․ օ՛րհ ։

Որ խնամե՛ս տեսչութեա՛մբ զքո զա՛րա-
րածս, ա՛յսօր եկիր ՚ի հա՛ստատել զեկե՛-
ղեցի քո սուրբ Հո՛գի․ օ՛րհ ։

Մէծ․ Որ ըղքա՜նն Ա՛ստուա՛ծ բաւա՛կան
եղե՛ր ընդու՛նիլ յորովա՜յնի մի՛շտ կոյս․
զքեզ մեծա՛ցուցանե՛մք որ օ՛րհնեալդ ես
՚ի կանա՛յս ։

Որ էից լուսո՛յն արժանի՛ եղե՛ր բառնալո՜յ
՚ի դի՛րկըս քո մա՛րմնով․ զքեզ մեծա՛ ։

Անարա՜տ տաճա՛ր տընօրէնութեա՛ն կո-
չե՛ցար Հոգւո՛յն Սըրբո՛յ մի՛շտ կոյս զքեզ
մեծա՛ցուցանե՛մք որ օ՛րհ ։

Խաչ․ Սուրբ Խաչն օգնակա՛ն հաւատա՛-
ցե՛լոց, կա՛նգնեցա՛ւ ՚ի յերկրի յա՛ղթող
Թըշնամւոյն․ Ե՛կայք ժողովուրդք երկըր-
պա՜գեսցուք ։

Արարիչն Աստուած, բարձրացաւ ՚ի խաչին, եւ զմեռեալըս մեղօք փայտին ճաշակմամբն, ՚ի սմին նորոգեաց կենդանացոյց։

Ի միւսանգամ զամըստեան Աստուածորդւոյն. Սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Հաշտեա ՚ի ձեռըն սուրբ Մարմնոյ եւ Արեան քո Տէր. եւ պարգեւեա նոցա դասուն յաջակողմեանըն քո։

Քարոզ։

Վասն ՚ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց, զՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց, զՏէր աղա։

Վասն քաւիչ և ներող լինելոյ Աստուծոյ ՚ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա։

Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր զկամայ և զակամայ, զՏէր աղա։

Վասն զի մի ընդ խոտանսն դատնիցիմք

յաւուրն պատասխանատուութեան, ըղ-
Տէր աղա։

Վասն հոգւոցն հանգուցելոց՝ որք ճշմա-
րիտ և ուղիղ հաւատով՝ ՚ի Քրիստոս ննջե-
ցին՝ զՏէր աղա։

Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ։

Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Սուրբ ես Տէր Աստուած մեր՝ հզօր և ահաւոր. հայր գթութեանց՝ և Աստուած ողորմութեանց. որ նստիս ՚ի բարձունս, և բարեբանիս ՚ի սրբոց քոց, եւ խնամես քաղցրութեամբ զարարածս քո։ Որ վասն անբաւ սիրոյ քո գթացեալ ՚ի ստեղծուածս անարատ ձեռաց քոց, առաքեցեր յաշխարհս ողորմութեամբ քով զծոցածին Որդիդ քո՝ առ ՚ի փրկել զգրաւեալս մահու զորդիս մարդկան ՚ի ձեռացն դժոխոց։ Որ եկեալ մարմնացաւ յանարատ և ՚ի սուրբ կուսէն Մարիամայ, և ծնաւ տղայապէս։ Խանձարրօք պատեցաւ, և յանբանից մսուր եղաւ. ՚ի կուսական ստեանցն կե-

րակրեցաւ, որ բանայ զձեռն իւր՝ և կե-
րակրէ զարարածս։ Մանուկ մատաղ ըստ
Եսայեայ՝ էարկ զձեռն իւր 'ի ծակ իժից.
եւ եղոյծ զզօրութիւն աներևոյթ օձին։
Արար զօրութիւնս բազումս և մեծամեծս՝
աստուածահրաշ ներգործութեամբն իւ-
րով, և ծանոյց զանուն քո Հայր՝ ամենայն
աշխարհի։ Նստաւ խոնարհութեամբ 'ի վե-
րայ յաւանակի, և բարեբանեցաւ 'ի տղա-
յոց, ըստ նախաձայն բանի երգողին Դաւ-
թայ։ Եւ կատարեալ զաստուածագործ
անօրէնութիւնն իւր՝ յանձն էառ զմահ
մարմնով, թաղեցաւ 'ի յերկրի, և յարեաւ
ինքնիշխան զօրութեամբն իւրով, եւ ետ
յոյս յարութեան հաւատացելոց իւրոց։
Եւ արդ՝ Տէր բարերար, ընկալ զհոգիս ու-
ղղափառ ոյօորիկ, որ հաւատացեալ յանուն
միածնի քո. ծնեալ 'ի սուրբ Աւազանէն
վերստին ծննդեամբ. և այժմ 'ի տղայական
հասակին կոչեցաւ առ քեզ։ Ընկալ զսա
և դասեա ընդ սուրբս քո. և հանգո 'ի խո-
րանս երկնից. զի դու ես Աստուած մեր.
և բաց 'ի քէն զայլ ոք ոչ գիտեմք։ Եւ քեզ
փառք և երկրպագութիւն ընդ Որդւոյ և
Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւէտ։

խաղաղութիւն ամենեցուն

Օրհնեալ ես արդարադատ և ողորմած Աստուած, որոյ ճշմարտութիւնդ անպատում է, և ողորմութեանդ ոչ գոյ թիւ։ Որ վասն մարդասիրութեան քո լուծեր 'ի հող զշնչաւոր մարմինս զպատրեալս 'ի բանսարկուէն՝ ասելով, հող էիր և 'ի հող դարձցիս. ըստ որում խոնարհեցաք 'ի ծերոց մինչև ցտղայս, և յերկիր մածան մէջք մեր։ Իսկ վասն բազում ողորմութեան քո խոնարհեցար մարդասէր Տէր՝ նորոգել 'ի մեզ զմարմին հոգևոր։ Առաքեցար դու ինքն միածինդ Հօր. և տղայացեալ 'ի Սրբոյ Կուսէն՝ տպաւորեցեր յանձին քում զհող մարմնով կամաւորապէս. զի տացես մեզ զքո անմահութիւնդ։ Իջեր 'ի գերեզման, համագրելով ընդ մեռեալս. և յարուցեալ համբարձար յերկինս. և զօրհնեալ զքո զմարմին խոնարհութեան՝ անկանելի և կերպարանակից առնել խոստացար մարմնոյ փառաց քոց յերևելն քո Տէր՝ 'ի վերջ յետին, յորժամ գաս տալ վարձս արդարոց քոց։ Արդ՝ աղաչեմք զքեզ մարդասէր Աստուած Յիսուս Քրիստոս, տուր արժանի

զտղայս զայս՝ փառաւորութեան ընդ արդարս քո յաւուր յայնմիկ, հանդիպիլ քեզ զուարթ երեսօք, եւ փառաւորել ցնծութեամբ եւ գոհութեամբ զքեզ ընդ Հօր՝ և Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Ալէլուիա ալէլուիա ·

Ի բերանոյ մանկանց տղայոց և ստնդեայց հաստատեցեր զօրհնութիւն ։

Ընթերցուածս յԷսայեայ մարգարէէ ։

Ահաւասիկ Տէր Աստուած մեր · յոր յուսացեալ էաք՝ եւ ապրեցուսցէ զմեզ · զի սա է Տէր որում սպասէաք սմա ։

Ցնծասցուք եւ ուրախ լիցուք 'ի փրկութեան մերում · եւ տացէ մեզ Տէր Աստուած մեր հանգիստ 'ի լերինն սրբութեան իւրոյ ։

Եւ մտցէ 'ի նա ժողովուրդ որ պահէ զողորմութիւն · որ վերակացու է ճշմարտութեան, և պահէ զխաղաղութիւն ։

Եւ արդ՝ մխիթարեցից զքեզ յամենայն տրտմութեանց քոց ասէ Տէր ։

Ի վարդապետութենէ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին
մերմէ ասացեալ։

Եթէ մեք որ կենդանիքս եմք մնացեալք 'ի գալստեանն Տեառն՝ հանգուցելովքն հանդերձ յափշտակիցուք ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. եւ այնպէս յամենայն
ժամ՝ ընդ Տեառն լինիցիմք։

Խառնեալք 'ի գունդս հրեշտակաց. եւ թռուցեալք 'ի թռիչս երագութեան 'ի լուսափետուր սպիտակակերպ երամս աղաւնեաց. որք առին եւ կերպարանեցին յանձինս իւրեանց զկերպարանս Որդւոյն Աստուծոյ. որ երեւեցաւ նոցա, եւ պատուիրեաց սուրբս լինել. զի բուսուցէ արդարոցն թեւս հոգեւորս խառնիլ 'ի
գունդն աստուածական։

Արդ՝ զարմացեալք հարցանիցեն զօրքն վերինք լուսեղէնք, յորժամ տեսանիցեն զներքնագունդս սրբոց մարմնականաց՝ զի առ Տէր 'ի ներքուստ թռուցեալ գնասցեն. թէ ո՞վ են սոքա որ իբրեւ զամպս թռուցեալ են, և իբրեւ զաղաւնիս ձագախառն
երամովքն գան առ Տէր։

Ապա լուիցեն 'ի Տեառնէ զպատասխանիս. եթէ սոքա են որ յիս յուսացեալ են. առ-

բայց զնոսա 'ի լեառն սրբութեան իմոյ, և ուրախ արարից զնոսա 'ի տաճարի իմում:

Պօղոսի առաքելոյն յեբրայեցւոց Թղթոյն է ընթերցուածս:

Այլ մատուցեալ էք 'ի Սիոնի լեառն եւ 'ի քաղաք Աստուծոյ կենդանւոյ՝ յԵրուսաղէմ յերկինս, և 'ի բիւրաւոր բանակս հրեշտակաց, եւ յեկեղեցիս անդրանկաց գրելոց յերկինս, և առ դատաւորն ամենեցուն Աստուած, եւ յոգիս արդարոց կատարելոց. եւ 'ի Նորոց Կտակարանաց միջնորդն Յիսուս, եւ 'ի հեղումն արեան նորա՝ որ առաւել խօսի քան զհաբելին: Զգոյշ լերուք գուցէ հրաժարիցէք յայնմանէ՝ որ խօսեցաւն. զի եթէ նոքա ոչ կարացին զերծանել հրաժարեալք յայնմանէ՝ որ յերկրին հրամանն տայր. որչափ եւս առաւել մեք, եթէ յերկնաւորէն թիկունս դարձուցանիցեմք:

Որոյ ձայնն զերկիր շարժեաց յայնժամ. և այժմ խոստացեալ է՝ և ասէ. միւսանգամ շարժեցից ոչ միայն զերկիր՝ այլ և զերկինս: Այլ միւսանգամն յայտ առնէ զշարժելոցն իբրեւ զեղելոց փոփոխումն, զի հաստատուն կացցեն անշարժքն:

Ալէլուիա ալէլուիա.

Դատ արա ինձ Տէր՝ զի ես յամբծութեան իմում գնացի, 'ի Տէր յուսացայ՝ զի մի՛ եղէց հիւանդ:

Ալէլուիա Օրթի.

Խաղաղութիւն ամենեցուն:

Եւ ընդ հոգւոյդ քում: Երկիւղածութեամբ լուարուք:

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի:

Փառք քեզ Տէր Աստուած մեր:

Պռօսխումէ: Ասէ Աստուած:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս:

Եւ մատուցանէին առ նա մանկտի՝ զի ձեռն դիցէ նոցա. իսկ աշակերտքն՝ սաստէին այնոցիկ որ մատուցանէինն:

Իբրեւ ետես Յիսուս, բարկացեալ սաստեաց նոցա եւ ասէ. Թոյլ տուք մանկտւոյդ գալ առ իս, եւ մի՛ արգելուք զդոսա. զի այդպիսեացդ է արքայութիւնն Աստուծոյ:

Ամէն ասեմ ձեզ. որ ոչ ընկալցի զարքայութիւն Աստուծոյ իբրեւ զմանուկ, ոչ մտցէ 'ի նա:

Եւ առեալ զնոսա 'ի գիրկս, ձեռն եդ 'ի վերայ՝ եւ օրհնեաց զնոսա:

Քարոզ :

Վասն ուղղելոյ զգնացս մեր ՚ի ճանապար-
հըս խաղաղութեան՝ զՏէր աղաչեսցուք :
Տէր ողորմեա :
Վասն ցրելոյ ՚ի մէնջ զամենայն խորհուրդս
չարին՝ զՏէր աղա :
Վասն պարգեւելոյ մեզ առողջ խորհուրդս
և առաքինի վարս՝ զՏէր աղա :
Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամե-
նազօր աջոյն իւրոյ՝ զՏէր աղա :
Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղ-
վաղակի ընդ ոտիւք մերովք՝ զՏէր աղա :
Վասն հոգւոցն հանգուցելոց, որք ճշմա-
րիտ և ուղիղ հաւատով ՚ի Քրիստոս ննջե-
ցին, զՏէր աղա :
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ :
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու :
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ :

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա :

Աղօթք :

Փառք քեզ Թագաւոր յաւիտենից Աս-
տուած՝ և արարիչ բոլորից գոյութեանց,
Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.
քեզ խոնարհեցուցանեմք զծունըս սրտից

մերոց ամենայն հաւատացեալքս 'ի քեզ, և աղաչեմք զամենասուրբ տէրութիւն քո։ Հանգո զհոգի տղայիս այսորիկ 'ի ժառանգութիւն երկնից բարութեանդ, և դասեա 'ի թիւ այնոցիկ` որք կարգեցան յաջակողմեան միածնի քո, յորժամ գայ յերկնից 'ի պատրաստ բնակութենէ իւրմէ։ Յայնժամ աւուր ահեղին գթա Տէր` 'ի գինս արեան միածնի քո Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. որ նորոգեաց զտիեզերս կամաւոր խոնարհութեամբն իւրով։ Ընդ որում գոհութիւն եւ փառս վերառաքեսցուք քեզ Հօր ամենակալի` եւ Հոգւոյդ Սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Օրհնեալ ես Որդի Աստուծոյ` և բան Հօր, որ վասն մեր տղայացար 'ի սուրբ կուսէն Մարիամայ, եւ սրբեցեր զտղայացեալսն հաւատով 'ի ձեռն վերստին ծննդեան սուրբ Աւազանին։ Զի որք մկրտեալ լուսաւորին, առնուն զորդէգրութեան պատիւն 'ի ձեռն մկրտութեան շնորհին, զոր պարգեւեցեր հաւատացելոց քոց, ասե-

լով սրբոց Առաքելոցն . մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ։ Արդ՝ ընկալ զլուսաւորեալս սուրբ Աւազանաւն , և զհաղորդեալս սուրբ Մարմնոյ և Արեան քո . և խառնեա 'ի սուրբ եւ 'ի կատարեալ մանկունս , որք ոստովք եւ տերեւեալ ձիթենեօք օրհնէին զսուրբ գալուստ քո յԵրուսաղէմ ։ Եւ զմեզ զամենեսեան արժանի արա փառաւորել զքեզ ընդ Հօր եւ ընդ Սուրբ Հոգւոյդ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւի ։

Եւ ապա ասէ Շարակն.

Դկ. Զէակիցըդ Հօր զՈրդի փառաւորեմք անլռելի. որ իջեր յարգանդ կուսին զԱդամային առեր մարմին , աղաչանօք Աստուածածնին անապական քում ծննդեան , ողորմեա քո ստեղծուածոյս՝ 'ի քեզ յուսով ննջեցելոյս ։

Էրեւեցար մարմնով յերկրի որ 'ի Հօրէ անմեկնելի . ընդ հողեղէնս բնակեցար 'ի հրեղինաց երկրպագեալդ . աղաչանօք երկնաւորաց փառաբանիչ քոց հրեշտակաց , ողորմ ։

Թագաւոր փառաց Քրիստոս որ ժամանեալ գաս ՚ի յերկնից ՚ի վերայ թեւոց հողմոց քո հայրենի կերպարանօք . եւ առնես հրաշափառ բնութեամբ մեր ըզքըննմեթբիւն որդւոց մարդկան . օղոր :

Հոգւոցն հանգուցեալ : Վասն հանգ : Քրիստոս Որդի Աս :
Հայր մեր որ յերկինս :

---

## Տօնին յեկեղեցին եւ այլն .

### Շարական . գկ .

Հանգ . Բանին Աստուած որ ՚ի ծոց Հօր , վասն մերոյ փրկութեան ՚ի յերկնից խոնարհեցար . զի զմեզ նորոգեսցես ՚ի կեանս . Աստուած հարցըն մերոց :

Որ հանդերձեալ ես գալ փառօք Հօր զարթուցանել զննջեցեալսըն ՚ի սուրբ անուն քո . նորոգեա եւ ըզմեր ննջեցեալսն Աստուած հար :

Անմահութեանց տուող Քրիստոս եւ պարգեւիչ կենդանութեան , ՚ի միաւանդամ պատուեանն և յաշխարհական ա-

տենչին թողութիւն շնորհեա մեր նըն-
ջեցելոցն . Աստուած հայր :

Որ նըստիս ընդ աջմէ Հօր ծնողի իւրոյ .
և մարդասիրապէս խընամէ զարարածըս .
բարձր արա :

Որ զհողացեալ բնութիւն մարդկան նո-
րոգէ իւր աստուածութեամբն . Եւ կե-
նագործէ 'ի կեանս անմահ . բարձր :

Յանըսկըզբնական ծոցոյ Հօր խոնարհեալ
բանըդ մարմնացար 'ի կուսէն վասըն
փըրկութեան մերոյ , աղաչեմք ըզքեզ .
զննջեցեալսըն մեր 'ի քեզ ուղիղ հա-
ւատով յիշեա Տէր յորժամ գաս թա-
գաւորութեամբըդ քո :

Անոխական քաղցրութեամբ Որդի Աստու-
ծոյ , հաճեցար բառնալ ըզմեղս աշխարհի
քո խաչելութեամբն . աղա :

Կամաւորական մահուամբ քո լուծեր
զերկունըս մահու , եւ արժանի արարեր
թողութեան յանցանաց քաւիչ քո ա-
րեամբ . աղա :

Որ փոխանակ մեղաւորաց ըզմեռանիլ
յանձն առեր . խնամելով 'ի դըժոխըս փըր-

կեցեր 'ի մեղամահէր բանտէն ըզգերեալ-
սրն . ամղա ։

Բարեբանեմք զանչափ քո զմարդասիրու-
թիւնդ , որ երեքօրեայ յարուցեալ զկեն-
դանութիւն պարգեւեցեր աշխարհի . ամ ։

Տէր . Լոյս 'ի լուսոյ զմեզ լուսաւորեա ,
որ փառօք Հօր հանդերձեալ ես գալ 'ի
դատել զերկիր . արժանաւորեա և ըզմեր
ըզննջեցեալսն անձառ խնամոց քոց
ընդ սուրբս քո ։

Հօր և Հոգւոյ համագոյակից , 'ի տիեզե-
րական ահեղ ատենին արժա ։

Երկնի և երկրի արդար դատաւոր , յոր-
ժամ հատուցանես ըստ գործոց իւրա-
քանչիւրոց , արժա ։

Մեծ . Լեառըն վիմածին , աղբիւր յոր-
դառատ , բարունակ ծաղկեալ , այգի
վայելուչ , սրովբէ հողեղէն . րաբունոյ
բանին տուն տնօրէնութեան , տաճա-
ւար Հոգւոյն . առ ծընեալըն 'ի քէն միշտ
բարեխօսեա անդադար հայցմամբ շնոր-
հել զթողութիւն մեր ննջեցելոցն ։

Փափկութեան դրախտին բացող բանա-

լը. Քրիստոսի բարձման ճաճանչող երկնից.
սափոր ոսկեղէն լի մանանայիւ. գաւա-
զան ծաղկեալ յարմատոյն Յեսսեայ. տա-
ճար լուսոյ մայր. ամ ծրն :

Ցօղ քաղցրածաւալ. ցանկալի զուարթ-
նոցն. Նիւթեղէն սրովբէ. գեղ մարգար-
տափայլ, Հին Եկեղեցւոյ. մաքուր ա-
զատնի, ամպ հովանաւոր սուրբ կոյս Մա-
րիամ. ամ ծրն :

Խաչէ. Ով պահապան որ ծագեցար յԵդե-
մայ, Նըշան յաղթութեանն ընդդէմ անե-
րեւոյթ թշնամւոյն :

Դու փակեալ դրախտին բացող և առաջ-
նորդ աւազակին. որ զբոցեղէն սուրն
կապեցեր ՚ի նեղին հրամանաւ :

Փառք Հօր և Որդւոյ և. Այժմ և միշտ և.

Քեւ ցնծան ըստորայինքս ամենայն ՚ի միւ-
սանգամայն քո պանծացեալն. և յաւէժ զուար-
ճանան դասք անմարմնոցն առ Էլիցս :

Ալէլուիա ալէլուիա.

Երանելիք են որք բնակեալ են ՚ի տան
Տեառն յաւիտեանս յաւիտենից օրհնես-
ցեն զքեզ :

Ընթերցուած յԱռակաց ։

Արդարքն յաւիտեան կեցցեն, եւ ՚ի Տեառնէ են վարձք նոցա, եւ խնամք նոցա ՚ի բարձրելոյն ։

Վասն այնորիկ ընկալցին զարքայութեանն վայելչութիւն, և զթագն գեղեցկութեան ՚ի ձեռանէ Տեառն. զի աջով իւրով հովանի լիցի նոցա, և բազկաւ իւրով վերակացու լիցի նոցա ։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ ։

Այսպէս ասէ Տէր. ահաւասիկ ես դարձուցանեմ ՚ի դոսա իբրեւ զգետ զխաղաղութիւն, և իբրեւ զհեղեղատ յորդեալ զփառս հեթանոսաց. զմանկունս դոցա ՚ի վերայ ուսոց իւրեանց բարձեալ բերիցեն, եւ ՚ի վերայ ծնգաց իւրեանց գգուիցեն ։

Որպէս մայր զմանուկ իւր գգուիցէ, այնպէս գգուեցից զձեզ ։

Եւ յԵրուսաղէմ մխիթարեսջիք. և տեսջիք և խնդասցեն սիրտք ձեր, եւ ոսկերք ձեր իբրեւ զդալար զուարճասցին. եւ ծանիցի ձեռն Տեառն երկիւղածաց իւրոց, և սպառնասցի անհաւանից ։

*Պօղոսի առաքելոյն ՚ի Կորնթացւոց առաջին Թղթոյն է ընթերցուածս ։*

*Մինչ տղայն էի՝ իբրեւ զտղայ խօսէի, իբրեւ զտղայ խորհէի. իբրեւ զտղայ համարէի. այլ յորժամ եղէ այր՝ զտղայութեանն ՚ի բաց խափանեցի։*

*Այժմ տեսանեմք իբրեւ ընդ հայելի օրինակաւ, այլ յայնժամ դէմ յանդիման. այժմ խելամուտ եմ փոքր ՚ի շատէ, այլ յայնժամ գիտացից՝ որպէս եւ նայն ծանեաւ զիս ։*

*Բայց արդ՝ մնան հաւատք՝ յոյս՝ սէր, սոքա երեքեան. և մեծ քան զսոսա սէր է ։ Զհետ երթայք սիրոյ, եւ նախանձաւոր լերուք հոգեւորացն, առաւել զի և դուք մարգարէանայցէք ։*

*Ալէլուիա ալէլուիա.*

*Կարդացին արդարքն առ Տէր, և Տէր լուաւ նոցա. յամենայն նեղութենէ նոցա փրկեաց զնոսա ։*

*Ալէլուիա Օրհնի ։*

*Խաղաղութիւն ամենեցուն ։*

*Եւ ընդ հոգւոյդ քում ։ Երկիւղածութեամբ լուարուք ։*

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։
Պռօսխումէ ։ Ասէ Աստուած ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Յայնմ ժամանակի պատասխանի ետ Յիսուս՝ եւ ասէ . Գոհանամ զքէն Հայր՝ Տէր երկնի և երկրի . զի ծածկեցեր զայս յիմաստնոց և 'ի գիտնոց , և յայտնեցեր տղայոց . այո՛ Հայր . զի այսպէս հաճոյ եղեւ առաջի քո ։

Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ . Եւ ոչ ոք ճանաչէ զՈրդի եթէ ոչ Հայր . և ոչ զՀայր ոք ճանաչէ՝ եթէ ոչ Որդի , և ում Որդին կամի յայտնել ։

Եկայք առ իս ամենայն վաստակեալք եւ բեռնաւորք , և ես հանգուցից զձեզ . առէք զլուծ իմ 'ի ձեզ , և ուսարուք յինէն զի հեզ եմ եւ խոնարհ սրտիւ . եւ գտջիք հանգիստ անձանց ձերոց . զի լուծ իմ քաղցր է . և բեռն իմ փոքրոգի ։

Քարոզ ։

Վասն հրաժարելոյ անձանց ննջեցելոց՝
զՏէր աղաչեսցուք ։
Տէր ողորմեա ։

Վասն քաւութեան մեղաց և թողութեան
յանցանաց սորա և մեր՝ զՏէր աղա։
Վասն առաջնորդելոյ սմա յանդաստուեր
օթեւանս, ուր պատրաստեալ Որդին մի-
ածին 'ի տան Հօր իւրոյ՝ զՏէր աղա։
Վասն լսելոյ սմա զձայն կենարար փողոյն,
և վերանալ ընդ առաջ Փրկչին՝ զՏէր աղա։
Վասն արժանի լինելոյ սմա դասիլ յաջա-
կողմեան դասուն՝ զՏէր աղա։
Վասն հոգւոյն հանգուցելոց, որք ճշ-
մարիտ եւ ուղիղ հաւատով 'ի Քրիստոս
ննջեցին, զՏէր աղա։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Տէր Աստուած Յիսուս Քրիստոս՝ թագաւոր յաւիտենից՝ լոյս մեր եւ ապաւէն Որդի Աստուծոյ ճշմարիտ. ճառագայթ անշիջանելի. լոյս 'ի լուսոյ, եւ կեանք 'ի կենաց. Հօր սահման և բան. բժիշկ հոգւոց եւ պատիչ վիրաց մերոց, որ բժշկես զբեկեալ սիրտս, եւ պատես զամենայն

վէրս նոցա ։ Որ ոչ խոտան համարեցար զմանկունս առնուլ 'ի գիրկս քո՝ և օրհնել զնոսա. այլ սաստեցեր եւս աշակերտացն քոց. թէ մի՛ արգելուք զդոսա. և հաստատեցեր անսուտ հրամանաւդ. թէ այդպիսեացդ է արքայութիւնն երկնից ։ Արդ՝ 'ի ձեռն բանիդ այդորիկ՝ ընկալ զտղայս զայս յարքայութեան քում, գրելով 'ի գիրս ազատութեան որդեգրեցելոցն Հօր քո բարերարի ։ Ընդ որում քեզ՝ և Հոգւոյդ Սրբոյ վայելէ փառք՝ իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Քեզ երկրպագանեմք, եւ զքեզ աղաչեմք. և 'ի քէն խնդրեմք Տէր մեր Յիսուս Քրիստոս. որ իշխանդ ես և Տէր՝ սպանանել և կեցուցանել, հարկանել և բժշկել ։ Քո անճառ գթութեամբդ՝ եւ անբաւ մարդասիրութեամբդ գթա 'ի վերայ ամենայն հաւատացեալ ննջեցելոց, և մանաւանդ 'ի վերայ տղայիս այսորիկ՝ որ այժմս հանգուցեալ է ։ Ընկալ զսա 'ի լուսեղէն խորանսդ 'ի յարկսն արդարոց ընդ

երջանիկ տղայոցն այնոցիկ, որ վասն քո փոխանակեցան 'ի Բեթղեհեմ ։ Եւ մեզ հաւատացելոցս 'ի քեզ՝ ուղարկաւորացս սորա՝ շնորհեա հոգւի զգաստութեան կանխել միշտ 'ի սէր և յերկիւղ քո, և թողութիւն գտանել 'ի քէն ։ Եւ գոհանալով փառաւորել զքեզ ընդ Հօր՝ և Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Եւ ապա ասի Շարական .

Գ.Զ. Կեա՛նք 'ի կենաց լոյս 'ի լուսոյ որ ըստեղծեր զմեզ 'ի հողոյ . Նորոգեցեր դարձեալ կրկին ծննդեամբ սրբոյ Աւազանին, զոր կեցուցեր շնորհիւ քոյին 'ի մահուանէն այն առաջին. 'ի յօթեվանս Հօր քո լուսոյ ըզննջեցեալըս մեր հանգո։ Հոգւով լըցեր զմարդն առաջին, զոր կառուսեալ խաբմամբ չարին. ըզնոյն հոգի բանիւ քոյին հեղեր յոգիս մեր վերըստին. Նովին Հոգւով Սուրբ եւ բարի առաջնորդեա հոգւոյ սորին. 'ի յօթե.

Ի դնել բեմին բազմին փեսային, եւ

տուածգամստողին զարդարի. Գաբրիէլեան փողն գոչէ. սուրբք ամենայն անդ հաւաքին. արդարոց դասքն բերկրին. իսկ մեղաւորքն թախանձին. ողորմ:

Հոգւոցն հանգուցելոյ Քրիս: Վասն հանգուցելոյ:
Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ է:
Հայր մեր որ յերկինս:

---

Տանին 'ի գերեզման, ասելով. Բազմերամք: Ես ասացի: Մինչ հերձեան 'ի գերեզման, հանգիստ առնեն և կարդան զԱւետարան. Յայնմ ժամանակի. (Տես յերես 353):

Եւ երթալով 'ի գերեզման ասեն, Շարական.

ԲՁ. Որ կոչեցեր առ քեզ Տէր զտիեզերս ամենայն, ընկալ զմեր ըզննջեցեալսն 'ի գոգ նահապետին Աբրահամու, ողորմած Տէր փրկիչ և բարերար:
Որ թողութեանց ես տուող Աստուած; թող ըզմեղս մեր ննջեցելոցն. կարող յամենայնի և հզօր. ողորմ:

Որ լուսատու ես տիեզերաց Քրիստոս Աստուած. լուսաւորեա և զմեր ըզննջե-ցեալսն լուսով երանաւէտ զուարթնոցն. ողոր։

Մեծ. Սուրբ և աստուածածին Մարիամ, ցանկալի կուսից և պարծանք ազգի մարդկան, մայր և աղախին մեծացու-ցանեմք։

Անկէզ մորենի և տաճար ընդհանուր լուսոյն, անարատ և անխախտելի կու-սութիւն. մայր և աղախ։

Խորհուրդ կենաց և մայր կենդանու-թեան, և առագաստ հրաշալի ծագ-ման. մայր և աղախ։

Խաչ. Գլուխ սուրբ հաւատոյ և փայտ կենաց մարդկան յայտնեցաւ, զոր տեսեալ այսոյն ըղձոյ կործանեցաւ անկանգնելի. աղաչեմք սովաւ Փրկիչ պահպանեա զան-ձինս մեր։

Դողացաւ Թըշնամին ընդ յայտնել Սուր-բոյ Խաչին, և ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդունդս երկրի. աղա։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Երկի՛նք ցնծասցի՛ն և երկի՛րս ուրախանայր, քա՛նզի փրկի՛չ ցուցաւ Սո՛ւրբ խաչն և լո՛ւսաւոր տի՛եզերաց. ա՛ղա։

Ե— հաւատալ ՚ի Գերեզման ասէն
որպէս ՚ի Ծծի Բաղմանն։

Դարձ անձն իմ ՚ի հանգի՜ստ քո՛ զի Տէր կոչեա՛ց զքե՛զ։
Սիրեցի՛ զի լուիցէ Տէր զձայն աղօթի՛ց իմոց. զի խոնարհեցո՛յց զունկն իւր առ իս, և ես յաւուրս իմ կարդացի՛ առ նա։
Շրջեցա՛ն զինև երկունք մահու. և վիշտք դժոխոց գտի՛ն զիս։
Զնեղութի՛ւն և զանձկութիւն գտի, և զանուն Տեառն կա՛րդացի։
Ո՛ Տէր փրկեա զանձն իմ. ողորմած Աստուած մեր, ողորմի՝ և պահէ զտղա՛յս Տէր։
Ե՛ս խոնարհ եղէ՝ և Տէր կեցո՛յց զիս։
Դարձ անձն իմ ՚ի հանգիստ քո՛, զի Տէր կոչեա՛ց զքե՛զ։

Ալէլուիա ալէլուիա.

Օրհնեցէք մանկունք զՏէր եւ օրհնեցէք զանուն Տեառն։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայսմհետէ մինչեւ յաւիտեան ։

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ ։

Այսպէս ասէ Տէր ․ ոչ եւս եղիցի քեզ արեգակն ՚ի լոյս տուընջեան, եւ ոչ ծագումն լուսնի տացէ քեզ լոյս ՚ի գիշերի ․ այլ եղիցի քեզ Տէր լոյս յաւիտենական, եւ փառք քո Աստուած ։

Ոչ մտցէ քեզ արեգակն, եւ լուսին ՚ի քէն ոչ պակասեսցի ․ զի եղիցի քեզ Տէր լոյս յաւիտենական ․ եւ եղիցի հանգիստ քո պատուով ։

Ի վարդապետութենէ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերմէ ասացեալ ։

Ամենեքին որ տեսանիցեն զարդարուն ճանաչիցեն զնոսա եւ ասասցեն, սոքա են զաւակ օրհնեալ յԱստուծոյ ․ եւ ուրախութեամբ ուրախ եղիցին ՚ի Տէր ։

Եւ Տէր ամենակալ ասէ ցնոսա, եղիջիք ինձ յուստերս եւ ՚ի դստերս ։

Գութք արարչական խնամոցն յուզեսցին ՚ի նոսա, ըստ մարգարէին որ ասէ ․ որպէս գթայ հայր ՚ի վերայ որդւոց իւրոց, այնպէս գթասցի Տէր յերկիւղածս իւր ․

Զի այժմ յուսով հայելով զայս ամենայն իբրեւ ընդ հայելի տեսանեմք, բայց յայնժամ դէմ յանդիման տեսանեմք, և 'ի նոյն պատկեր նորոգիմք փառօք 'ի փառս։

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս։

Արդ որովհետեւ մանկունք հաղորդեցին արեան և մարմնոյ, և ինքն իսկ մերձաւորութեամբ կցորդ եղեւ նոցունց. զի մահուն իւրով խափանեսցէ զայն որ զիշխանութիւն մահուն ունէր, այսինքն զսատանայ. և ապրեցուսցէ զայնոսիկ որ մահուն երկիւղիւ հանապազ կէին վտարանդեալք 'ի ծառայութիւն։

Քանզի ոչ երբէք զհրեշտակաց բուռն հարկանէ. այլ զզաւակէն Աբրահամու բուռն հարկանէ։

Ուստի պարտ իսկ էր նմա ամենայնիւ եղբարց նմանել. զի ողորմած լինիցի, եւ հաւատարիմ քահանայապետ յաստուածակոյս կողմանէ անտի առ 'ի քաւելոյ ըզմեղս ժողովրդեանն։

Զի որով ինքն չարչարեցաւ զփորձ առեալ, կարող է եւ փորձանաւորացն օգնական լինել։

Ալէլուիա ալէլուիա.

Արդարքն որպէս զարմաւենիս ծաղկեսցին. որպէս զմայրսն Լիբանանու բազումք եղիցին :

Ալէլուիա Օրհն :

Խաղաղութիւն ամենեցուն :

Եւ ընդ հոգւոյդ քում : Երկիւղածութեամբ լուարուք :

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի :

Փառք քեզ Տէր Աստուած մեր :
Պռօսխումէ : Ասէ Աստուած :

Ի ժամանակի Ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի :

Յայնժամ՝ իբրեւ ետես Հերովդէս թէ խաբեցաւ 'ի մոգուց անտի, բարկացաւ յոյժ. եւ առաքեաց կոտորեաց զամենայն մանկունս որ էին 'ի Բեթղեհէմ և յամենայն սահմանս նորա յերկեմենից և 'ի խոնարհ, ըստ ժամանակին զոր ստուգեաց 'ի մոգուցն :

Յայնժամ կատարեցաւ ասացեալն 'ի ձեռն Երեմիայ մարգարէի որ ասէ. Ձայն գուժեաց 'ի Հռամայ, ողբումն եւ լալումն և աշխարումն յոյժ. Հռաքէլ լայր զորդիս իւր, և ոչ կամէր մխիթարիլ զի ոչ էին :

Քարոզ։

Վասն ուղղելոյ զգնացս մեր ՚ի ճանապարհս խաղաղութեան՝ զՏէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։
Վասն ցրելոյ ՚ի մէնջ զամենայն խորհուրդս չարին՝ զՏէր աղա։
Վասն պարգեւելոյ մեզ առողջ խորհուրդս և առաքինի վարս՝ զՏէր աղա։
Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյն իւրոյ՝ զՏէր աղա։
Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղվաղակի ընդ ոտիւք մերովք՝ զՏէր աղա։
Վասն հոգւոցն հանգուցելոց, որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ՚ի Քրիստոս ննջեցին, զՏէր աղա։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ։

Տէր ողորմեա՛։ Տէր ողորմեա՛։ Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Տէր Աստուած ամենակալ, բարերար եւ բազումողորմ, քաղցր եւ անոխակալ. որ մարդասիրութեամբ քով գթացար յազգս մարդկան, և առաքեցեր յաշխարհ զմիա-

ծին Որդիդ քո . որ եկեալ տղայացաւ յամենաասուրբ կուսէն Մարիամայ . և փրկեաց զմեզ յանիծիցն Ադամայ . եւ նորոգեաց Հոգւովդ քով Սրբով . և ազատեալ զմեզ յիշխանութենէ խաւարի . խոստացաւ մեզ կեանս անմահականս ։ Եւ արդ բազմագութ և ողորմած Տէր , գթա 'ի հոգի տղայիս այսորիկ զոր փոխեցեր յաշխարհէ աստի 'ի գաւառն կենդանեաց . և արժանի արա զսա լինել ժառանգորդ երկնից արքայութեանդ ։ Զի դու ես արարիչ ամենայնի , որ ամփոփես զհոգի և զշունչ մարդկան , և դարձեալ նորոգես որպէս և կամիս խորին քո տեսչութեամբդ ։ Ընկալ զտղայս զայս ընդ սուրբս մանկունս Բեթղեհեմի , որք վասն անճառ տնօրէնութեան միածնի քո խողխողեցան . և արժանի եղեն հոգեւոր թեւօք արագաթռիչ ելանել 'ի կամարս լուսեղէնս և հանգչիլ 'ի գոգն Աբրահամու ։ Աղաչեմք զքեզ Տէր՝ ընկալ զսա , և հան սմա մասն և բաժին ընդ ամենայն սուրբս քո . որք հաճոյ եղեն տէրութեան քում ։ Եւ քեզ ընդ Որդւոյդ միածնի եւ ընդ Հոգւոյդ ճշմարտի վայելէ.

փառք և իշխանութիւն յաւի ։

Խաղաղութիւն ամենեցուն։

Յորժամ ծագին արդարքն իբրեւ զարեգակն յարքայութեան քում Տէր՝ պայծառացեալք որպէս հրեշտակս լուսաւորս։ Յորժամ լինի յարութիւն ամենայն մարդկան՝ և փոփոխումն և նորոգումն կերպարանաց։ Յորժամ լինի միանգամայն մուտ վերին Ճանապարհին ՚ի յօթեվանս բազումս անճառ խնդութեանց, ըստ անսուտ բանի Փրկչին մերոյ, եթէ ՚ի տան Հօր իմոյ օթեւանք բազումք են։ Յորժամ մտանեն կատարեալքն յերկնային առագաստն բազում համարձակութեանց եւ լի աստուածային փառօք, իջանեն ՚ի դրախտն փափկութեան՝ և ելանեն ՚ի վերինն Երուսաղէմ։ Յայնժամ ընդ նոսին դասաւորեա Տէր՝ զննջեցեալսն մեր, եւ մանաւանդ զտըղայս զայս, զոր անարատ եւ անշաղախ կենօք առ քեզ կոչեցեր անապական ըզգեստու սուրբ Աւազանին, ցնծալ և պարել շուրջ զարքունական աթոռովդ։ Զի դու ես Տէր, որ հաստատեցեր զամենայն ՚ի փառս տէրութեան քոյ։ Եւ քեզ վայելէ փառք՝ իշխանութիւն եւ պատիւ,

այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտե-նից, ամէն:

Ապա քահանայն առ մի հող տանել ՚ի յետն խաչանիշէ, և ասէ.

Օրհնեա * Տէր՝ ողորմութեամբ քով զհողս ծառայիս քո այսորիկ, և յիշեա զսա. զի հող էր՝ եւ անդրէն ՚ի հող դարձաւ ըստ հրամանի քում: (Երկիցս կրկնէ).

Ապա յետ չհողն ՚ի գերեզմանն. և ասէ.

Օրհնութիւնն աստուածային իջցէ ՚ի հող մարմնոյ սորին. և բուսուսցէ յօրն վերջին. անուամբ Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Շարական. Դ Զ.

Հանգ. Մերձեցայ ես ՚ի դուռն գերեզմանին, եւ եհաս ինձ ժամ մահուան մտանել ՚ի յապականող երկիր յորմէ առեղծեալ եմք ամենեքեան. բըժիշկք իմաստունք և ճարտարաբանեալս, բըժըշկեա զհոգւոյ իմ զհիւանդութիւն. արարող և յոյս փրկութեան մերոյ:

Եղիցի՛ ձեռըն քո պահապա՛ն ա՛նձին ի՛-
մոյ. ե՛ւ ա՛ջ քո բարի՛ առաջնորդե՛սցէ՛ ինձ
՚ի՛ յարդա՛րու՛թիւն. բըժիշկ։

Բըղխեսցե՛ս առ իս ը՛ղձու՛մն մա՛րդասի՛-
րու՛թեանդ. ե՛ւ յաղբե՛րէ՛դ կե՛նա՛ց լը՛-
ւա՛ցե՛ս զմեղս անձի՛ն իմոյ. բըժիշկ։

Կեցցէ՜ ա՛նձն իմ օ՛րհնեսցէ՛ ը՛զքեզ զամե-
նա՜յն ա՛ւուրըս կենա՛ց իմոց. եւ առ քե՛զ
ապա՛՛ւինիմ հովի՛՛ւ բանաւո՛ր հօտի,
դարձո՛ զմո՜լորեա՛լս ՚ի հօտ քո՛ Քրի՛ստոս.
բըժիշկ իմա՛ո։

Մեծ. Ը՛զքե՛զ օ՛րհնութեա՛մբ մե՛ծացու-
ցանե՛մք։

Որ զքա՛նն Աստու՛ած յարգանդի՛ կրե-
ցե՛ր Սըրբուհի՛ անարա՛տ, ե ա՛նճառապէս
ծընա՛ր ըզվերա՛ձգողն երկնի՛ց. ը՛զքե՛զ
օ՛րհնութեա՛մբ մե՛ծա՛։

Որ էի՛ց լուսո՛յն արժա՛նի՛ եղե՛ր բառնա՛-
լո՛յ ՚ի քո գիրկս. եւ արեգա՛կանն արդա՛-
րութեան եղե՛ր արե՛ւելք. ը՛զքե՛զ օ՛րհ-
նութեա՛մբ մե՛ծա՛։

Խաչ. Զօրութի՛ւն Սո՛ւրբ Խաչի՛ քո Քրիս-
տոս որ կա՛նգնեցե՛ր ՚ի փըրկու՛թի՛ւն աշ-

խարհի. սա ուք պահեսցէ զմեզ յամե-
նայն փորձութենէ։

Քանզի ՚ի սմա բարձրացար Աստուած, եւ ՚ի սմա հեղեր զպատուական սուրբ զարիւնդ. սա ուք.

Փառք Հօր եւ Որդւոյ եւ։

Եւ ընդ քո միւսանգամ զգալուստդ նշանաւ խաչի քո ցուցեր աշխարհի. սա ուք պահեսցէ զմեզ յա։

Դարձ անձն իմ ՚ի հանգիստ քո զի Տէր կոչեաց զքեզ։

(Տե. յեր. 359)։

Ապա իջուցանեն զննջեցեալն ՚ի գերեզմանն։

Ալէլուիա ալէլուիա.

Տէր հովուեսցէ զիս եւ ինձ ինչ ոչ պակասեսցի։

Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս. եւ առ ջուրս հանգստեան սնոյց զիս։

Դարձոյց զանձն իմ առ իս, եւ առաջնորդեաց ինձ ՚ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ։

Թէպէտ և գնայցից ես 'ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց 'ի չարէ. զի դու Տէր ընդ իս ես ։

Ցուպ քո եւ գաւազան՝ նոքա մխիթարեսցեն զիս ։

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան՝ ակն յանդիման նեղչաց իմոց ։

Օծեր իւղով զգլուխ իմ. բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս ։

Ողորմութիւն քո Տէր, զհետ իմ եկեսցէ զամենայն աւուրս կենաց իմոց. բնակիլ ինձ 'ի տան Տեառն ընդ երկայն աւուրս ։

Մաղթանք ։

Տէր, ուղղեա զգնացս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան ։ Տէր, ուղղեա և առաջնորդեա հոգւոց մերոց եւ ամենայն հաւատացելոց գնալ յարդարութեան ճանապարհն և 'ի կեանսն յաւիտենից ։

Քարոզ ։

Աղաչեսցուք զամենակալն Աստուած, զի յաջողեալ ուղղեսցէ զճանապարհս ծառայից իւրոց 'ի բարի և 'ի խաղաղութիւն ։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեա ։

Աղօթք ։

Առաջնորդ կենաց և պարգեւիչ խաղաղութեան Քրիստոս Աստուած մեր, առաջնորդեա մեզ գնալ 'ի ճանապարհս քո արդարութեամբ և խաղաղութեամբ ժամանել 'ի նաւահանգիստ կենաց և փրկութեան շնորհօք ողորմութեան քո. զի դու ես օգնական և փրկիչ մեր. և քեզ վայել է փառք իշխանութիւն և պա ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Օրհնեալ ես Տէր Աստուած փրկիչ մեր, որ յամենայն ժամ ընդ մեզ ես, և ոչ երբեք թողուս 'ի ձեռանէ քումմէ զայնոսիկ՝ որք հաւատով եւ ճշմարտութեամբ կարդան առ քեզ ։ Աղաչեմք եւ խնդրեմք 'ի քէն Տէր, ճանապարհորդակից լեր ծառայից քոց՝ քոյին վերակացութեամբդ պահելով 'ի խաղաղութեան. եւ առաջնորդեա մեզ միւսանգամ՝ խաղաղութեամբ եւ խնդութեամբ հասանել յիւրաքանչիւր բնակութիւնս 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր. որում վայել է փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Եւ դարձեալ հող յգէ, և ասէ.

Հող օրհնութեան իջցէ 'ի գերեզման սո-րին, և թուսուսցէ յօրն վերջին, անուամբ Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

( Երէց՝ կրկնէ )։

Ապա ծածկեն հողով, և ասեն աղօթելով։

Ողորմած Աստուա՜ծ քաւեա՛ զանօրէնու-թիւնս իմ։

Հաւատ ունելո՛վ հոգի՛ խաղաղութեա՛ն, Երթ առ արարի՛չըն հայցելո՛վ. Աստուա՛ծ իմ հա՛նգո՛։

Ես ասացի՛ 'ի զարմանա՛լ իմում, թէ ամե-նայն մարդ սո՛ւտ է՛։

Հաւատ ունելո՛վ հոգի՛ խաղաղութեա՛ն, Երթ առ արարի՛չըն հայցելո՛վ. Աստուա՛ծ իմ հա՛նգո՛։

Զճանապա՛րհս իմ ուղի՛ղ արա ինձ ըստ բանի՛ քո՛ւմ. և մի՛ տիրեսցեն ինձ ամե-նա՛յն մե՛ղք։

Հաւատ ունելո՛վ հոգի՛ խաղաղութեա՛ն, Երթ առ արարի՛չըն հայցելո՛վ, Աստուա՛ծ իմ հա՛նգո՛։

Որ ետո՛ւր հոգի Յիսո՛ւս, ըզմա պահեա՛

զի քո խաչի՛ եւ Յարութեա՛նըդ հաւատաց Թագաւորի երկնաւորի, հանգո ըզհոգի սորա յիշելով սորա զհաւատս :
Ի՛ քաղաքս Տեառըն փորձութեանց եւ 'ի քաղաքս Թագաւորին մեծի. ուր ժողովք սրբոցն են 'ի խաղաղութեան, բնակեսցես յուսով եւ հանգիցես ընդ հրեշտակաց դասս, տեսանել ըզլոյսն յաւիտենից :
Մերձեցաւ անձն իմ 'ի հող յորմէ ստեղծեր զիս, եւ հոգւոյս մեկնեալ յինէն. Տէր զապաւինեալս յիշեա՛ 'ի քում գալըստեանն :
Ստեղծեալ եմ անարատ ձեռաց քոց մի՛ անտես առներ, այլ խնայեա՛ յիս յահագին աւուրն. Տէր զապաւինեալս յիշեա՛ 'ի քում գալըստեանն :
Յորժամ գաս փառօք Հօր դատել ըզտիեզերս ամենայն, եւ հարկանի փող հընչման յարութեան Տէր :

Փառք Հօր եւ Որդւոյ եւ. Այժմ եւ միշտ եւ.

Ընդ Աբրահամու ծոցն հանգելով յաղթող լերուք փորձողին. եւ ընդ հրեշտակս երգեսցուք. Փառք քո պարգեւողին Աստուծոյ :

Փառք ՚ի բարձունս Աստուծոյ . և յերկիր խաղաղութիւն ՚ի .

Փառք՝ պատիւ և երկրպա ։

Եղի՛ն զիս ՚ի գբի ներքնումն ՚ի խաւարի և ՚ի ստուերս մահու ։
Տէր Աստուած փրկութեան իմոյ ՚ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո ։

Քարոզ ։

Վասն ՚ի վերուստ պահպանութեան ՚ի Ցեառնէ անձանց մերոց , եւ հաճոյական աղօթս առնելոյ՝ զՏէր աղաչեսցուք ։
Տէր ողորմեա ։
Վասն ընդունելոյ Տեառն Աստուծոյ զհոգի հանգուցելոյս ՚ի հանգստեան արդարոց՝ զՏէր աղա ։
Վասն թողլոյ սմա զյանցանս զկամայ եւ զակամայ՝ զՏէր աղա ։
Վասն արժանի լինելոյ սմա՝ խաղաղութեանն և մեծաւ յուսով սպասել տեառնագալուստ փողոյն՝ զՏէր աղա ։
Վասն քաղցրաբարբառ լսելոյ սմա զահաւոր ձայնն որ ասէ , եկէք արքք՝ ահա գայ Քրիստոս՝ զՏէր աղա ։
Վասն համարձակապէս տեսանելոյ սմա

զանապական եւ զանստուեր լոյսն՝ զՏէր
աղաչեմ ։

Վասն աչալրջութեամբ եւ առանց ամօթոյ կալ սմա առաջի արդար դատաւորին Քրիստոսի՝ զՏէր աղա ։

Վասն տալոյ սմա տեղի ՚ի հայրական խընամոցն յաջակողմեան դասուն՝ զՏէր աղա ։

Վասն լսելոյ սմա զերանաւէտ զձայնն , Եթէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ՚ի տեղի հանգստեան՝ զՏէր աղա ։

Վասն պարգեւելոյ սմա զերկնային պսակն կենաց և անմահութեան՝ զՏէր աղա ։

Վասն հրեշտակի խաղաղութեան աւանդելոյ զհոգի սորա ՚ի տեղի արդարոցն՝ զՏէր աղա ։

Վասն առաքման շնորհաց մեծի՝ եւ ամենազօր աջոյն Քրիստոսի ՚ի հողանիւթեայ յարկ տապանի սորա՝ զՏէր աղա ։

Վասն կնքելոյ զգերեզմանս զայս նշանաւ խաչին իւրոյ մինչև ՚ի գալուստն իւր սուրբ՝ զՏէր աղա ։

Վասն առաքելոյ զշնորհս Հոգւոյն Սրբոյ ՚ի սիրտ լսողաց հաւատացելոց անուան իւրոյ՝ զՏէր աղա ։

Վասն մխիթարելոյ զվշտացեալս սրտիւք

՚ի ձեռն ողորմութեան իւրոյ՝ զՏէր աղա.
Վասն պահելոյ զմիացորդս սորա յամենայն
հնարից սատանայի՝ զՏէր աղա.
Վասն հոգւոյն հանգուցելոյ՝ որք ճշմա-
րիտ և ուղիղ հաւատով ՚ի Քրիստոս ննջե-
ցեալ են՝ զՏէր աղա.
Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ.
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու.
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ.

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա.

Աղօթք.

Աստուած յաւիտենական, որ արժանի արարեր զծառայս քո զայս՝ դառնալ անդրէն ՚ի հող ուստի ստեղծաւ. Եւ այժմ բարերար և մարդասէր Տէր՝ օրհնեա զհողախշտի բնակութիւն ծառայիս քո այսորիկ. կնքեա և պահեա զոսկերս սորա ամրածածուկ աջովդ քով Սրբով. զի ՚ի հօտէ խաշանց քոց է և ՚ի հաւատացելոց ՚ի Տէր մեր Յիսուս Քրիստոս. Աղաչեմք զքեզ Հայր երկնաւոր՝ ՚ի վերայ ննջեցեալ տղայիս այսորիկ. յիշեա զհոգի սորա, եւ խառնեա ՚ի գունդս հրեշտակաց, եւ ՚ի թիւս այնոցիկ որ սիրեցին զօր երեւելոյ.

գալստեան միածնի քո ։ Ի գոչել աստուածային փողայն՝ եւ յերեւիլ սրբոյ Խաչին՝ պայծառասցի սա յանանց լոյսն, և ընկալցի զգեղափայլ կերպարանն. զուարթ երես կացցէ առաջի ահաւոր բեմի միածնի քո, եւ առանց ամօթոյ տեսցէ զԹագաւորդ փառաց ։ Որ եւ զմեզ արժանի արասցես ընդ Սուրբս քո փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ եւ միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Փառաւորեալ է անուն քո սուրբ՝ Թագաւոր անմահ, որ պատրաստեցեր մեզ հանգիստ յերկրաւոր աշխատութեանցս՝ զանախտ եւ զանաշխատ կեանսդ 'ի հանդերձեալ աշխարհին՝ 'ի ձեռն միածնի Որդւոյ քո սիրելւոյ. որ սպան զմահ՝ և լուսաւորեաց զմեզ 'ի կեանս և յանեղծութիւն. փրկեաց զմեզ յիշխանութենէ խաւարի. և փոխեաց յարքայութիւնդ երկնից. Արդ՝ աղաչեմք եւ խնդրեմք 'ի քէն Տէր՝ առաքեա զպահպանողական զօրութիւն աջոյ քո, եւ օրհնեա զտեղի հանգստեան սորա. զի 'ի գոչել փողոյ գալստեան մի-

անձնի քո՝ Նորոգեսցի սրաթռիչ թեւօք վերանալ յարքայութիւնդ երկնից ընդ այլ սրբոց քոց ։ Եւ ընդ Նոսին փառաւորել զՔեզ Հայր՝ ընդ Որդւոյ և ընդ Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Եւ ապա ասէ Շարական.

Փառաց ՚ի փառս բարձրանեան, աշխակող-մեռա՛նքըն վերանան, յորժամ լըսեն զերա՛նական ձայն օրհնութեան ՚ի քէ՛ն կոչման. Ննջեցելոյս մեր լըսեցո զաստուածայի՛ն բարբառըդ քո. դասաւորեա ըզսա՛ վերնոցն երգե՛լ ըզփառս ընդ զըւարթնո՛ցն ։

Քահանայք և ժողովուրդք հայցեմք ՚ի քէն Տէր բարեգութ, ընդ ննջեցեալսն հաւատով ընկալ ըզմեզ նովի՛ն յուսով. յԵրուսաղէմ քաղաքն վերին յորում արդարքըն ժողովին. փառս վերերգել միշտ ընդ նոսին Երրորդութեանդ երրեակ անձի՛ն ։

Փայլեն արդարքն յարքայութեան և ճըրգնաւորքն ՚ի հանգըստեանն. մարտիրոսքըն պըսակին և կուսանաց լապտերք վառին.

դասեսցես Տէր ընդ նոսին որք զքեզ Աստուած խոստովանին. արդարութեամբ մի դատեսցին այլ գթութեամբ քո քաւեսցին.

Քո անպատում խոնարհութեամբդ որ թաղեցար մեռելութեամբ, եւ յարուցեր յորդւոց մարդկան որք հաւատով ՚ի քեզ անկան. յարո եւ զմեզ արդարութեամբ եւ զննջեցեալսն ողորմութեամբ. զի կենդանեացըս բերանով տացուք քեզ փառս ընդ Հօր Հոգւով։

Հոգւոցն հանգուցեալ։ Ձայն հանգ։ Քրիստոս Որդի Ա։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կե։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Օրհնեսցի ✠ եւ կնքեալ պահեսցի գերեզման եւ ոսկերք ծառայիս Աստուծոյ, նշանաւ սուրբ Խաչիս, եւ բանիւ սուրբ Աւետարանիս, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կե։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Օրհնեսցի ✠ եւ կնքեալ պահեսցի շիրիմ և ոսկերք ծառայիս Աստուծոյ, նշա։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կե ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւ ։

Օրհնեսցի ※ և կնքեալ պահեսցի դամբարան և ոսկերք ծառայիս Աստուծոյ, Նըշա։

կեցուսցէ և ողորմեսցի ։

Անշարժ եղիցի կնիք ※ տէրութեան ՚ի վերայ գերեզմանի ծառայիս Աստուծոյ՝ մինչեւ ՚ի գալուստն Քրիստոսի. որ եկեալ միւսանգամ նորոգեսցէ փառօք ՚ի փառս Հօր և Հոգւոյն Սրբոյ, ամէն ։

Հայր մեր որ յերկինս ։



# ԿԱՆՈՆ

## ՏՂԱՅԻ ԱՅԳՈՒՑ ԿԱՏԱՐԵԼՈՑ



Երթան ՚ի գերեզմանն և առնեն գոթղայ մի Անքէծ·

Եւ ապա ասէ Շարական, Դկ.

Սղբ. Երանելի սուրբ մանկունքն որպէս քաջ նահատակք ետուն զանձինս իւրեանց ՚ի մահ փոխանակ Որդւոյն Աստուծոյ։

Եւ դիակունք սուրբ մանկանցն որպէս ըղձաղիկ նորանենեայց հարեալ ՚ի կարկըտէ, եւ անկեալ ՚ի սուրբ Բեթղեհէմ։

Եւ հոգիք սուրբ մանկանցն որպէս զերամս աղաւնեաց թռուցեալք ՚ի յերկինս. եւ դասեալք ընդ զուարթունս երկնից։

Ղող. Յիսուս միածին անմահութեանց
պարգեւատուն երեւեցաւ մեզ, խա-
փանեաց զզօրութիւն մահու։

Բղխումն մեր արտասուաց Մարիամու եւ
Մարթայի անկեալ առ ոտսն Տեառն,
խնդրէին զնորոգումն եղբօրն։

Բանին և բանն Աստուած կենագործեաց
ըզՂազարոս 'ի Թաղմանէ, և եկեալ
արտաքս անապական։

Յար. Յորժամ եկին 'ի գերեզմանն իւ-
ղաբեր կանայքն. եւ բերին զխունկսն
'ի խնկել զանապական մարմինն։

Յայնժամ հրեշտակն աւետարանէր յա-
րեան Քրիստոսի. պատմեցէք աշակեր-
տացն զյարութիւնն Տեառն։

Իսկ նոցա զարհուրեալ վասն ահագին
տեսլեանն. պատմէին աշակերտացն զա-
հագին տեսիլն։

Հոգ. Աղբիւր կենաց բաշխող շնորհաց
Հոգիդ իջեալ 'ի բարձանց. զանապական
պարգեւօք քո բաժանեցեր յառա-
քելսն։

Որ 'ի վերայ ջուրցն գոլով ստեղծանէիր

զարարած . իջեալ ՚ի ջուրս աւազանին ծնանիս Որդիս Աստուծոյ :

Որ զարդարեալ նորոգես միշտ ըզնոր քո զեկեղեցի . պէս պէս շնորհաց քոց պարգեւօք փայլին մանկունք սորա :

Հանգ. Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ ՚ի հրեղէն կառս . յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց , եւ հանգո ընդ սուրբըս քո :

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան և ներող յանցանաց մերոց . յիշեա զհո :

Որ միւսանգամ գալոց ես հայրենի փառօք նորոգել զնախաստեղծին ծընունդ . յիշեա զհո :

Մեծ. Ի քեզ եմք ապաւինեալ Քրիստոսի մայր Աստուծոյ մերոյ :

Որ քան զերկինըս բարձրագոյն Մարիամ, պարծանք եկեղեցւոյ . Քրիստոս :

Որ քան զարեգակն պայծառագոյն Մարիամ, մի դադարիր բարեխօսել վասն մեր , Քրիստոսի մայր Աստու :

Խաչ. Սուրբ զխաչ քո շնորհեցեր զէն եկեղեցւոյ քում սրբոյ . որով դատա-

պարտեալ պարտեցաւ թշնամին ։

Սովաւ պահպանեա զժողովուրդս քո Քրիստոս . որով երկրպագեմք քեզ ընդ Հօր և Հոգւոյն ։

Ի քեզ ապաւինիմք Քրիստոս որ գալոց ես խաչիւ . որպէս զի փրկեսցես ըզմեզ յայնմ աւուր ահեղ ատենին ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Ընդ սուրբս քո դասեա և ընդ արդարսն պսակեա 'ի տեղի անկելոց հրեշտակաց ըզննջեցեալսն մեր կարգաւորեա . որ ողորմած ես յամենայնի ։

Ալէլուիա ալէլուիա .

Օրհնեցէք մանկունք զՏէր . եւ օրհնեցէք զանուն Տեառն ։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ , յայսմհետէ մինչեւ յաւիտեան ։

Ընթերցուած յԷսայեայ մարգարէէ ։

Այսպէս ասէ Տէր . յաւուր յայնմիկ մոռասցին զնեղութիւնս առաջինս , եւ ոչ եւս անկցի 'ի սիրտս նոցա ։

Զի եղիցին երկինք նոր եւ երկիր նոր ,

այլ օրհնութիւն եւ ցնծութիւն գտցեն
զոր ես հաստատեցից ։

Զի 'ի Տեառնէ եղիցի դարձ նոցա . եկեսցեն 'ի Սիոն ցնծութեամբ եւ ուրախութեամբ յաւիտենից . զի 'ի վերայ գլխոց նոցա ցնծութիւն և ուրախութիւն հասցէ ։ Մերժեցան ցաւք եւ տրտմութիւնք եւ հեծութիւնք . զի ես եմ որ մխիթարեմ զձեզ յամենայն տրտմութեանց ձերոց ասէ Տէր ամենակալ ։

Պօղոսի առաքելոյն 'ի Կորնթացւոց առաջին թղթոյն է ընթերցուածս ։

Քանզի փող հարկանի , եւ մեռեալք յարիցեն առանց ապականութեան , եւ մեք նորոգեսցուք ։

Զի պարտ է ապականութեանս այսմիկ զգենուլ զանապականութիւն , և մահկանացուիս այսմիկ զգենուլ զանմահութիւն ։ Այլ յորժամ մահկանացուս այս զգեցցի զանմահութիւն , և ապականութիւնս զանապականութիւն , յայնժամ եղիցի բանն՝ որ գրեցաւ . եթէ ընկլաւ մահ 'ի յաղթութիւն ։

Ո՞ւր է մահ յաղթութիւն քո . ո՞ւր դժոխք խայթոց քո ։

Խայլթոց մահու մեղք են, եւ զօրութիւն մեղաց օրէնք։
Այլ շնորհք Աստուծոյ՝ որ ետ մեզ զյաղթութիւն 'ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Ալէլուիա ալէլուիա.

Հոգի քո Տէր բարի՝ առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ։

Ալէլուիա Օրթի։
Խաղաղութիւն ամենեցուն։
Եւ ընդ հոգւոյդ քում։ Երկիւղածութեամբ լուարուք։
Որբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։
Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ։

Եթէ սիրէք զիս զպատուիրանս իմ պահեսջիք, և ես աղաչեցից զՀայր, և այլ մխիթարիչ տացէ ձեզ. զի ընդ ձեզ բնակեսցի 'ի յաւիտեան. զՀոգին ճշմարտութեան. զոր աշխարհս ոչ կարէ ընդունել, զի ոչ տեսանէ զնա, և ոչ ճանաչէ զնա. բայց դուք ճանաչէք զնա, զի առ ձեզ բնակեսցի, և ընդ ձեզ եղիցի։

Ո՛չ թողից զձեզ որբս. գամ առ ձեզ. փոքր միւս եւս՝ եւ աշխարհս ոչ եւս տեսանէ զիս, բայց դուք տեսանիցէք զիս. զի ես կենդանի եմ, և դուք՝ կենդանի լինելոց էք։

Քարոզ։

Վասն 'ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց, զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց, զՏէր աղա։

Վասն քաւիչ եւ ներող լինելոյ Աստուծոյ 'ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա։

Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր զկամայ և զակամայ, զՏէր աղա։

Վասն զի մի ընդ խոտանսն դտանիցիմք յաւուրն պատասխանատուութեան, ըզ-Տէր աղա։

Վասն հոգւոցն հանգուցելոց՝ որք ճշմարիտ և ուղիղ հաւատով 'ի Քրիստոս ննջեցին՝ զՏէր աղա։

Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։

Ողորմեսցի մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Աղօթք ։

Օրհնեալ ես միածին Որդի Աստուծոյ՝ Տէ՛ր մեր Յիսուս Քրիստոս. որ ամենառատ գթութեամբ քով մարմնացար 'ի սուրբ կուսէն Մարիամայ, և պարգևեցար մեզ 'ի խաչին նուէր հաշտութեան Հօր՝ հեղմամբ քո սուրբ արեանդ։ Թաղեցար 'ի գերեզմանի, եւ իջեր 'ի դժոխս, եւ ազատեցեր զհոգիսն որ 'ի նմա. 'ի սուրբ միաշաբաթին յարուցեալդ 'ի մեռելոց՝ ձայնելով հզօր քո բանիւդ, թէ որք 'ի կապանսդ էք՝ ելէք, եւ որք 'ի խաւարի՝ յայտնեցարուք։ Ուստի եւ մեք 'ի սուրբ եւ 'ի լուսաւոր յարութեան քո եկեալ 'ի գերեզմանս մեռելոց, կենսատու Սուրբ Խաչիւս եւ Սուրբ Աւետարանաւս աւետեմք սոցա զարթնչելն եւ զանսուտ յոյս վերստին նորոգմանն՝ զոր խոստացար մեզ։ Վասն որոյ աղաչեմք զամենագութ Փրկիչդ մեր միաբան ծառայքս քո, խոնարհեաց Տէ՛ր՝ յաղաչանս մեր՝ և՝ հանգո զհոգի տղայիս այսորիկ շնորհօք ողորմութեան քո։ Որպէս զի տնկակից եղեալս նմանութիւն մահու քո, լիցի եւ

Ո՛չ թողից զձեզ որբս. գամ առ ձեզ. փոքր միւս եւս՝ եւ աշխարհս ոչ եւս տեսանէ զիս, բայց դուք տեսանիցէք զիս. զի ես կենդանի եմ, և դուք՝ կենդանի լինելոց էք։

Քարոզ։

Վասն ՚ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց, զՏէր աղա-
չեսցուք։ Տէր ողորմեա։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայ-
նի աղաչանաց մերոց, զՏէր աղա։

Վասն քաւիչ եւ ներող լինելոյ Աստուծոյ
՚ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա։

Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր
զկամայ և զակամայ, զՏէր աղա։

Վասն զի մի ընդ խոտանսն դատանիցիմք
յաւուրն պատասխանատուութեան, ըզ-
Տէր աղա։

Վասն հոգւոյն հանգուցելոց՝ որք ճշմա-
րիտ և ուղիղ հաւատով ՚ի Քրիստոս ննջե-
ցին՝ զՏէր աղա։

Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մե։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

### Աղօթք ։

Օրհնեալ ես միածին Որդի Աստուծոյ՝ Տէր մեր Յիսուս Քրիստոս. որ ամենառատ գթութեամբ քով մարմնացար ՚ի սուրբ կուսէն Մարիամայ, և պարգեւեցար մեզ ՚ի խաչին նուէր հաշտութեան Հօր՝ հեղմամբ քո սուրբ արեանդ։ Թաղեցար ՚ի գերեզմանի, եւ իջեր ՚ի դժոխս, եւ ազատեցեր զհոգիսն որ ՚ի նմա. ՚ի սուրբ միաշաբաթին յարուցեալդ ՚ի մեռելոց՝ ձայնելով հզօր քո բանիւդ, թէ որք ՚ի կապանսդ էք՝ ելէք, եւ որք ՚ի խաւարի՝ յայտնեցարուք։ Ուստի եւ մեք ՚ի սուրբ եւ ՚ի լուսաւոր յարութեան քո եկեալ ՚ի գերեզմանս մեռելոց. կենսատու Սուրբ Խաչիւս եւ Սուրբ Աւետարանաւս աւետեմք սոցա զսքանչելի եւ զանսուտ յոյս վերստին նորոգմանն՝ զոր խոստացար մեզ։ Վասն որոյ աղաչեմք զամենագութ Փրկիչդ մեր միաբան ծառայքըս քո, խոնարհեաց Տէր՝ յաղաչանս մեր՝ և հանգո զհոգի տղայիս այսորիկ շնորհօք ողորմութեան քո։ Որպէս զի տնկակից եղեալս նմանութիւն մահու քո, լիցի եւ

կցորդ կենսաբեր յարութեան քո, և վայելեսցէ զարքայութիւնդ երկնից ընդ սուրբս քո: Եւ մեք ողորմութիւն գտեալ 'ի քէն՝ փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր՝ և ընդ Սրբոյ Հոգւոյդ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Խաղաղութիւն ամենեցուն:

Յոյս յարութեան մերոյ՝ Տէր մեր Յիսուս Քրիստոս, որ աւետարանեցեր զխաղաղութիւն հեռաւորաց եւ մերձաւորաց, սպանանելով զթշնամութիւն մահու մեղաց: Գոհանամք զքէն, որ առատ մարդասիրութեամբ քով զանէծս լուծեր, զդժոխս աւերեցեր. և զմեզ զամենեսեան յարքայութիւնդ երկնից վերածեր, և 'ի դասակցութիւնս հրեշտակաց խառնեցեր: Եւ այժմ ժողովեալ մեր 'ի հանգիստ տղայիս այսորիկ՝ հնչեմք զաւետիս յարութեան ճշմարիտ բարբառով Սուրբ Աւետարանին. եւ խոնարհեալ առաջի քո՝ աղաչեմք զբարեգութ մարդասիրութիւն քո: Հանգո Տէր, զհոգի տղայիս այսորիկ ընդ ընտրեալս քո, և ժառանգակից արա զսա սրբոց քոց յարքայութեանդ երկնից: Եւ

զմեզ ընդ Նոսին արժանի արա յարազուարճ բերկրանօք օրհնել զքեզ ընդ Հօր՝ և Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Ե— ադա ածի Տարախն.

Մերով բնութեամբ զոր ընդգեցար 'ի փայտ խաչին բեւեռեցար. լուծանելով զմեզ 'ի մեղաց 'ի նախահօրըն կապանաց. լոյծ եւ զսա 'ի յանցանաց վասըն քո սուրբ չարչարանաց. լի լապտերօք մոյծ յառագաստ ընդ իմաստուն սուրբ կուսանացն։

Ցեառ կամաւոր մահու խաչի եղար 'ի նոր գերեզմանի. երեքօրեայ թաղմամբ յերկրէ նոր ըստեղծեր զմեզ կենդանի. զննջեալս ընդ քեզ 'ի հող մահու վերակոչեա ձայնիւ փողոյ. լի լապտե։

Կուսածին մարդացեալ Աստուած իմ Յիսուս. յայնմ աւուր ահեղ ատենին զգինս արեանն քո մի դատապարտեր. օգնեա եւ ինձ Քրիստոս այսօր յառաջին ճանապարհին. եւ

Չի՞ միասանգամ գալըստեանըն քո ծը-
նեալ ինձ ։

Հոգւոյն հանգուցե ։ Վասն հանգ ։ Քրիստոս Որդի Ա ։

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ ։

Օրհնեսցի * և կնքեալ պահեսցի գերեզ-
ման և ոսկերք ծառայիս Աստուծոյ, Նշա-
նաւ սուրբ Խաչիս, և բանիւ սուրբ Աւե-
տարանիս, յանուն Հօր և Որդւոյ և Հոգ-
ւոյն Սրբոյ ։

( Տէ. Երէ. 378 ) ։

Հայր մեր որ յերկինս ։



# ԿԱՆՈՆ

## ՏՂԱՅԻ ԵՕԹՆ ԱԻՈՒՐ

### ԿԱՄ

## ՔԱՌԱՍՆՕՐԵԱՅ ԵՒ ԿԱՄ ՏԱՐԵՄՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՅ



Գառբղայ մի Անբիծ։ Շարական ի յայնէն։
Գիրք, Առաքարան, Քարոզ՝ Այգուցին է։
(Տե՛ս յերես 383)։

Աղօթք։

Օրհնեալ ես բարեխնամող և բարեգութ Աստուած. որ նեղելոց ես անդորրիչ, և տրտմելոց մխիթարիչ. որ անանկաց ես ապաւէն, և սգաւորաց սփոփիչ. աշխատելոց նաւահանգիստ, եւ լքելոց զօրացուցիչ. մեղաւորաց ես քաւարան, եւ անմեղաց պատսպարան. որ յոյս ես և ապաւէն կենդանեաց և մեռելոց. Ընկալ եւ պահպանեա զհոգի ծառայիս այսորիկ Հոգւովդ քով Սրբով. պայծառացո զսա

ընդ սուրբս քո, և կարգաւորեա ընդ արդարս քո՝ անձառ փառօք եւ աննուաղելի լուսով։ Կնքեա եւ զպահարան բնակութեան սորա, եւ օրհնեա ողորմութեամբ քով։ Եւ մեզ ուղարկաւորացս սորա՝ եւ զհետ եկեալ ժողովոյս՝ շնորհեա զքաւութիւն մեղաց. փրկեա 'ի խորամանկութենէ սատանայի. և զգաստացո զսիրտս մեր 'ի հաճոյս քո. բեւեռեա զմեզ յերկիւղ քո և 'ի սէր՝ միշտ խորհիլ զպատուէր քո սուրբ հրամանիդ, և անմոռաց ունել առաջի աչաց մերոց զօրն յետին ահաւոր դատաստանիդ։ Զի արժանի լիցուք կեալ առաքինասէր վարուք՝ և ոչ յաղթիլ 'ի մարմնական զբաղմանց. և յամենայնի անդադար փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգի, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Արդ՝ և ձեզ պարտ է գոհանալ զԱստուծոյ, զի վախճանեալս ձեր՝ յերկրէս յերկինս վերացաւ. 'ի մարդկանէ 'ի հրեշտակս փոխեցաւ, 'ի մահուանէ 'ի կեանս. 'ի խաւարէ 'ի լոյս. յաղքատութենէ 'ի

Թագաւորութիւն . ’ի վաստակոց ’ի հանգիստ . ’ի տրտմութենէ աշխարհիս ’ի ’յերկնային ուրախութիւնսն . ’ի մեղաց յարդարութիւն . ’ի հողեղինացս ’ի լուսեղէնս վերացաւ , և ընդ հրեշտակս դասակարգեցաւ : Վասն այսորիկ ոչ է պարտ Քրիստոնէից սուգ առնուլ , ’ի վերայ մեռելոց՝ այլ լացցեն Հրէայք , և կոծեսցին Թերեհաւատք . զի նոքա են արժանի կոծոց և ողբոց : Այլ դուք մխիթարեցարուք՝ միւսանգամ կենդանութեամբ ամենայն ընտրելոց ’ի Քրիստոս Յիսուս ’ի Տէր մեր : Որում վայելէ փառք՝ իշխանութիւն և պատիւ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն :

Ե— ապա առ Շարական .

Սա̊րսափի՜ն տարե՛րք երկրի՝ յորժամ
փառօք գա՛ս հայրենի , արեգական լոյս
խա՛ւարի լուսի՛նն աստեղաքըն նըւաղին .
զսա յաւո՛ւրն աներե՛կի լուսաւորեա՛ լու-
սով քոյին . դա՛սաւորեա ըզսա՛ վերնոցն
երգե՛լ ըզփառս ընդ զը՛ւարթնոցն :
Յո̊ւցանի՜ն գաղտնիք մարդկա՛ն , իւրա-

քանչեւր որ գործեցան. թարեաց գոր-
ծողքըն պղսակին, չարեացն ՚ի հուրն ան-
շէջ մատնին. յայնժամ յիշեամ վառամ բա-
րին, գործըք մեղացըն ջընջեսցին. դասա։
Գըրեցա՛ւ յ եւ ՚ի գիր կենդանութեան.
եւ մեկնեցա՛ւ յ երթալ առ արարիչն
երկնի և երկրի. օգ։

Հոգւոյն հանգուցելոյ Քրիս։ Վասն հանգուցելալ։
Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ և։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք, ընկալ կե։
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Օրհնեսցի ※ եւ կնքեալ պահեսցի գե-
րեզման եւ ոսկերք ծառայիս Աստուծոյ,
նշանաւ սուրբ խաչիս, եւ բանիւ սուրբ
Աւետարանիս, յանուն Հօր և Որդւոյ և
Հոգւոյն Սրբոյ։

(Տե՛ս Երե՛ս 378)։

Հայր մեր որ յերկինս։



# ԿԱՆՈՆ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԿԱՏԱՐԵԼՈՅ

---

Ալէլուիա ալէլուիա:

ԵՐԱՆԻ որ խորհի զաղքատն և զտնանկն.
յաւուր չարի փրկէ զնա Տէր:

Տէր փրկէ զնա և կեցուցանէ, երանելի առնէ զնա ՚ի վերայ երկրի, և ոչ մատնէ
զնա ՚ի ձեռս թշնամեաց իւրոց:

Տէր օգնական է նմա ՚ի մահիճս ցաւոց իւրոց. զամենայն անկողինս նորա դարձու-
ցանէ ՚ի հիւանդութենէ նորա:

Ես ասացի Տէր ողորմեա ինձ. բժշկեա
զանձն իմ, ես մեղայ քեզ:

Թշնամիք իմ ասացին ինձ չար. Ե՞րբ իցէ
զի մեռցի, և կորիցէ անուն նորա:

Մտանէր տեսանել զնանրութիւն. խօսէր ՚ի սրտի իւրում, և ժողովէր զանօրէնու-
թիւն յանձն իւր:

Արտաքս ելանէր և զնոյն խօսէր. զինէն
շշնջէին ամենայն թշնամիք իմ:

Խորհեցան չար 'ի վերայ իմ. բան անօրէ- նութեան եդին 'ի վերայ իմ։

Մի՛ թէ որ ննջիցէ, այլ ո՞չ եւս յաւելցի յառնել. քանզի և այրն խաղաղութեան իմոյ, յոր և եսն յուսացայ։

Որ ուտէր զհաց իմ, յաճախեաց առնել ինձ խաբէութիւն։

Այլ դու Տէր, ողորմեա ինձ և կանգնեա զիս, և ես հատուցից նոցա։

Յայսմ ծանեայ՝ թէ հաճեցար ընդ իս. զի մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ։

Այլ զիս յամբծութեան իմում ընկալար, և հաստատեցեր զիս առաջի քո յաւիտեան։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայելի յաւի- տեանս յաւիտենից. եղիցի եղիցի։

Ալէլուիա ալէլուիա։

Որպէս փափագի եղջերու յաղբերս ջուրց, այնպէս փափագի անձն իմ առ քեզ Աս- տուած։

Ծարաւի է անձն իմ առ քեզ Աստուած, հզօր և կենդանի. ե՞րբ եկից երեւեցայց երեսացդ Աստուծոյ։

Եղեն ինձ արտասուք իմ կերակուր 'ի տուէ և 'ի գիշերի. և այն զի ասէին ցիս

զօրհանապազ՝ թէ ո՞ւր է Աստուած քո ։
Զայս որպէս յիշէի, տառապէր յիս անձն իմ․ քաջալերէի, զի մտից ընդ յարկաւ
սքանչելեաց տանն Աստուծոյ ։
Ի ձայն ցնծութեան խոստովանութեան,
և 'ի ձայն բարեկենդանութեան ։
Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս․ յուսա առ Աստուած խոստովանեա նմա՝ Փրկիչ երեսաց իմոց
Աստուած է ։
Անձն իմ յոյժ խռովեցաւ․ վասն այսորիկ յիշեցի զքեզ յերկրէն Յորդանանու, 'ի
Հերմոնէ լեռնէ փոքուէ ։
Խորք խորոց կարդացին առ քեզ, 'ի ձայն
սահանաց քոց ։
Ամենայն զբօսանք քո, և ալիք քո անցին
'ի վերայ իմ ։
Ի տուէ պատուիրեաց Տէր զողորմութիւն իւր, 'ի գիշերի զօրհնութիւն նոր․ և աղօթք իմ առ Աստուած վասն կենաց
իմոց ։
Ասացի Աստուծոյ ընդունող իմ ես․ ընդէ՞ր մերժեցեր զիս․ ընդէ՞ր տրտում
գնամ ես 'ի նեղել թշնամւոյ իմոյ ։
Ի փշրել ոսկերաց իմոց նախատեցին զիս

Թշնամիք իմ. յասել ցիս զօրհանապազ,
Թէ ո՞ւր է Աստուած քո:
Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեա նմա՝ Փրկիչ երեսաց իմոց Աստուած է:

Ալէլուիա ալէլուիա.

Դատ արա ինձ Աստուած. եւ իրաւ արա ինձ 'ի դատաստանի իմում:
Յազգէ որ ոչ է սուրբ, 'ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ փրկեա զիս:
Դու Աստուած հզօրիչ իմ ես. ընդէ՞ր մոռացար զիս, ընդէ՞ր տրտում գնամ ես 'ի նեղել թշնամւոյ իմոյ:
Առաքեա Տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո. զի առաջնորդեսցեն ինձ, և հանցեն զիս 'ի լեառն սուրբ և 'ի յարկս քո:
Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած, որ ուրախ առնէ զմանկութիւն իմ:
Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ Աստուած Աստուած իմ:
Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս, յուսա առ Աստուած,

խոստովանեա նմա փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Ողորմեա ինձ, Աստուած, ըստ մեծի ողորմութեան քում. ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ։

զՓոխն ըման ասա։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կե։
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգ։

Քահանայն խունկ արկանէ և ասէ.

Շարական, ԳՁ.

Հանգ. Որ երկայնամիտդ ես Տէր քաղցր եւ անոխակալ հանդերձ զհոգիս քոց ծառայից. զէ մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին։

Զյիշատակ հրաժարելոցն 'ի հանգոյս քեզ ընկալցիս. եւ զուխտս մեր ընկալ որպէս զԱբելին զՆոյին և զԱբրահամուն. զէ մի։
Ի խորան քում սիրողաց հանգուցես ընդ ծառայս քո, և զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբս քո. զէ մի.

Մանկունք. Ահաւոր ես Թագաւոր քրովբէական ձայնիւ օրհնեալ. 'ի յերկինս 'ի յերկիր և յամենայն ժամանակի:

Ահաւոր ես Թագաւոր որ նորոգես զքո զարարածս. հաստատես 'ի հաւատս 'ի գիտութիւն ճշմարտութեան:

Լուսաւորեա ըզմեզ Քրիստոս 'ի միւսանգամ քո գալըստեանն. յորժամ ծագիս 'ի յերկնից և նորոգես զքո զարարածս:

Յոր. Այսօր յարութիւն Քրիստոսի տօնեցէք հաւատացեալք 'ի մի Աստուած Հայր ամենակալ:

Այսօր եւ կանայքն իւղաբերք աւետիս տալով առաքելոցն օրհնեն զԱծ զՀայր ա:

Այսօր և հրեշտակք 'ի յերկինս հոգեւոր հնչմամբ երգով. օրհնեն զԱս:

Մեծ. Լոյս լուսոյ մայր, և կենարար բանին բնակարան. քեզ երանիցեն ազգ և ազինք ամենայն:

Աստղածողին մայր, և հնութեան կերպի նորոգողին. քեզ երա:

Լոյս ծագեցաւ 'ի քէն, նըստելոցս 'ի խաւարի. քեզ երա:

Խաչ։ Փայտ կենաց որ փոխանակ մահացու պտղոյն ըզՔրիստոս պտղաբերեցեր. պարըսպեա պահեա զուխտս հաւատացելոց։

Քեւ բացաւ մեզ ճանապարհ ծառոյն կենաց 'ի սրովբէափակ պահպանութենէն. պարըսպեա պա։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ ։ Այժմ եւ միշտ եւ ։

Քեւ ազատեցաւ նախահայրն 'ի ճաշակմանէ պտղոյն. եւ քեզ երկըրպագեն ամենայն հաւատացեալք պարըս։

Մաղթանք։

Յամենայն ժամու աղաչանք իմ այս են. Ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր, եւ յօտարէն պահեա զծառայս քո մարդասէր Տէր։

Քարոզ։

Աղաչեսցուք զկենսատու Փրկիչն մեր Քրիստոս. որ կամաւոր խաչելութեամբն իւրով զաքարածս փրկեաց. եւ հեղմամբ արեան իւրոյ զթողութիւն շնորհեաց յուսացելոց իւրոց. ամենակալ Տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեա։

Աղօթք ։

Անկեալ առաջի քո բարերար և բազումողորմ Աստուած՝ աղաչեմք ամենայն սրտիւք մերովք, եւ խնդրեմք զգթութիւն 'ի քէն. որպէս խոստացար ծառայից քոց և ասացեր, զամենայն զոր ինչ խնդրիցէք հաւատով յանուն Որդւոյ 'ի Հօրէ, տացի ձեզ։ Շնորհեա և այժմ հաւատացելոցս 'ի քեզ, և կատարեա 'ի բարի զխնդրուածս մեր, զի 'ի քեզ եմք ապաւինեալ։ Եւ քո առատ ողորմութեամբդ մխիթարեա զմեզ 'ի կեանս այսոսիկ. և առաջնորդեալ հասո յանձառ երկնից արքայութիւնդ, 'ի փառաբանութիւն և 'ի պատիւ Ամենասուրբ Երրորդութեանդ, այժմ և միշտ և յաւի։

Յիշեա Տէր և ողորմեա ։

Բարերար եւ բազումողորմ Աստուած՝ քո անմոռաց գիտութեամբդ և անբաւ մարդասիրութեամբդ՝ յիշեա զամենայն հաւատացեալս 'ի քեզ, և ողորմեա ամենեցուն։ Օգնեա, և փրկեա յիւրաքանչիւր վտանգից և 'ի փորձութեանց։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ. այժմ և.

Ալէլուիա ալէլուիա.

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունող հոգւոյ իմոյ ։

Ընթերցուած յԱռակաց ։

Պատուեա զՏէր 'ի քոյոց արդար վաստակոց . եւ հան նմա պտուղ 'ի քոց արդարութեան արմտեաց . զի լցցին շտեմարանք քո լիութեամբ ցորենոյ . գինեաւ հնձանք քո առաւել եւս բղխեսցեն ։

Որդեակ՝ մի՛ լքանիր 'ի խրատու Տեառն . և մի՛ լուծանիցիս յանդիմանեալ 'ի նմանէ , զի զոր սիրէ Տէր՝ խրատէ , տանջէ զամենայն որդի զոր ընդունի ։

Ընթերցուած 'ի Գործոց Առաքելոց ։

Այնպէս պաշտեմ զՀայրենին Աստուածն . հաւատացեալ ամենայնի որ ինչ յօրէնս և 'ի մարգարէս գրեալ է ։

Ունիմ յոյս առ Աստուած . որում և դոքա իսկ ակն ունին՝ թէ յարութիւն լինելոց է արդարոց եւ մեղաւորաց ։

Յորում եւ ես իսկ ճգնիմ, անխիղճ միտս ունել առ Աստուած և առ մարդ յամենայն ժամ ։

Ի բազում ամաց ողորմութիւնս եկի առ-

նել յազգդ իմ, եւ ետու պատարագիս · որովք գտին զիս սրբեալ 'ի տաճարին :

Պետրոսի առաքելոյն 'ի կաթուղիկեայց առաջին Թղթոյն է ընթերցուածս :

Սիրելիք · զայն իսկ եւ մեռելոց խոստացեալ է՝ զի դատեսցին ըստ մարդկան մարմնով · եւ կենդանասցին ըստ Աստուծոյ՝ Հոգւով :

Ամենեցուն վախճան մերձեալ է · զգաստացարուք այսուհետեւ · եւ լերուք զըւարթունք յաղօթս :

Ալէլուիա ալէլուիա ·

Աստուած ողորմեա մեզ և օրհնեա զմեզ · երեւեցո զերեսս քո 'ի մեզ՝ և ողորմեա մեզ :

Ալէլուիա Օրթի :

Խաղաղութիւն ամենեցուն :

Եւ ընդ հոգւոյդ քում : Երկիւղածութեամբ լուարուք :

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու :

Փառք քեզ Տէր Աստուած մեր :

Պռօսխումէ : Ասէ Աստուած :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս :

Եւ մինչդեռ շրջէր ընդ Երիքով · և ահաւասիկ այր մի անուն կոչեցեալ Զաքէոս · եւ նա էր մաքսապետ · և ինքն մեծատուն · և խնդ-

րէր տեսանել՝ թէ ո՛վ իցէ Յիսուս, և ոչ կարէր ՚ի բազմութենէն, զի կարճ էր հասակաւ. և ընթացեալ յառաջս, ել ՚ի ժանտաթզենին զի տեսանիցէ զնա. քանզի ընդ այն իսկ անցանելոց էր։

Իբրեւ եկն ՚ի տեղին. հայեցեալ ՚ի վեր Յիսուս՝ եւ ասէ ցնա. Զաքէ՝ փութա՝ էջ այտի, զի այսօր ՚ի տան քում արժան է ինձ ագանել. փութացաւ և էջ՝ և ընկալաւ զնա ուրախութեամբ։

Իբրեւ տեսին ամենեքին, տրտնջէին եւ ասէին՝ թէ առ առն մեղաւորի եմուտ լուծանել։

Եկն՝ եկաց Զաքէոս՝ եւ ասէ ցՏէր. Տէր՝ ահա զկէս ինչից իմոց տաց աղքատաց. և եթէ զոք զրկեցի, հատուցից չորեքկին։

Եւ ասէ ցնա Յիսուս. այսօր եղեւ փրկութիւն տանս այսմիկ. քանզի եւ նա որդի Աբրահամու էր։

Զի եկն Որդի Մարդոյ խնդրել և կեցուցանել զկորուսեալսն։

Քարոզ։

Վասն ՚ի վերուստ խաղաղութեան եւ փրկութեան անձանց մերոց, զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայ-
նի աղաչանաց մերոց, զՏէր աղա։
Վասն քաւիչ եւ ներող լինելոյ Աստուծոյ
'ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա։
Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր
զկամայ և զակամայ, զՏէր աղա։
Վասն զի մի ընդ խոտանսն գտանիցիմք
յաւուրն պատասխանատուութեան, ըզ-
Տէր աղա։
Վասն հոգւոյն հանգուցելոյ՝ որք ճշմա՛։
Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստու։
Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ։

Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Հա՛յր երկնաւոր՝ բարեգութ և ողորմած, քաղցր և երկայնամիտ առ ամենեսեան որք խնդրեն 'ի քէն։ Հայեաց 'ի ստեղծուածս ձեռաց քոց, որ ապաւինինիմք 'ի քո բարե-րարութիւնդ. եւ ընկալ ողորմութեամբ քով զպատարագս, զոր մատուցանեմք հաւատացեալքս 'ի քեզ՝ առ 'ի յիշատակ նըն-ջեցելոց յանունն քո սուրբ։ Զի դու ես Տէր՝ որ հաստատեցեր 'ի սիրտս մեր զյոյս յա-

րութեան, և զհատուցումն բարեաց ամենեցուն՝ որ հաւատան գալստեան միածնի քո ։ Դու՝ Տէր Աստուած մեր, յաղթեալ 'ի մարդասիրութենէ քումմէ՝ առաքեցեր յանքննին ծոցոյ քումմէ զմիածին Որդիդ քո, որ եկն և գնեաց զմեզ 'ի ծառայութենէ մեղաց ։ Եղեւ իբրեւ զմեզ մարդ, և հրաւիրեաց զմեզ յորդեգրութիւն Հօրդ երկնաւորի ։ Մատոյց զինքն պատարագ կամօք քովք, և եբարձ զպարտիս մարդկութեանս մերոյ, հաշտեցուցանել զտարագրեալքս 'ի քէն՝ 'ի ձեռն հեղման արեան իւրոյ ։ Համարեցաւ ընդ մեռեալս՝ 'ի գերեզմանի դնելով անապականաբար, և զմահացեալսն 'ի սկզբանէ՝ կորզեաց 'ի ձեռաց մահու ։ Յարեաւ սքանչելապէս, և մշտնջենաւոր կենդանութեանն հաղորդս արար զմահկանացու բնութիւնս մեր ։ Եւ այժմ Տէր Աստուած մեր՝ օրհնեա զպատարագս զայս, առաքելով զանհրեւոյթ աջ քո. և հանգո զկամս ընդունելութեան քո 'ի մատուցողքս. որք հաւատացին առհաւատչեայ ընդունել զհանգիստ փոխեցելոյն, զոր աւանդեցեր 'ի պատրաստ բնակութիւն՝ քո անճառ բարեացդ ։ Լցո Տէր՝ քո ան-

ձառ շնորհօքդ. և բազմապատիկ ցնծու-
թեամբ զժողովուրդս քո. որք հաղորդ հան-
դիպեցան լինել այսմ՝ հոգեւոր խրախու-
թեանս։ Ծաւալեսցին ընդ մեզ պարգեւու-
թեամբ բանակք զուարթնոցն, բազմելով
՚ի վայելս հաշտարար կամաց քոց։ Որպէս
զի երկօքումբք հրձուանօք բերկրեսցին
հոգիք հանգուցելոցն ազդմամբ շնորհաց
սուրբ Հոգւոյդ. որ անզեղջ ես ՚ի փոխատ-
րութիւն նոցա՝ որք կամակար մտօք ընծա-
յեցին զքոյդ քեզ։ Պայծառացո Տէր, ան-
նուազելի փայլմամբ զհոգիս այնոցիկ. յո-
րոց անուն կատարին աղօթքս եւ պատա-
րագս՝ բարեխօսութեամբ ընտրելոց քոց.
որք մատուցին զկենքեանս արեամբ բանա-
կանաւ քեզ ընդունողիդ Հօր. և յանտե-
սանելի քոց հատուցմանցդ վայելեսցեն ՚ի
փառս՝ որ ոչն երեւին։ Վասն որոյ գոհա-
ցողական փառատրութեամբ եւ՛ երկրպա-
գութեամբ մատուցանեմք օրհնութիւն ա-
մենասուրբ Երրորդութեանդ՝ Հօր և Որդ-
ւոյ և Հոգւոյդ Սրբոյ, այժմ և միշտ եւ
յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Հայր մեր որ յերկինս։

# ԱՌԱՋԻՆ ԱՆԲԻԾՔ
## ՆՆՋԵՑԵԼՈՑ

---

Ալէլուիա ալէլուիա ։

Երանեալ են անբիծք ՚ի ճանապարհի , և որք գնան յօրէնս Տեառն ։

Երանի որք քննեն զվկայութիւնս նորա , բոլորով սրտիւ խնդրեսցեն զնա ։

Ոչ թէ որք գործեն զանօրէնութիւն ՚ի ճանապարհս նորա գնացին ։

Դու պատուիրեցեր զպատուիրանս քո ՚ի պահել յոյժ ։

Երանի թէ յաջողեալ էին ինձ ճանապարհք իմ ՚ի պահել ինձ զարդարութիւնս քո ։

Յայնժամ ես ոչ ամաչէի ՚ի զգուշանալ ինձ ՚ի պատուիրանս քո ։

Խոստովան եղէց քեզ Տէր յուղղութիւն սրտի իմոյ , որպէս ուսայց զիրաւունս արդարութեան քո ։

Զիրաւունս քո պահեցի , մի՛ թողուր զիս մինչ իսպառ ։

Ի՞ւ ուղղեսցէ երիտասարդ զճանապարհս իւր , այլ ՚ի պահել զբանս քո ։

Բոլորով սրտիւ իմով խնդրեցի զքեզ, մի մերժեր զիս 'ի պատուիրանաց քոց։

Ի սրտի իմում թագուցի զբանս քո, որպէս զի մի մեղայց քեզ։

Օրհնեալ ես դու Տէր, ուսո ինձ զարդարութիւնս քո։

Շրթամբք իմովք պատմեցից զամենայն իրաւունս բերանոյ քո։

Ի ճանապարհս վկայութեանց քոց զուարճացայ, որպէս յամենայն 'ի մեծութեան։

Ի պատուիրանս քո հոգացայ, և զգուշացայ 'ի ճանապարհս քո։

Զիրաւունս քո խօսեցայ, եւ ոչ մոռացայ զբանս քո։

Հատո ծառայի քում, զի կեցից և պահեցից զբանս քո։

Զարթո զաչս իմ, եւ նայեցայց 'ի սքանչելիս օրինաց քոց։

Պանդուխտ եմ ես յերկրի, մի թագուցաներ յինէն զպատուիրանս քո։

Փափագեաց անձն իմ 'ի ցանկալ ինձ յիրաւունս քո յամենայն ժամ։

Սաստեցեր ամբարտաւանից, անիծեալ՝ ոյք խոտորեցան 'ի պատուիրանաց քոց։

Ի բաց արա յինէն զնախատինս և զարհա-

մարհանս, զի զվկայութիւնս քո խնդրեցի։
Քանզի նստան իշխանք և չարախօսէին զինէն. այլ ծառայ քո խորհէր յիրաւունս քո։
Զի վկայութիւնք քո խօսք իմ էին, եւ խորհուրդք իմ արդարութիւն քո։
Մերձեցաւ անձն իմ ՚ի հող, Տէր. կեցո զիս ըստ բանի քում։
Զճանապարհս իմ պատմեցի քեզ՝ և լուար ինձ, ուսո ինձ զարդարութիւնս քո։
Ի ճանապարհս արդարութեանց քոց իմաստուն արա զիս, եւ քննեցից զաքանչելիս քո։
Տքնեցաւ անձն իմ առ ՚ի ձանձրանալ. հաստատեա զիս ՚ի բանս քո։
Զճանապարհս մեղաց ՚ի բաց արա յինէն, և յօրէնս քո ողորմեա ինձ.
Զճանապարհս ճշմարտութեան քո ընտրեցի, և զիրաւունս քո ես ոչ մոռացայ։
Մերձեցայ ես ՚ի վկայութիւնս քո. Տէր մի՛ յամօթ առներ զիս։
Ի ճանապարհս պատուիրանաց քոց ընթացայ, զի անդորր արարեր սրտի իմոյ։
Օրէնսդէտ արա զիս Տէր. ՚ի ճանապարհս իրաւանց քոց. եւ խնդրեցից զնա յամենայն ժամ։

Բոլորով սրտիւ իմով խնդրեցի զքեզ, մի մերժեր զիս 'ի պատուիրանաց քոց։

Ի սրտի իմում թագուցի զբանս քո, որպէս զի մի մեղայց քեզ։

Օրհնեալ ես դու Տէր, ուսո ինձ զարդարութիւնս քո։

Շրթամբք իմովք պատմեցից զամենայն իրաւունս բերանոյ քո։

Ի ճանապարհս վկայութեանց քոց զուարճացայ, որպէս յամենայն 'ի մեծութեան։

Ի պատուիրանս քո հոգացայ, և զգուշացայ 'ի ճանապարհս քո։

Զիրաւունս քո խօսեցայ, եւ ոչ մոռացայ զբանս քո։

Հատո ծառայի քում, զի կեցից և պահեցից զբանս քո։

Զարթո զաչս իմ, եւ նայեցայց 'ի սքանչելիս օրինաց քոց։

Պանդուխտ եմ ես յերկրի, մի թագուցաներ յինէն զպատուիրանս քո։

Փափագեաց անձն իմ 'ի ցանկալ ինձ յիրաւունս քո յամենայն ժամ։

Սաստեցեր ամբարտաւանից, անիծեալ՝ որք խոտորեցան 'ի պատուիրանաց քոց։

Ի բաց արա յինէն զնախատինս և զարհա-

մարհանս, զի զվկայութիւնս քո խնդրեցի։
Քանզի նստան իշխանք և չարախօսէին զի-
նէն. այլ ծառայ քո խորհէր յիրաւունս քո։
Զի վկայութիւնք քո խօսք իմ էին, եւ
խորհուրդք իմ արդարութիւն քո։
Մերձեցաւ անձն իմ ՚ի հող, Տէր. կեցո
զիս ըստ բանի քում։
Զճանապարհս իմ պատմեցի քեզ՝ և լուար
ինձ, ուսո ինձ զարդարութիւնս քո։
Ի ճանապարհս արդարութեանց քոց ի-
մաստուն արա զիս, եւ քննեցից զսքան-
չելիս քո։
Տքնեցաւ անձն իմ առ ՚ի ձանձրանալ.
հաստատեա զիս ՚ի բանս քո։
Զճանապարհս մեղաց ՚ի բաց արա յինէն,
և յօրէնս քո ողորմեա ինձ։
Զճանապարհս ճշմարտութեան քո ընտ-
րեցի, և զիրաւունս քո ես ոչ մոռացայ։
Մերձեցայ ես ՚ի վկայութիւնս քո. Տէր մի
յամօթ առներ զիս։
Ի ճանապարհս պատուիրանաց քոց ընթա-
ցայ, զի անդորր արարեր սրտի իմոյ։
Օրէնսդէտ արա զիս Տէր, ՚ի ճանապարհս
իրաւանց քոց, եւ խնդրեցից զնա յամե-
նայն ժամ։

Իմաստուն արա զիս, եւ քննեցից զօրէնս քո, եւ պահեցից զնա բոլորով սրտիւ իմով։

Առաջնորդեա ինձ ՚ի շաւիղս պատուիրանաց քոց, զի ընդ նոսա հաճեցայ։

Խոնարհեցո զսիրտ իմ ՚ի վկայութիւնս քո, եւ մի յագահութիւն։

Դարձո զաչս իմ, զի մի տեսից զնանրութիւն, ՚ի ճանապարհս քո կեցո զիս։

Հաստատեա ծառայի քում զբան քո յերկիւղ քո։

Հան յինէն զնախատինս, զոր եւ կարծեցի. զի դատաստանք քո քաղցր են։

Ահա ցանկացայ պատուիրանաց քոց. յարդարութեան քում կեցո զիս։

Եկեսցէ ՚ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր, եւ փրկութիւն քո ըստ բանի քում։

Տաց պատասխանի ոյք նախատեն զիս բանիւք. զի ես ՚ի բանս քո յուսացայ։

Մի ՚ի բացեայ աններ ՚ի բերանոյ իմմէ զբան ճշմարտութեան մինչեւ յոյժ, զի յիրաւունս քո յուսացայ։

Պահեցից զօրէնս քո յամենայն ժամ, յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտենից։

Գնայի ես յանդորրու, զի զպատուիրանս քո խնդրեցի։

Խօսէի զվկայութիւնս քո առաջի թագաւորաց, և ոչ ամաչէի։

Խորհէի ՚ի պատուիրանս քո, զոր սիրեցի։

Համբարձի զձեռս իմ ՚ի պատուիրանս քո զոր սիրեցի, եւ խորհէի յարդարութեան քում։

Յիշեա զբան ծառայի քո, յոր և յուսացուցեր զիս։

Սա մխիթարեաց զիս ՚ի խոնարհութեան իմում. զի բան քո կեցոյց զիս։

Ամբարտաւանք անիրաւեցան յիս յոյժ. այլ յօրինաց քոց ես ոչ խոտորեցայ։

Յիշեցի զիրաւունս քո յաւիտենից Տէր, և մխիթարեցայ։

Տրտմութիւն կալաւ զիս ՚ի մեղաւորաց, և որք թողին զօրէնս քո։

Գովելի են ինձ իրաւունք քո ՚ի տեղւոջ պանդխտութեան իմոյ։

Յիշեցի ՚ի գիշերի զանուն քո Տէր, և պահեցի զօրէնս քո։

Սա եղեւ ինձ ճանապարհ ՚ի կեանս, զի զարդարութիւնս քո խնդրեցի։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։



# ԵՐԿՐՈՐԴ ԱՆԲԻԾՔ
## ՆՆՋԵՑԵԼՈՑ

---

Ալէլուիա ալէլուիա ։

Բաժին իմ ես դու Տէր, ասացի պահել ինձ զօրէնս քո ։

Աղաչեցի զերեսս քո բոլորով սրտիւ իմով. ողորմեա ինձ ըստ բանի քում ։

Խորհեցայ ՚ի ճանապարհս իմ, եւ դարձուցի զոտս իմ ՚ի վկայութիւնս քո ։

Պատրաստեցայ եւ ոչ խռովեցայ, զի պահեցից զպատուիրանս քո ։

Տոռունք մեղաց պատեցան զինեւ. այլ զօրէնս քո ես ոչ մոռացայ ։

Ի մէջ գիշերի յառնէի խոստովան լինիլ առ քեզ վասն իրաւանց եւ արդարութեան քո ։

Հաղորդ էի ես ամենայն երկիւղածաց քոց, որոց պահեալ էին զպատուիրանս քո ։

Ողորմութեամբ Տեառն լի եղեւ երկիր. զարդարութիւնս քո ուսո ինձ ։

Քաղցրութիւն արարեր ընդ ծառայի քում Տէր ըստ բանի քում ։

Զքաղցրութիւն, զխրատ և զգիտութիւն ուսո ինձ, զի 'ի պատուիրանս քո ես հաւատացի:

Մինչչեւ խոնարհեալ էի ես՝ մեղայ. վասն այսորիկ զբանս քո պահեցի յոյժ:

Քաղցր ես դու Տէր, եւ քաղցրութեամբ քով ուսո ինձ զարդարութիւնս քո:

Բազմացան յիս անիրաւութիւնք ամբարտաւանից. այլ ես բոլորով սրտիւ իմով քննեցի զպատուիրանս քո:

Մածան որպէս կաթն սիրտք նոցա. այլ ես զօրէնս քո խօսեցայ:

Բարի է ինձ զի խոնարհ արարեր զիս, որպէս ուսայց զարդարութիւնս քո:

Բարի են ինձ օրէնք բերանոյ քո, քան զհազարս ոսկւոյ և արծաթոյ:

Ձեռք քո արարին եւ ստեղծին զիս, իմաստուն արա զիս, եւ ուսայց զպատուիրանս քո:

Երկիւղածք քո տեսցեն զիս և ուրախ եղիցին, զի ես 'ի բանս քո յուսացայ:

Ծանեայ Տէր զի արդարութեամբ են դատաստանք քո. յիրաւի խոնարհեցուցեր զիս:

Եղիցի ողորմութիւն քո 'ի մխիթարել զիս, ըստ բանի քում զծառայս քո:

Եկեսցեն յիս գթութիւնք քո՝ եւ կեցից. զի օրէնք քո խօսք իմ էին։

Ամաչեսցեն ամբարտաւանք՝ որք 'ի տարապարտուց անիրաւեցան յիս. այլ ես հոգացայ 'ի պատուիրանս քո։

Խրատեսցեն զիս երկիւղածք քո, եւ ոյք ճանաչեն զվկայութիւնս քո։

Եղիցի սիրտ իմ անբիծ յարդարութեան քում, զի մի՛ ամաչեցից։

Կարօտացաւ անձն իմ 'ի փրկութիւնս քո, զի ես 'ի բանս քո յուսացայ։

Սպասեցին աչք իմ բանի քում. ասացի՝ երբ մխիթարեսցէ զիս։

Եղէ ես որպէս տիկ 'ի պարզի, զի զարդարութիւնս քո ես ոչ մոռացայ։

Քանի՞ ինչ են աւուրք ծառայի քո. երբ արասցես ինձ իրաւունս 'ի հալածչաց իմոց։

Պատմեցին ինձ անօրէնք զխորհուրդս, այլ ոչ որպէս զօրէնս քո։

Ամենայն պատուիրանք քո ճշմարիտ են. 'ի նանիր հալածեցին զիս, օգնեա ինձ։

Փոքր մի եւս և կորուսանէին զիս յերկրի. այլ ես ոչ թողի զպատուիրանս քո։

Ըստ ողորմութեան քում կեցո զիս, եւ պահեցից զվկայութիւնս բերանոյ քոյ։

Յաւիտեան Տէր բանն քո կայ յերկինս, ազգէ
մինչեւ յազգ է ճշմարտութիւն քո։
Հաստատեցեր զերկիր՝ եւ կայ։
Հրամանի քում մնայ տիւ, զի ամենեքեան
ծառայք քո են։
Եթէ ոչ օրէնք քո խօսք իմ էին, կանխաւ
եւս արդեօք կորուսեալ էի ՚ի խոնարհու-
թեան իմում։
Յաւիտեան ոչ մոռացայց զարդարութիւնս
քո, զի նոքօք կեցուցեր զիս։
Քո եմ ես եւ կեցո զիս, զի զարդարու-
թիւնս քո խնդրեցի։
Ինձ սպասեցին մեղաւորք ՚ի կորուսանել,
զի զվկայութիւնս քո ես ՚ի միտ առի։
Յամենայն կատարածի տեսի զվախճան.
յոյժ անդորր էին ինձ պատուիրանք քո։
Որպէս սիրեցի զօրէնս քո, զօրհանապազ
խօսք իմ էին։
Քան զթշնամիս իմ իմաստուն արարեր զիս
՚ի պատուիրանս քո, զի յաւիտեան իմ էին։
Քան զամենայն ուսուցիչս իմ իմաստուն
եղէ, զի վկայութիւնք քո խօսք իմ էին։
Քան զծերս իմաստուն եղէ, զի զպա-
տուիրանս քո քննեցի։
Յամենայն ճանապարհաց չարաց արգելի

զոտս իմ, որպէս զի պահեցից զբանս քո ։
Յիրաւանց քոց ես ոչ խոտորեցայ, զի դու
օրէնսգէտ արարեր զիս ։
Որպէս զի քաղցր են 'ի քիմս իմ բանք քո՝
քան զմեղր բերանոյ իմոյ ։
Ի պատուիրանաց քոց իմացեալ ատեցի
զամենայն ճանապարհս չարաց, զի դու
օրէնսգէտ արարեր զիս ։
Ճրագ են բանք քո ոտից իմոց, եւ լոյս
տան շաւղաց իմոց ։
Երդուայ եւ հաստատեցի, զի պահեցից
զամենայն իրաւունս արդարութեան քո ։
Խոնարհ եղէ մինչեւ յոյժ. Տէր կեցո զիս
ըստ բանի քում ։
Ընդ կամս բերանոյ իմոյ հաճեա Տէր,
եւ զիրաւունս քո ուսո ինձ ։
Անձն իմ 'ի ձեռս քո է յամենայն ժամ,
եւ զօրէնս քո ես ոչ մոռացայ ։
Եդին ինձ մեղաւորք որոգայթ, 'ի պատ-
ուիրանաց քոց ես ոչ մոլորեցայ ։
Ժառանգեցի զվկայութիւնս քո յաւի-
տեան, զի ցնծութիւն է սրտի իմոյ ։
Խոնարհեցուցի զսիրտ իմ առնել զար-
դարութիւնս քո յաւիտեան, վասն հա-
տուցման ։

Զանօրէնս ատեցի, և զօրէնս քո սիրեցի ։
Օգնական եւ փրկիչ իմ ես դու, եւ ես
'ի բանս քո յուսացայ ։
Ի բաց եղերուք յինէն, չարք, և քննեցից
զպատուիրանս Աստուծոյ իմոյ ։
Օգնեա ինձ ըստ բանի քում և կեցո զիս,
և մի՛ յամօթ առներ զիս 'ի յուսոյ իմմէ ։
Օգնեա ինձ և ապրեցո զիս, և խորհեցայց
յիրաւունս քո յամենայն ժամ ։
Անարգեցեր զամենեսեան՝ որք ապըս-
տամբք եղեն յարդարութեանց քոց. զի
անիրաւութեամբ էին խորհուրդ նոցա ։
Յանցաւորս համարեցայ զամենայն մեղա-
ւորս երկրի. վասն այսորիկ սիրեցի ըզ-
պատուիրանս քո ։
Բեւեռեա ընդ երկիւղ քո զմարմինս իմ,
զի 'ի դատաստանաց քոց երկեայց յոյժ ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։



# ԵՐՐՈՐԴ ԱՆՔԻԾՔ

## ՆՆՋԵՑԵԼՈՑ

---

Ալէլուիա ալէլուիա։

Արարի իրաւունս և արդարութիւն. մի՛ մատներ զիս 'ի ձեռս նեղչաց իմոց։
Ընկալ զծառայս քո 'ի բարի, զի մի՛ ամբարտաւանք զզուեսցեն զիս։
Սպասեցին աչք իմ փրկութեան քում Տէր, և բանից արդարութեան քո։
Արա ընդ ծառայի քում Տէր, ըստ ողորմութեան քում. զարդարութիւնս քո ուսո ինձ։
Ծառայ քո եմ ես, իմաստուն արա զիս, և ծանեայց զվկայութիւնս քո։
Ժամ է պաշտել զՏէր. խափանեցին զօրէնս քո։
Վասն այսորիկ սիրեցի զպատուիրանս քո քան զամենայն ոսկի և զտպազիոն։
Ամենայն պատուիրանք քո յաջողեցան ինձ, զի ատեցի ես զճանապարհս չարաց։

Սքանչելի են վկայութիւնք քո, վասն այսորիկ սիրեաց զնոսա անձն իմ։

Յայտնութիւն բանից քոց լուսաւոր է եւ իմաստուն առնէ զտղայս.

Զբերան իմ բացի, և առի զհոգի. ՚ի պատուիրանս քո փափաքեաց անձն իմ։

Նայեա առ իս եւ ողորմեա ինձ ըստ իրաւանց սիրողաց անուան քո։

Զճանապարհս իմ ուղիղ արա ինձ ըստ բանի քում, եւ մի տիրեսցեն ինձ ամենայն մեղք։

Փրկեա զիս ՚ի զրպարտութենէ մարդկան, և պահեցից զպատուիրանս քո։

Երեւեցո զերեսս քո ՚ի ծառայս քո, եւ ուսո ինձ զարդարութիւնս քո։

Վտակք ջուրց իջին յաչաց իմոց, զի ոչ պահեցին զօրէնս քո։

Արդար ես դու Տէր, եւ ուղիղ են դատաստանք քո։

Պատուիրեցեր զարդարութիւն վկայութեանց քոց, և ճշմարիտ են յոյժ։

Մաշեաց զիս նախանձ քո, զի մոռացան զբանս քո թշնամիք իմ։

Ընտրեալ է բան քո յոյժ, եւ ծառայ քո սիրեաց զնա։

Մանուկ եմ ես և արհամարհեալ, և զար-
դարութիւնս քո ես ոչ մոռացայ։
Արդարութիւն քո արդարութիւն յաւի-
տենից, և օրէնք քո ճշմարիտ են։
Նեղութիւնք և վիշտք գտին զիս, և պա-
տուիրանք քո խօսք իմ էին։
Արդարութեամբ են վկայութիւն քո, յա-
ւիտեան իմաստուն արա և կեցո զիս։
Կարդացի առ քեզ բոլորով սրտիւ իմով.
լուր ինձ Տէր. զի զարդարութիւնս քո
խնդրեցի։
Աղաղակեցի առ քեզ՝ և փրկեա զիս, և
պահեցից զվկայութիւնս քո։
Կանխեցի տարաժամու, աղաղակեցի, եւ
ես 'ի բանս քո յուսացայ։
Կանխեցին աչք իմ առաւօտու 'ի խօսիլ
ինձ զբանս քո։
Զայնի իմում լուր Տէր ըստ ողորմութեան
քում. և յիրաւունս քո կեցո զիս։
Մերձեցուցին յիս հալածիչք իմ զանօրէ-
նութիւն, զի յօրինաց քոց հեռի եղեն։
Մերձ ես դու Տէր, և ամենայն պատուի-
րանք քո ճշմարիտ են։
Ի սկզբանէ ծանեայ 'ի վկայութեանց քոց,
զի յաւիտեան հաստատեցեր զնոսա։

Տես զխոնարհութիւն իմ՝ եւ փրկեա զիս,
զի զօրէնս քո ես ոչ մոռացայ։
Դատեա զդատաստանս իմ՝ և փրկեա զիս,
և ըստ բանի քում կեցո զիս։
Հեռի է ՚ի մեղաւորաց փրկութիւն, զի
զիրաւունս քո ոչ պահեցին։
Գթութիւնք քո բազում են Տէր, և ըստ
իրաւանց քոց կեցո զիս։
Բազում են, որք հալածեն և նեղեն զիս.
՚ի վկայութեանց քոց ես ոչ խոտորեցայ։
Հայէի յանառգործսն եւ մաշէի, զի զպա-
տուիրանս քո ոչ պահեցին։
Տես՝ զի զպատուիրանս քո սիրեցի. Տէր՝
ողորմութեամբ քո կեցո զիս։
Սկիզբն բանից քոց ճշմարտութիւն է. յա-
ւիտեան են ամենայն իրաւունք արդարու-
թեան քո։
Իշխանք հալածեցին զիս ՚ի նանիր. եւ ՚ի
բանից քոց երկեաւ սիրտ իմ։
Ցնծացայ ես ՚ի բանս քո որպէս այն որ
գտանէ աւար բազում։
Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո
սիրեցի։
Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ
վասն իրաւանց և արդարութեան քո։

Խաղաղութիւն բազում է այնոցիկ որք սիրեն զօրէնս քո, և ոչ գոյ 'ի նոսա գայթակղութիւն ։

Սպասեցի փրկութեան քում Տէր, և զպատուիրանս քո սիրեցի ։

Պահեաց անձն իմ զվկայութիւնս քո, եւ սիրեաց զնոսա յոյժ ։

Պահեցից զպատուիրանս և զվկայութիւնս քո, զի ամենայն ճանապարհք իմ առաջի քո են ։

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր, ըստ բանի քում իմաստուն արա զիս ։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, և բանիւ քո փրկեա զիս ։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո ։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են ։

Եղիցի ձեռն քո 'ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս քո ընտրեցի ։

Ցանկացայ փրկութեան քում Տէր, և օրէնք քո խօսք իմ էին ։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ. և իրաւունք քո օգնեսցեն ինձ ։

Մոլորեցայ ես որպէս ոչխար կորուսեալ.
խնդրեա զծառայս քո, զի զպատուիրանս
քո ես ոչ մոռացայ։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Ալէլուիա ալէլուիա։

Սիրեցի զի լուիցէ Տէր զձայն աղօթից ի-
մոց. զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս,
և ես յաւուրս իմ կարդացի առ նա։
Շրջեցան զինեւ երկունք մահու, և վիշտք
դժոխոց գտին զիս։
Զնեղութիւն և զանձկութիւն գտի, եւ
զանուն Տեառն կարդացի։
Ո՜ Տէր՝ փրկեա զանձն իմ. ողորմած Աս-
տուած մեր ողորմի և պահէ զտղայս Տէր։
Ես խոնարհ եղէ՝ եւ Տէր կեցոյց զիս.
դարձ անձն իմ ՚ի հանգիստ քո, զի Տէր
օգնեաց քեզ։
Փրկեաց զանձն իմ ՚ի մահուանէ, զաչս
իմ յարտասուաց, և զոտս իմ ՚ի գայթակ-
ղութենէ, հաճոյ եղէց առաջի Տեառն
յերկրին կենդանեաց։



# ՇԱՐԱԿԱՆՔ

## ՀԱՆԳՍՏԵԱՆ

### Ի ՎԵՐԱՅ ՈՒՐ ՁԱՅՆԻՑ



ԱՁ. ՁԱՅՆ արկեալ կենարարին աս-տուածային բարբառովն, ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ ըզկեանսն 'ի հանդերձեալ երկրին.

Ընդ առաջ ելանել քեզ հաւատով 'ի յօ-դըս վերին, աստուածազգեաց լուսով պայծառացեալ 'ի դասս անմարմնոցն. 'ի լըսել ըղձային երանաւէտ կոչմանն։

Ընդ այնմ քումմէ կացո ընդ իմաստուն սուրբ կուսանսն, 'ի լուսեղէն առագաս-տին պայծառացեալ 'ի դասս անմարմնո-ցըն, 'ի ժողովս անդրանկաց գրելոց 'ի յերկինս։

Հանգ. Քեզ վայելէ Աստուած օրհնու-թիւն, որ յարութիւնդ ես ձայնիւ յա-

ւիտենից նընջեցելոց. Թագաւոր և իշ-
խան վերօրհնեմք ըզքեզ։

Ի միւսանգամ գալըստեանն քո Քրիս-
տոս փառաց Թագաւոր ՚ի ձայն փողոյ
Նորոգին հոգիք նընջեցելոցն, և յառնեն
՚ի մեռելոց անապական մարմնով։

Վասն որոյ եւ մեք ընդ քեզ աղաչեմք Հայր
երկնաւոր. դասաւորեալ ըզնընջեցեալսըն
մեր ՚ի վերինըդ քո Երուսաղէմ, ՚ի ժողովս
անդրանկաց գրելոց ՚ի յերկինս։

Աղաչ. Հայր բազումողորմ խոստովանիմ
առ քեզ որպէս զանառակ որդին. Թող
ինձ ըզմեղս իմ, և ողորմեա։

Տէր որ գըթացար ՚ի կինն քանանացի,
գըթա և յիս ՚ի մեղաւորս, և ողորմ։

Տէր որ դարձուցեր ըզմաքսաւորն ՚ի գի-
տութիւն ճշմարտութեան, դարձո եւ
զիս զմոլորեալս, և ողորմ։

Աղաչ. Աստուած բազումողորմ, խընա-
յեա յարարածըս քո Հայր ամենակալ,
եւ ողորմեա։

Արեգակն արդարութեան, ծագեա ՚ի հո-
գիս մեր ըզլոյս ճշմարտութեան, և ողորմ։

Տուր մեզ Տէր զխաղաղութիւն, և փրկեա՛ 'ի նեղչաց մերոց հոգւոյդ Ճշմարտութեան, և ողորմեա՛ :

Աղաչ. Ողորմեա ինձ Աստուած :

Որ զառաջինն ոչ պահելով ըզպատուիրանըն մեռաք. շնորհեցեր քեւ օրինակ մեզ պատուիրան կենաց. զի պահելով կենդանանասցուք. ողորմեա :

Որ 'ի խորհուրդ քո կամաւոր մահուամբն եկեղեցի քո Քրիստոս. մեռանելով օրինաց մեղաց, զի յարուցեալ ընդ քեզ նորոգեսցի 'ի փառս. ողորմեա :

Ղող. Կենդանութեանց բաշխող Քրիստոս 'ի Բեթանիա եկուորեալ այսօր, բարեկամին Ղազարու պարգևէ զկենդանութիւն: Տընօրինաբար արտասուելով ընդ Մարթայի և ընդ Մարիամու ողբակցէր. և որպէս մարդ հարցանէր ուր եդիք ըզՂազարոս :

Եւ որպէս զԱստուած բարբառով յարուցանէ 'ի մեռելոց ըզչորեքօրեայն. եւ զուգընթաց ձայնին մեռեալն ելն արտաքս անապական :

Ցոր. Ընդ լուսանալ միաշաբաթին կան-
խեցին կանայքն ՚ի գերեզմանն. ՚ի խըն-
կել զանապական մարմինն ։

Եւ գտին ըզվէմըն բարձեալ ՚ի դրանց
գերեզմանին եւ լըւեալ բարբառ ՚ի
հրեշտակէն. եթէ յարեաւ Քրիստոս եւ
խափանեաց ըզմահ ։

Եւ հանդիպեալ քո Տէր առաքելոցն, եւ
առեալ զողջոյն կենդանարար, առաքե-
ցեր՝ զնոսա ՚ի փրկութիւն տիեզերաց ։

Հ.գ. Որ ՚ի քրովբէական կառսըդ հանգ-
չիս, այսօր իջեր յերկնից ՚ի դաս Առա-
քելոցըն Սուրբ Հոգի, օրհնեալ ես թա-
գաւոր անմահ ։

Որ գըրնաս ՚ի վերայ թեւոց հողմոց, այ-
սօր ՚ի հրեղէն լեզուս բաժանեալ հան-
գեար յառաքեալսըն Սուրբ Հոգի. օրհ ։

Որ խնամես տեսչութեամբ զքո զարա-
րածս. այսօր եկիր ՚ի հաստատել զեկե-
ղեցի քո Սուրբ Հոգի. օրհ ։

Մեծ. Յանճառ փառաց խոնարհեցար ՚ի
մեր բընութիւնս, բան նոյն Աստուած եւ
մարմնացար ՚ի սըրբոյ կուսէն ։

Եւ ծնամբ ՚ի սուրբ կուսէն անապական
մարմնով ։ ըզքեզ անդադար բարեբա-
նեալ մեծացուցանեմք ։

Այսօր զեկեալք ՚ի փրկութիւն ազգի
մարդկան, միաբանութեամբ ամենեքեան
մեծացուցանեմք ։

Մեծ. Յարուցելոյն ՚ի մեռելոց բնակա-
րան մայր եւ կոյս, որ ըզննջեցեալսն
յԱդամայ կենագործէ անապական, ըզ-
քեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես
՚ի կանանս ։

Արարողին երկնի եւ երկրի եղեր տաճար
եւ առագաստ, որ ըզննջեցեալսն մեր
հրեղէն նորոգէ. զքեզ մե ։

Երկրպագողին տիեզերաց արբուցեր ըզքո
սուրբ ըզկաթն, որ ըզննջեցեալսն մեր
վերըստին նորոգէ. զքեզ մե.

Խաչ. Սուրբ խաչին օգնական հաւատա-
ցելոց, կանգնեցաւ ՚ի յերկրի յաղթող
թշնամւոյն. եկայք ժողովուրդք երկըր-
պագեսցուք ։

Արարիչն Աստուած բարձրացաւ ՚ի խաչին,
եւ զմեռեալըս մեղօք փայտին ճաշակ-

մամբն, 'ի սմա՛ նորոգեալ կենդանացոյց ։
Ի միասանգամ գալըստեան Աստուածորդւոյն, Սուրբ խաչն երեւի եւ լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց ։

Ալէլուիա ալէլուիա ։

Տէր մի՛ սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս, և մի՛ բարկութեամբ քով խրատեր զիս ։
Ողորմեա ինձ Տէր, զի հիւանդ եմ ես. բժշկեա զանձն իմ զի խռովեցան ոսկերք իմ ։

Արդ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ ։

Ամէն ամէն ասեմ ձեզ. ոչ կարէ Որդի Մարդոյ առնել յանձնէ և ոչ ինչ, եթէ ոչ տեսանիցէ զՀայրն զի առնէ. զի զոր նայն առնէ, զնոյն և Որդին նմին նման գործէ ։ Զի Հայր սիրէ զՈրդի, եւ զամենայն ինչ ցուցանէ նմա՝ զոր ինքն առնէ. և մեծամեծս եւս քան զսոյնս ցուցանէ նմա ըզգործս՝ ընդ որ դուք զարմանայք ։
Զի որպէս Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ, նոյնպէս եւ Որդի զորս կամի կենդանի առնէ ։

Եւ ոչ եթէ Հայր դատի զոք․ այլ զամե-
նայն դատաստանն ետ Որդւոյ իւրոյ․ զի
ամենեքեան պատուեսցեն զՈրդի՝ որպէս
պատուեն զՀայրն։

Որ ոչ պատուէ զՈրդին, ոչ պատուէ ըզ-
Հայր զառաքիչն նորա։

Փառաց 'ի փառըս բարձրանոն, ալէա"։
Քահանայք և ժողովուրդք հայցեմք 'ի"։

(Տե․ երե․ 377)։

Ցորժամ գթեալըն կատարին, որ
պայծառ առնէր մեզ պատմեցին․ մար-
գարէից բանքըն յարգին, առաքե-
լոցըն վկայարին․ ողորմած Տէր ո-
ղորմեա հոգւոյըն մեր ննջեցելոց։

Հոգւոցն հանգուցեն։ Վասն հանգ։ Քրիստոս Որդի Ա․
Հայր մեր որ յերկինս։

---

Շարական․ ԱԿ․

Հանգ․ Արարիչ Աստուած եւ ըստեղծիչ
ազգի մարդկան մի՛ տանես առնել
ըզննջեցեալսըն մեր․ այլ հանգո՛ զհոգիս
նոցա ընդ սուրբըս քո։

Որդի՛դ միածի՛ն յարութիւն տիեզե-
րաց. մի անտես առ։

Հոգի՛դ ճշմարիտ մխիթարիչ սգաւո-
րաց. մի անտես առ։

Հանգ. Ձեռքք քո արարին եւ ստեղծին
զիս 'ի հողոյ. 'ի յօրհնել ըզքեզ Աստու-
ւած յաւիտեան.

Իսկ պատրանօք բանսարկուին խափանե-
ցայ յանձնառ լուսոյն, և դարձայ անդ-
րէն 'ի հող յորմէ ստեղծայ։

Մխիթարիչ Սուրբ Հոգի լուսաւորեա
զմեր ննջեցեալսն, եւ հանգո զհոգիս
նոցա ընդ սուրբս քո։

Աղաչ. Ծով կենցաղոյս հանապազ զիս
ալէկոծէ։

Մրրրկեալ ալիք թշնամին ինձ յարու-
ցանէ։

Նաւապետ բարի. լեր անձին իմոյ ա-
պաւէն։

Աղաչ. Մեղայ Տէր բազումողորմ Աստու-
ւած. մեղայ ողորմեա։

Մեղայ Տէր և անկանիմ առաջի քո. մե-
ղայ ողոր։

Մեղայ Տէր խոստովանիմ ընդ յանցանս իմ. մեղայ ողոր:

Ապաշ. Կէր. Որ առաքեցար ՚ի հայրական ծոցոյ ծածկեալ խորհրդով ընդ Հօր յաւիտեան, եւ առեր մարմին զմեղուցելոյս նախաստեղծին յանապական կուսէն անճառ միութեամբ վասըն մերոյ փրկութեան. ողորմեա:

Որ փոխանակ ճաշակացըն դառնութեան մահաբեր պտղոյն անճաշակ լինելով քո քառասնօրեայ, քաղցրացուցեր յուսով ըզլուծ նոր քո օրինաց. վասըն:

Որ աջակողմ աւազակին բացեր ըզդուռըն դրախտին կենաց. բաց եւ մեզ մեղաւորացս ողորմութեամբ. որք ընդ նմին զքեզ դաւանիմք Տէր եւ Թագաւոր. աղաչեմք ըզքեզ ողորմեա:

Ա-գ. Հինգշ. Այսօր կանգնեցաւ աւազան մկրտութեան ՚ի թողութիւն մեղաց մերոց:

Այսօր Տէրըն մեր լուանայր զոտս աշակերտացն և պատուիրէր զայս ասելով: Մի ոմն ՚ի ձէնջ եղբարք մատնելոց է զիս

՚ի մահ եւ որոշի յաշակերտացդ ։

Զայն լուեալ Պետրոսի ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ ով իցէ ։

Բանն զոր ասաց Յիսուս տրտմեցոյց զիւր զաշակերտսն եւ խռովեցան ամենեքեան ։

Յոր․ Դու ես Քրիստոս կեանք եւ յարութիւն ազգի մարդկան․ ողորմեա ։

Դու յարուցեալ նորոգեցեր ըզտիեզերս․ ողորմեա ։

Յոյս յարութեան մերոյ աղբիւր կենաց եւ փրկութեան, ողորմեա ։

Հ․Գ․ Որ ՚ի հրացայտ սաւառնաթեւիցըդ վերանըստիս, այսօր ՚ի դամբանս հողեղինաց անպատմելի սիրով հեղեալ ՚ի յերկընից․ օրհնեալ ես Սուրբ Հոգի Աստուած ։

Որ ՚ի հրեղէն լեզուացն եռահիւսեակ սըրբաբանիս, այսօր ՚ի շըթունըս հողեղինացըն հրածորան հեղեալ ՚ի յերկնից․ օրհնեալ ես Սուրբ Հո․

Որ հրակերպիցն արփիափայլ բոցով միշտ երեւիս, այսօր հողեղինացըն հրաճաշակ բաժակ հեղեալ ՚ի յերկնից․ օրհնեալ ես Սուրբ Հո ։

Մեծ. Ուրախ լեր Աստուածածին, տաճար անխախտելի. զքեզ մեծացուցանեմք.
Ցնծացար անարատաբար, եւ զԱստուած վայելչապէս ծընար. ուրախ։
Ներգէ մարգարէն, սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ, եւ դուռն երկնային. ուրախ։
Խաչ. Սեղան քո Տէր զօրութեանց հաւատով կանգնեցաւ 'ի խորանի քում. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։
Վէմ պատուական 'ի խորանի քում հիմնեցաւ այսօր. եկայք ժողովուրդք երկրը։
փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։
Ի սմա մատուցաւ ճշմարիտ պատարագ, եւ զենումն անապական. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։

Ալէլուիա ալէլուիա.

Բարձր առնեմ զքեզ Տէր՝ զի ընկալար զիս, և ոչ ուրախ արարեր զթշնամին իմ յիս. Տէր Աստուած իմ կարդացի առ քեզ՝ եւ բժշկեցեր զիս. Տէր հաներ 'ի դժոխոց զանձն իմ, և փրկեցեր զիս յայնցանէ՝ որք իջանեն 'ի գուբ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ։

Զգոյշ լերուք անձանց. գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութեամբ եւ արբեցութեամբ՝ և հոգովք աշխարհականօք, և յանկարծակի հասանիցէ ՚ի վերայ ձեր օրն այն. զի իբրեւ զորոգայթ հասանիցէ ՚ի վերայ ամենեցուն որ բնակեալ են ընդ ամենայն երեսս երկրի։

Արթուն կացէք այսուհետեւ, յամենայն ժամ աղօթս արարէք, զի արժանի լինիջիք զերծանել յայնմ ամենայնէ որ լինելոց է, և կալ առաջի Որդւոյ մարդոյ։

Եւ ՚ի տուէ ՚ի Տաճարին ուսուցանէր, եւ զգիշերս ելեալ ագանէր ՚ի լերինն՝ որ կոչէր Ձիթենեաց։

Եւ ամենայն ժողովուրդն կանխէր ընդ առաւօտս առ նա ՚ի Տաճարն լսել ՚ի նմանէ։

Երգ. Պա̊րակցեա՜լ անմարմնա՛կանքն առ կենսատո՛ւ սուրբ Գերեզմանն, տան զաւետիս ազգի մարդկան վասն կենացն յաւէժական. դա՛սաւորեա՜լ պարուց նմ–

ցին ըզնընջեցեալս յօրըն վերջին. Լի լամպ-
տերօք մեծ յառագաստ ընդ իմաստուն
սուրբ կուսանացն ։

Զահաւորեալ նըշան խաչին յարեւելից
փայլեալ ծագին. հաւատացեալքն 'ի քեզ
բերկրին եւ ուրացողքըն կոծեսցին. զեր-
կըրպագօղս սըրբոյ խաչին պայծառացո
լուսով նորին. Լի լամպտե ։

Երգ. Թագաւոր փառաց Քրիստոս որ
ժամանեալ գաս 'ի յերկնից 'ի վերայ
թեւոց հողմոց քո հայրենի կեր-
պարանօք. եւ առնես հրափորձու-
թեամբ ըզքննութիւն որդւոց մարդ-
կան. ողոր ։

Հոգւոցն հանգուցե ։ Վասն հանգ ։ Քրիստոս Որդի Ա․
Հայր մեր որ յերկինս․



Շարական, ԲՁ ·

Հանգ. Հրեշտակային ձայնիւն օրհնեսցուք
զամենասուրբ զԵրրորդութիւնըն, փառա-
ւորելով ըզՀայր. որ վերակոչեաց զամենե-
սեան 'ի մահուանէ յանմահութիւն ։

Ե՛րգեցէք Տեառն ե՛րգ նոր եկեղեցի՛ք սրբեցելո՜ց . Քրիստոսի երկրպագելով . որ վերակոչեցի՛ց զամե ։

Ամբաստաց ձայնիւն օրհնեսցո՜ւք . հոգեւորական հնչմամբ գովեսցուք , սուրբ զհոգի՛ն փառաւորելով . որ վերահանգեա՛ց զամենեսեան ՚ի մի՛ ։

Հանգ . Ի ձայն փողո՜յ գալստեան քո Տէ՜ր , ամենայն հոգի՛ք զարթիցեն կա՛լ ՚ի դատաստանի՜ քում Քրիստո՜ս Աստուած մե՜ր ։

Յո՛րժամ հնչէ՜ բարբառն ահա՛գին , և հա՛րկանի փո՜ղ յարութեան մերոյ . ե՛ւ մե՛ք գոչելով ասեմք փառք գալստեան քո Տէ՜ր ։

Յո՛րժամ առնես հատուցումն Տէր . եւ սուրբք քո պարծեսցին ՚ի քեզ . և մեզ շնորհեսցես Փրկի՛չ կա՜լ ՚ի յաջմէ՜ քումմէ՜ ։

Ալէլ . Դարձո զցասումն քո ՚ի մէնջ , յաղաղակել հողեղինացս . բազմագութ Տէր խնայեա և մի կորուսաներ ։

Կանգնեա զանկեալս ՚ի գլորմանէ . զվիրաւորեալս ՚ի թշնամւոյն . որ բժշկեես հիւանդաց բժշկեա զիմ զհիւանդութիւնս ։

Ի յանցանաց իմոց թախծեալ անձն իմ գոչեմ որպէս ըզմաքսաւորն. Աստուած քաւեա զիս ըզմեղաւորս։

Ապաշ. Աներեւութից քննող գաղտնեաց. բըժըշկեա զհոգւոյս իմոյ ըզհիւանդութիւն եւ կեցո միայն մարդասէր։

Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան, ողորմեա անձին իմոյ բազմամեղի եւ կեց.

Ամենաբաւական ողորմութեան շընորհ. պարգեւեա ինձ յանցանացն աւուրն ըզթողութիւն եւ կեց։

Ապաշ. Կիր. Որ ըզխորհուրդ քո գալըստեանդ յառաջագոյն գուշակեցեր. մարգարէիւքն Իսրայէլի զօրս ընտրեցեր յետ Մովսէսի. որք խօսեցան Հոգւովս Սրբով բազմապատիկ օրինակօք. տէր մեզ փըրկիչ ողորմութիւն եւ ըզմեղաց ըզթողութիւն։

Ի մերձենալ ամաց վերջին, զոր տեսանողքըն ծանուցին. ըզհաստատիլ մեր փըրկողիդ առ 'ի վախճան ժամանակին. Երեւեցար 'ի մէջ մարդկան զգեցեալ ըզկերպ ծառայական. տէր։

Ի վեցերորդ աւուր զԱդամ ստեղծեր 'ի տիպ քո տիրական. որ ոչ պահեաց ըզպատուիրանըն մերկացաւ ըզպատմուճանըն. Իսկ Նոր Ադամդ 'ի վեց դարուն այց արարեր կորուսելոյն. տուր։

Տաճար լուսոյ անշիջատուերին եւ առագաստ անճառ բանին. որ ըզնախնեաց մօրն Եւայի բարձեր զանէծսըն տրտմալի. հայցեա յՈրդւոյ քո միածնի Հօր հաշտութեանըն միջնորդի, բառնալ 'ի մէնջ ըզխռովութիւն եւ տալ զոգւոց խաղաղութիւն։

Ղազ. Յաստուածային ձայնէ գոչմանըն սարսեցին դողալով կապարտեալք դըժոխոց. և մեռեալըն եկն արտաքս անապական։

Կացեալ 'ի դուրս այրին և ձայնէր ազդարարող բարբառովն 'ի գերեզմանն. Ղազարէ եկ արտաքս անապական։

Ելեալ 'ի գերեզմանէն երիզապինդ պատանօքըն մեռեալն. հրամայեաց լուծանել 'ի կեանոյն յաւիտենից։

Յոր. Որ կամաւոր խաչելութեամբ քո

Տէր բարձեր ըզմեղս · ըզքեզ բարեբանեմք ամենեցուն յարութիւն։

Որ երեքօրեայ թաղմամբ քո Տէր մեռուցեր ըզմահ · ըզ։

Որ լուսափայլ յարութեամբ քո Տէր կենագործեցեր զաշխարհս · ըզ։

Հոգ · Նոյն և նման Հօր և Որդւոյ, Հոգիդ անեղ և համագոյ, բըղխումն Հօր անքըննաբար, առող յՈրդւոյ անճառաբար · ի վերնատունն այսօր իջեր, զՀոգիդ շնորհաց քոյ արբուցեր · արբս եւ մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան։

Էից ստեղծող արարածոց որ շրջէիր ի վերայ ջրոց, նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին, գըգուես սիրով աղաւնակերպ, զմարդիկ ծնանիս աստուածակերպ · արբս։

Րաբուն վերնոցն իմանալեաց, և հաստորին այսր ըզգալեաց, որ մարգարէս տաս ի հովուաց, եւ առաքեալս ի ձկնորսաց · աւետաւոր ըզմաքսաւորս, քարոզ բանի քում զհալածողս · արբս։

Մեծ. Մաքուր և աստուածածին Մարիամ, յանկալէ կուսից և պարծանք ազգի մարդկան, մայր և աղախին մեծացուցանեմք։ Անկէզ մորենի եւ տաճար ընդհանուր լուսոյն, անարատ եւ աննախատելի կուսութիւն. մայր և աղա։

Խորհուրդ կենաց եւ մայր կենդանութեան, եւ առագաստ հրափայլ ծագմամբ. մայր և աղա։

Խաղ. Ապաւինեցաք 'ի Խաչ քո արարիչ յաւիտենից, որ ետուր մեզ պահապան յաղթող ընդդէմ թշնամւոյն. աղաչեմք սովաւ Փրկիչ պահպանեա զանձինըս մեր։ Բարձրեալ թագաւոր որ վասըն մեր ելեր 'ի Խաչ, եւ բարձեր սովաւ զյանցանս նախաստեղծին Ադամայ. աղա։

Փառք Հօր և Որդւոյ և. Այժմ և միշտ և.

Գլուխ սուրբ հաւատոյ եւ փայտ կենաց մարդկան յայտնեցար, զոր տեսեալ այսոյն պղծոյ կործանեցաւ անկանգնելի. աղաչ։

Ալէլուիա ալէլուիա.

Աստուած յանուան քում կեցո զիս. եւ 'ի զօրութեան քում իրաւ արա ինձ։

Աստուած լուր աղօթից իմոց, ունկնդիր բանից բերանոյ իմոյ ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ ։

Այսպէս է արքայութիւն Աստուծոյ. որպէս զի այր մի արկանիցէ զսերմանիս յերկիր. և ննջիցէ, և յառնիցէ զցայգ և զցերեկ. և սերմանիքն բուսանիցին և աճիցեն. և նա ոչ գիտէ թէ երկիրն ինքնին բերէ զպտուղ. նախ՝ զխոտն, և ապա՝ զհասկն, եւ ապա՝ ցորեան ատոք 'ի հասկին. այլ յորժամ տայցէ զպտուղն, վաղվաղակի առաքի մանգաղ. զի հասեալ են հունձք ։

Եւ ասէր. ո՞ւմ նմանեցուսցուք զարքայութիւնն Աստուծոյ, կամ որո՞վ առակաւ՝ առակեսցուք զնա ։

Որպէս հատն մանանխոյ՝ որ յորժամ սերմանիցի յերկրի, փոքրագոյն է քան զամենայն սերմանիս՝ որք են յերկրի ։

Եւ յորժամ սերմանիցի, բուսանի և լինի մեծ քան զամենայն բանջար, և արձակէ ոստս մեծամեծս, մինչեւ բաւական լինել ընդ հովանեաւ նորա թռչնոց երկնից բնակել ։

Եւ այնպիսի առակօք խօսէր ընդ նոսա ըզբանն, որպէս կարող լինէին լսել, և առանց առակի ոչ ինչ խօսէր ընդ նոսա. բայց առանձինն աշակերտացն իւրոց մեկնէր զամենայն :

Երգ. Զայնեցէք առ Ղազարոս որով ետուր մեռելոց յոյս, կենդանութեամբ չորեքօրեային կենդանացան որք յԱդամայն. կենաց ձայնիւ վերջին փողոյ կոչեա ըզսա յայսմ հողոյ. 'ի յօթեւանըս Հօր քո լուսոյ ընդ ննջեցեալըս մեր հանգո :

Ղօղեալ սարսեաց պահակ մահու 'ի կենարար ձայնիւ լորոյ. արագապէս զոյգ ընդ բանին եա ըզմեռեալն ըստ հրամանին, լիշխանք օդոյս այս սարսեսցեն ըզհոգի սորա մի արգելցեն. 'ի յօթե :

Երգ. Յորժամ գրեալքըն կատարին, որ զայնմ աւուր մեզ պատմեցին. մարգարէից բանքըն յարգին, առաքելոցըն վճարին. ողորմած Տէր ողորմեա հոգւոցըն մեր ննջեցելոց.

Հոգւոցն հանգուցե : Վասն հանգ : Քրիստոս Որդի Ա. :
Հայր մեր որ յերկինս :

Ասոյ սոյ Գիշերապաշտաման. Շարական ԲԿ.

Աղաչ. Եկեսցէ Տէր ՚ի վերայ մեր ողորմութիւն քո, եւ բան փրկութեան քո պահեսցէ զանձինըս մեր ՚ի մեղաց։

Ողորմութիւն քո եւ ճշմարտութիւն քո եւ լոյս երեսաց քոց առաջնորդեսցէ մեզ ՚ի յարդարութիւն։

Որ ողորմածդ ես գթած եւ երկայնամիտ Տէր. ընկալ զաղաչանըս մեր բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին։

Աղաչ. Տէր ըզլուր միւսանգամ քո գալստեանդ լըւայ եւ երկեայ. զի ուսայ ՚ի սրբոց պատուիրանացն եթէ գաս դու ՚ի դատել զերկիր։

Տէր յիշեցի ըզչար ըզգործս իմ եւ զարհուրեցայ. զի ծանեայ ճշմարտութեամբ զահաւոր եւ զանաչառ ըզքո դատաստանն։

Տէր յիշեցի եւ ըզգութ արարչական սիրոյ քո առ քո արարածս. Եւ ՚ի քո գթութիւնդ ապաւինեալ աղաչեմ, ողորմեա ինձ յաւուր յայնմիկ Քրիստոս արդար դատաւոր։

Աստէ ասէ Գերեզման օրհնէք։

Հանգ․ Ի գալըստեան Տեառըն դրունք երկնից բանին․ և ճառագայթիւք անճառ լուսով Սուրբ Խաչն երեւի։

Ցերեւմոց Տեառըն լերինք հալին․ և ՚ի յահէ փառաց Նորա շարժին զօրութիւնք։

Աւետեօք Տեառըն մեռեալըք յառնեն․ և սուրբք ամենայն անճառ փառօք զարդարին։

Հանգ․ Գայ զօրութեանց Թագաւորն ՚ի նորոգել զարարածս․ ՚ի ձայն ահեղ բարբառոյ զարթուցանէ զննջեցեալսն։

Դողան երկինք և երկիր յահէ փառաց Քրիստոսի․ հուր բորբոքեալ ընթանայ, բոցանկիզէ զմեղաւորսն։

Նորափեսուր զարդարին դասըք սրբոց կուսանացն․ ուրախութեամբ մտանեն ՚ի յառագաստ փեսային։

Ի քեզ եմք ապաւինեալ ամէնօրհնեալ Սրբուհի․ լեր բարեխօս անդադար վասըն մերոյ փրկութեան։

Ողորմ. Յամենայն ժամ աղաչանք իմ այս են. ՚ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր։
Յանցանաց իմոց զարհուրի սիրտ իմ, աղաչեմ զքեզ թող ինձ Տէր։
Արտասուաց իմոց մի լռեր Տէր, զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի։
Ողորմ. Մեղք իմ բազում են յոյժ ծանր են քան զաւազ ծովու. քանզի քեզ միայնոյ մեղայ, ողորմեա ինձ Աստուած։
Բայց Տէր ըզգթուն ողորմութեան որ ողբալով կարդամ առ քեզ. քանզի։
Հեղ յիս զգթութիւնդ քո բազում ողորմ եւ մարդասէր. քանզի։
Ողորմ. Կէր. Որ պատուիրան ճշմարտութեան աւանդեցեր եկեղեցւոյ քո Քրիստոս, անսահման ժամանակաւ աղօթել միշտ առ Աստուած հոգւով եւ մտօք։
Որ ըղքան քո օրինաց հաստատեցեր գործով մեզ օրինակ. հանելով ըզգիշերն ՚ի գլուխ յաղօթս Աստուծոյ բնութեամբ մերով տնօրինաբար. որում կրկնի ծունր ամենայն։
Վասն որոյ եւ մեք պաղատեսցուք առ

քեզ Քրիստոս. շնորհեա մեզ յամենայն
ժամ լինել քեզ յանդիման, մաքուր
աղօթիւք ըստ անմարմնոցն որ յերկինս։
Աղաչանօք աստուածածնին անապական
քում ծնողին, զիմանալի աչս սրտից
մերոց բացցես ողորմութեամբ հայել
'ի լոյս քո Քրիստոս։

Ա—գ. Գլ. Իմաստունքն կուսանքըն պատ-
րաստեալ իւղ լապտերաց, ելին ընդ ա-
ռաջ երկնաւոր փեսային վառեալ լապ-
տերօք։

Իսկ յիմարացն կուսից ունայնացեալք 'ի
յիւղոյ, անպատրաստ գտան դալըս-
տեան փեսային շիջեալ լապ։

Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք
յիւղ հոգևոր, զի մըտցուք 'ի յառա-
գաստ անմահ փեսային վառեալ լապ։

Ցոյ: Քո յարութեանդ փառըք վայելել
երկայնամիտ Տէր։

Օրհնեալ է քո յարութիւնդ Աստուած,
որ ըզմահ մահու ծանուցեր քոյին կա-
մաւոր մահուամբդ. քո յա։

Գոչումն անհեղ հրեշտակին 'ի վիմին որ

րան. տուր ոգւոյ զա՛նչափ քո՜ զխա՛ղա-
ղութի՛ւն:

Փառք Հօր և Որդւոյ և․ Այժմ և միշտ և․

Ի՛ տաճարի՜ փառաց սրբութեա՛ն քո՛
քեզ Երգեն մանկունք. տուր սոցա զա-
ռա՛տ քո՜ զո՛ղորմութի՛ւն:

Ալէլուիա ալէլուիա.

Աստուած ողորմեա մեզ և օրհնեա զմե-
զ. երեւեցո զերեսս քո ՚ի մեզ եւ
ողորմեա մեզ:

Ճառագայթել յերկրի զճանապարհս քո, յա-
զգս ամենայն զփրկութիւնս քո:

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ
Մատթէոսի:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ.

Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից
գանձի ծածկելոյ յագարակի, զոր գտեալ
մարդոյ՝ թաքոյց. և ՚ի խնդութենէ անտի
երթայ վաճառէ զամենայն ինչ զոր ունի,
և գնէ զագարակն զայն:

Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից
առն վաճառականի, որ խնդրիցէ մարգա-
րիտս գեղեցիկս:

Եւ գտեալ մի պատուական մարգարիտ՝ երթեալ վաճառեաց զամենայն զոր ինչ ունէր, և գնեաց զայն մարգարիտ։

Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից ուռկանի արկելոյ 'ի ծով, եւ յամենայն ազգաց ժողովելոյ. զոր՝ իբրեւ լցաւ, հանեալ 'ի ցամաք՝ եւ նստեալ ժողովեցին զբարի բարին յամանս, եւ զխոտանն 'ի բաց ընկեցին։

Այնպէս եղիցի 'ի կատարածի աշխարհիս. ելցեն հրեշտակք՝ 'եւ մեկնեսցեն զչարսն 'ի միջոյ արդարոց, եւ արկցեն զնոսա 'ի հնոց հրոյն. անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց։

Ասէ ցնոսա Յիսուս. իմացայք զայս ամենայն. ասեն ցնա. այո Տէր։

Եւ նա ասէ ցնոսա, վասն այսորիկ ամենայն դպիր աշակերտեալ արքայութեան երկնից՝ նման է առն տանուտեառն՝ որ հանէ 'ի գանձէ իւրմէ զնոր և զհին։

Երգ. Ը՛ստ օրինացն Մովսէսի ընծայեցար 'ի Տաճարին, զի ըզբնութիւնըս մարդկային ընծայեսցես Հօր 'ի յերկինս. խը՛նդըրուածովք սուրբ ծերունւոյն քեւ 'ի

կապից արձակելոյն ողորմեա քո ստեղ-ծուածոյս՝ յուսով ՚ի քեզ ննջեցելոյս։
Թագաւորդ հրեղինաց, որ ընդ մարդ-կան հողեղինաց շրջեցար տնօրինաբար կրեցեր ըզկիրըս մարդկաբար. որ վասն մեր զայս ամենայն ՚ի յանձն առեր խո-նարհութեամբ. ողոր։

Արարիչ եւ մարդասէր անոխակալ ես բարեգութ, որ գովեալդ ՚ի սրովբէից Տէր դասաւոր արդարութեան. ընդ սուրբս Առաքելովք Տէր պսակեա զմեր ննջեցեալսն. ողորմեա Տէր ողորմեա հոգւոցն մեր ննջե-ցելոց։

Հոգւոցն հանգուցելոց Քրիս։ Վասն հանգուցեալ։

Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ և։

Հայր մեր որ յերկինս։

Շարական. ԳՁ.

Հանգ. Ի ձայն մեծի զուարթնոյն և ՚ի հըն-չումն հրաշալի փողոյն, ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին, յայնժամ ա-

ւուր անհեղին յիշեա Տէր և ըզմեր ըզ-
նըննջեցեալըս, և հանգո ընդ սուրբըս քո։
Յորժամ նըշան տէրունեան ճառագայ-
թիւք փայլէ, և թագաւորըդ թագաւո-
րաց փառօք ատեանի. յորժամ աւուր ա։
Յորժամ ատեան դատաստանին դընի,
և դըպրութիւնք հրաշիցըն բանին.
յորժամ աւուր անհեղին յի։
Հանգ. Որ երկայնամիտդ ես Տէր քաղցր
և անոխակալ հանգո՛ զհոգիս քոց ծառ-
այից. զի մի դարձցի տնանկ ամաչե-
ցեալ յաւուրն ահեղ ատենին։
Զմիշտ կայական հրաժարեցելոցն ՚ի հանգիս քեզ
ընկալցիս. և զուխտըս մեր ընկալ որպէս
զԱբելին զնուէրն և զԱբրահամուն. զի մի։
Ի խորան քում սիրողաց հանգուցես ըզ-
ծառայս քո, և զհոգիս նոցա դասեսցես
ընդ սուրբըս քո. զի մի.
Աղաւ. Զերծո զիս յորոգայթէ որսողին
և յամենայն վըտանգից ապրեցո և
ողորմեա.
Յաներեւոյթ թըշնամեաց և ՚ի գազանաց
նենգաւոր բանսարկուին պահեա և ողոր։

հեամ ըզնոյն մաքրութեամբ 'ի թողութիւն
մեղաց մերոց ։

Որ վառեցար 'ի յարփւոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն ․ այլ եռուր զհացըն կե-նաց կերակուր բանաւորաց ․ բարեխօսեա առ Քրիստոս ջընջել ըզգիր մեղաց մերոց ։

Ա-Գ․ Բչ․ Ահաւոր ես թագաւոր քրով-բէական ձայնիւ օրհնեալ ․ 'ի յերկինս
'ի յերկրի և յամենայն ժամանակի ։

Ահաւոր ես թագաւոր որ նորոգես զքո զարարածս ․ հաստատեա 'ի հաւատս 'ի
գիտութիւն ճշմարտութեան ։

Լուսաւորեա ըզմեզ Քրիստոս 'ի միւսան-գամ քո գալըստեանն ․ յորժամ ծագիս
'ի յերկնից և նորոգես զքո զարարածս ։

Ցոր․ Այսօր յարութիւն Քրիստոսի տօ-նեցէք հաւատացեալք 'ի մի Աստուած
Հայր ամենակալ ։

Այսօր եւ կանայքն իւղաբերք աւետիս տալով առաքելոցն օրհնեն զԱստուած
զՀայր ամենակալ ։

Այսօր և հրեշտակք 'ի յերկինըս հոգե-ւոր հընչմամբ երգով․ օրհնեն զԱ՜ս ։

Հոգ. Որ ՚ի թեւրս թմթեւս աննիւթ սուսանեալ եւ հրացայտըղդ սերովբէից վերամբառեալ տեսչութեամբ խնամես զարարածս. Հոգի Սուրբ օրհնեալ ես յարարածոց քոց.

Որ սքանչելապայծառ հրաշալի ձայնիւ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ միշտ փառաբանիս, եւ քաղցրութեամբ հայիս յարարածս. Հոգի Սուրբ օրհ:

Այսօր աստուածային տեսչութեամբ ՚ի վերնատունն հնչեալ հողմաձայն հնչմամբ, և զառաքեալսն արբուցեալ բաշխեցար յարարածս. Հո:

Մեծ. Աստուածածին երկնային դուռն աստուածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ:

Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անճառականաբար բնակիլ հաճեցաւ ՚ի քում յորովայնի. ուրախ լեր բերկ:

Որ բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ պահիւր, այսօր ՚ի մէջ մարդկան ՚ի գիրկըս հողեղինի յայտնեալ. ու.

միայն կայ . ապա Թէ մեռանիցի՝ բազում
արդիւնս առնէ ։
Որ սիրէ զանձն իւր՝ կորուսանէ զնա . և որ ատեայ զանձն իւր յաշխարհիս յայսմիկ՝ 'ի կեանսն յաւիտենականս պահեսցէ զնա ։
Եթէ ոք զիս պաշտեսցէ , զկնի իմ եկեսցէ . և ուր ես եմ , անդ և պաշտօնեայն իմ եղիցի . եթէ ոք զիս պաշտեսցէ պատուեսցէ զնա Հայրն իմ ։

Փառաց 'ի փառըս բարձրանան , ողջա՛ ։
Քահանայք և ժողովուրդք հայցեմք 'ի՛ ։
(Տէ․ երե․ 377) ։

Ի դնելը բեմն բազմի փեսային . եւ առագաստն զարդարի . Գաբրիէլեան փողն գոչէ . սուրբք ամենայն անդ հաւաքին . արդարոց դասքն բերկրին , իսկ մեղաւորքն թախանձին . ողորմեա Տէր ողորմեա հոգւոցն մեր ննջեցելոց ։

Հոգւոցն հանգուցելոց ։ Վասն հանգ. Քրիստոս Որդի Աս. ։
Հայր մեր որ յերկինս .



Շարական, Գկ.

Տէր. Լոյս 'ի լուսոյ զմեզ լուսաւորեա, որ փառօք Հօր հանդերձեալ ես գալ 'ի դատել զերկիր. արժանաւորեա և ըզմեր ըզննջեցեալսն անձառ խոստմանց քոց ընդ սուրբս քո։

Հօր և Հոգւոյ համագոյակից, 'ի տիեզերական ահեղ ատենին արժա։

Երկնի և երկրի արդար դատաւոր, յորժամ հատուցանես ըստ գործոց իւրաքանչիւրոց, արժա։

Հանգ. Փառըք քեզ Աստուած փառաւորեալ յաւիտեան՝ որ կենարարդ ես մարմնոց, եւ գոյացուցիչ հոգւոց մեր ննջեցելոցն։

Որ բարձրացար 'ի Խաչին վասն Ադամայ նորոգման. եւ իջանելով քո 'ի դժոխս աւար առեր ըզգերեալսն.

Ըզգինս արեան քո յիշեա կենագործող աշխարհի. եւ հանգստեան արժանաւորեա յԵրուսաղէմըն վերին։

Աղաչ. Քրիստոս Աստուած աստուածոց, ողորմեա։

Անօրէնութեամբ 'ի մեղս երկնեալց զիս
մայր իմ. աղաչեմ Փրկիչ, ողորմ ։
Վիրաւորեալ մեղօք անկանիմ առ քեզ
Փրկիչ. մի՛ անտես առներ, ողորմ ։
Ապաշ. Մաքսաւորն հառաչանօք 'ի տաճարին էառ ըզքաւութիւն. նովին ձայնիւն եւ ես գոչեմ, ողորմեա ինձ Աս-
տուած ։
Աւազակն աղաղակէր 'ի խաչին. յիշեա
զիս Տէր. նովին ձայնիւն և ։
Անառակ որդին աղերսանօք աղաչէր ըզքեզ, Հայր մեղայ յերկինս և առաջի քո.
նովին ձայնիւն և ։
Ապաշ. Կէր. Լոյս 'ի լուսոյ ծընունդ եւ ծագումն. որ եկիր 'ի խընդիր մոլորեալ ոչխարի բնութեանս. զոր ընդ խաչին բարձեր 'ի վերայ ուսոյդ. մաքրեա ըզ-
մեզ 'ի մեղաց մերոց ։
Սուրբըդ սրբոց էից մաքրութիւն. որ ածեր տան քո աւել 'ի մեղաց զաշխարհս մաքրելով. 'ի նմա զըտեալ ըզպատկեր քո նորոգեցեր. նորոգեա զմեզ 'ի հնութենէ
մեղաց ։

Ընդ անառակին որդւոյ գոչեմք առ Հայրըդ գըթած, մեղաք յերկինս և առաջի քո քաւիչ յանցանաց. Եւ ընդ առաջին սիրոյդ, գըրկեա համբուրիւ, մաքրեա ըզ-

մեզ 'ի հնոյ :

Աղբիւր կենաց բըղխեալ յեդեմայ սուրբ Աստուածածին, որով արբեցաւ երկիր ծարաւեալ հոգւոյն իմաստիւք. տուր մեզ մաղթեամ աղբիւրըս արտասուաց մաքրել

ըզմեզ 'ի հնոյ :

Ապաշ. Կէր. Շնորհեա մեզ Տէր ընդ աղքատաց օրինակին Ղազարու ժուժկալութիւն. զի կամաւոր աղքատութեամբ արքայութեանն երկնից ընդ նմին կըցորդք արժանի. լուր մեզ եւ ողորմեա

Քրիստոս Աստուած :

Որ փոխանակ հացին կորուսութեան զհացն անմահութեան նմին շնորհեցեր. եւ ընդ մեծատանն անգըթութեան 'ի գոգն Աբրահամու ըղձա ընկալար. լուր: Լուսաւորեա զոգիս աղքատից տնանկաց մեզ ողորմութեամբ 'ի քէն Տէր զողորմութիւն. զի մի ընդ մեծատանն հայ-

Մեծ. Մայր եւ կոյս աղախին Քրիստոսի
որ բարեխօսդ ես միշտ աշխարհի. քեզ
երանեն ամենայն ազինք ։

Մաքուր աղաւնի և հարսն երկնից Մա-
րիամ, տաճար եւ աթոռ Աստուծոյ բա-
նին, քեզ երանեն ամե ։

Քեւ հաճեցան իմանալիքն ընդ հողե-
ղէնքս, եւ քեւ մերձեցաք 'ի փայտըն
կենաց. քեզ երանեն ամե ։

Խաչ. Ով պահապան որ ծածկեցար յեդե-
մայ, նըշան յաղթութեան ընդդէմ անե-
րեւոյթ թըշնամւոյն ։

Դու փակելոյ դրախտին բացող և առաջ-
նորդ աւազակին. որ զբոցեղէն սուրըն
կապտեաց անեղին հրամանաւ ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Քեւ ցընծան ըստորայինքս ամենայն 'ի միւ-
սանգամ քո գալըստեանն. և յաւէժ զուար-
ճանան դասք անմարմնոցն առ էիցս ։

Ալէլուիա ալէլուիա.

Տէր լուր աղօթից իմոց՝ աղաղակ իմ առ
քեզ եկեսցէ, և մի դարձուցաներ զերեսս
քո յինէն ։

*Յաւուր նեղութեան իմոյ խոնարհեցո ա-
ռիս զունկն քո . յորում աւուր կարդամ
առ քեզ՝ վաղվաղակի լուր ինձ :*

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու :

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ :

*Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ . զի հաճեցաւ
Հայր ձեր տալ ձեզ զարքայութիւնն :
Վաճառեցէք զինչս ձեր , և տուք զողոր-
մութիւն . և արարէք ձեզ քսակս առանց
հնանալոյ՝ գանձ անպակաս յերկինս . ուր
ոչ գող մերձենայ , եւ ոչ ցեց ապականէ .
զի ուր գանձն ձեր է , անդ և սիրտք ձեր
եղիցին :
Եղիցին գօտիք ձեր պնդեալ ընդ մէջս , և
ճրագունք լուցեալք . եւ դուք նմանողք
մարդկան՝ որ ակն ունիցին Տեառն իւ-
րեանց՝ թէ երբ դառնայցէ 'ի հարսա-
'նեաց . զի յորժամ գայցէ եւ բախիցէ՝
վաղվաղակի բանայցեն նմա :
Երանի իցէ ծառայիցն այնոցիկ՝ զորս ե-
կեալ տէրն գտցէ արթունս . ամէն ասեմ
ձեզ . զի գօտի ընդ մէջ ածցէ , և բազմե-
ցուսցէ զնոսա , եւ անցեալ պաշտեսցէ*

գնոսա․ եւ եթէ յերկրորդ՝ կամ յերրորդ պահու եկեսցէ՝ եւ գտցէ այնպէս, երանելի են ծառայքն այնոքիկ։

Բայց զայն գիտասջիք, եթէ գիտէր տանուտէրն յորում ժամու գող գայ, հսկէր եւ չտայր թողուլ ական հատանել ՚ի տան իւրում։

Եւ դուք՝ եղերուք պատրաստք, զի յորում ժամու ոչ կարծիցէք՝ գայ Որդի մարդոյ։

Երգ․ Պարակցեալ անմարմնականքն առ կենսատու սուրբ Գերեզմանն, տան զաւետիս ազգի մարդկան վասն կենացն յաւէժական․ դասաւորեալ պարուց նոցին ընդընջեցեալս յօրէն վերջին․ և լապտերօք մոյծ յառագաստ ընդ իմաստուն սուրբ կուսանացն։

Զուարճացեալ նշան խաչին յարեւելից փայլեալ ծագին․ հաւատացեալքն ՚ի քեզ բերկրին և ուրախացողքն կոծեսցին․ զերկրպագումս սրբոյ խաչին պայծառացո լուսով նորին․ և լապտե։

Յորժամ հնչիւն փողոյն լինի եւ Դատաստանական գիրքն յայտնի․ Խաւա-

գայթ սրբոյ խաչին յարեւելից փայլեալ ծագի. հրեշտակաց գունդք ծաւալին, հրեշտակապետք պարու-նակին. ողորմած Տէր ողորմեա հոգւոցն մեր ննջեցելոց։

Հոգւոցն հանգուցեալ։ Վասն հանգ։ Քրիստոս Որդի Ա։
Հայր մեր որ յերկինս։

---

Շարական, ԴՁ.

Հանգ. Քանզի զքեզ օրհնեն իշխանու-թիւնք երկնից. Թագաւոր փառաց ամե-նակալ ամենակարող. Թող զմեղս մեր ննջեցելոցն. և հանգո ի խորանի քում ի յարքայական ի հանգստեան։

Որ ի նախնումն ընդ մարգարէն Մովսէս լուսաւորեցեր աստուածային փառօք տեսլեամբ աստուածութեանդ քո. լու-սաւորեա եւ զմեր զննջեցեալսն, եւ հանգո ի խորանի քում ի յար։

Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի ծնողի և մօր քո յիշեա զդինս արեան քո

Տէր, և դասաւորեա՛ յերանաւէտն յանթառամն և յանտրտում 'ի կեանսդ 'ի յարքայական 'ի՛ հանգըստեան։

Հանգ. Փառըք քե՛զ Հայր, որ կենարա՛րդ ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց. ընկալ զօրհնաբանող հոգիս յանմահական քո հանգիստդ։

Մարդասիրի Հօր Որդի, որ պատկերակից եղեր հողեղինացս և խաչեցար. ըն։

Ամենազօր Սուրբ Հոգի, որ անդորրիչ ես նեղելոց և մխիթարիչ հոգւոց. ըն։

Ապաշ. Համբառնամ առ քեզ Տէր զաչս իմ. նայեա՛ յիս գթութեամբըդ քո. և ողորմեա՛։

Դու ես յոյս և ապաւէն իմ, զերծո՛ զիս յորոգայթէ մեղաց. և ողո՛ր։

Ապրեցուցիչ իմ եւ փրկիչ իմ, ապրեցո՛ զիս յորոգայթէ մեղաց. և ողո՛ր։

Ապաշ. Աստուա՛ծ մարդասէր որ զմաքսաւորն արդարացուցեր. քաւեա՛ զիս ըզմեղաւորս։

Որ քղանցիւ հանդերձիդ քո ըզմերձեցեալն 'ի քեզ բըժշկեցեր. քա՛։

Որ բանիւ հրամանի քո զանդամալոյծն
առողջացուցեր . քո ։

Աղաւ. Եկր. Որ զօրէնըս օրհնութեան
պահոց նախ ՚ի դրախտին աւանդեցեր .
զոր ոչ պահելով նախամարդն ճա-
շակմամբ պտղոյն ճաշակեցին ըզդառ-
նութիւն մեղաց եւ մահու . վասն որոյ
շնորհեա մեզ Տէր ճաշակել ըզքաղցրու-
թիւն քոց պատուիրանաց ։

Որ ազնուազան վիրօք մեղաց հարաք յոգիս
՚ի թըշնամւոյն . եւ ՚ի բազմապատիկ հէ-
ւանդութեանս կարօտացաք մարդասիրդ
բառնալոյ ըզցաւըս մեր . վասն որոյ
բըժըշկեա ըզմեզ Քրիստոս որպէս մար-
դասէր ։

Որ եկիր ՚ի փրկութիւն մարդկան ծնըն-
դեամբ կուսին Մարիամու , եւ կենդա-
նարար քո յարութեամբդ հրաւիրեցեր
ըզմահացեալքս ՚ի յարութիւն անմահու-
թեան . վասն որոյ աղաչանօք մօր քո
կեցո զմեզ փրկիչ ։

Ղող. Որ ՚ի չորեքկերպեան կենդանեաց
փառաբանեալ ՚ի բարձունս . այսօր մարդա-

սիրամպէս փրկիչ, 'ի Բեթանիա եր-
թալ յանձն առեր. աղբիւր կենաց մեր
և յոյս ողորմեա մեզ։

Որ յարտասուս մարիամանց գթացեալ
արտասուեցեր եւ ասացեր ցնոսա. ուր
եդիք, ե՞ս յարուցից ըզսիրելին իմ
զՂազար. աղբիւր կենաց մեր և։

Աստուածային արարչագործ ձայնիւ քո
Քրիստոս 'ի թաղմանէ կոչեցեր ըզՂա-
զարոս. ցուցանէր կենդանեաց և մե-
ռելոց Աստուած. աղբիւր կենաց մեր և
յոյս ողոր։

Յոր. Անեղանելի բանդ Հօր եւ եղելոց
պատճառ. որ ծնար 'ի կուսէն, ըզքեզ
ծանեաք Աստուած. աղաչեմք ողորմեա
ազգի մարդկան։

Սերովբէից ահաւոր և դատաւո՞ր կեն-
դանեաց եւ մեռելոց, որ 'ի խաչին բե-
ւեռեցար. ըզքեզ ծա։

Կենդանութեան աղբիւր եւ պարգեւա-
տու առատ ողորմութեան. որ յարեա-
րդ 'ի մեռելոց. ըզքեզ ծա։

Հոգ. Անըսկիզբն Աստուած Սուրբ Հոգի.

ըղձարգարէութեանց նախագուշակումն
արտափայլեալ լուսազարդեցեր . անա-
տապէս հեղեալ յառաքեալսն ։

Անժամանակ Որդին միածին . ըղխոս-
տացեալ պարգեւըս աւետեացն 'ի վեր-
նատունն առաքեալ լցեր . անա ։

Ամենակալ Հայր Երկնաւոր . զանքանձա-
նելի լուսոյդ ըզծագումն հողեղինացըս
շնորհեցեր . անա ։

Մեծ . Ըղքեզ օրհնութեամբ մեծացու-
ցանեմք ։

Որ զքանն Աստուած յարգանդի կրե-
ցեր Սրբուհի անարատ , և անձառապէս
ծընար ըզվերանձգողն երկնից . ըզ քեզ
օրհնութեամբ մեծամ ։

Որ էիցս լուսոյն արժանի եղեր բառնա-
լըս 'ի քո գիրկս . եւ արեգականն արդա-
րութեան եղեր արեւելք . ըզքեզ օրհ-
նութեամբ մեծամ ։

Խաչ . Զօրութիւն սուրբ Խաչի քո Քրիս-
տոս որ կանգնեցեր 'ի փըրկութիւն աշ-
խարհի . սա պահեսցէ ըզմեզ յամե-
նայն փորձութենէ ։

Քանզի ՚ի սմին բարձրացար Աստուած ,
եւ ՚ի սմին հեղեր ըզպատուական սուրբ
զարիւնդ . սա՛րհք ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Եւ ըզքո՛ միաւանգամ ըզգալուստդ նշա-
նաւ խաչի քո՛ ցուցեր աշխարհի . սա՛րհք
պահեսցէ ըզմեզ յա ։

Ալէլուիա ալէլուիա .

Մերձեսցին խնդրուածք իմ՝ առաջի քո
Տէր , ըստ բանի քում իմաստուն արա զիս ։
Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր . և բա-
նիւ քո փրկեա զիս ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ
Մարկոսի ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ ։

Այլ յաւուրսն յայնոսիկ յետ նեղու-
թեանն այնորիկ՝ արեգակն խաւարեսցի ,
և լուսին ոչ տացէ զլոյս իւր . և աստեղք
յերկնից թօթափեսցին . եւ զօրութիւնք
յերկինս շարժեսցին ։
Եւ յայնժամ տեսցեն զՈրդի Մարդոյ եկ-
եալ ամպովք , եւ զօրութեամբ՝ եւ փա-
ռօք բազմօք ։

Եւ յայնժամ առաքեսցէ զհրեշտակս իւր. և ժողովեսցէ զընտրեալս իւր ՚ի չորից հողմոց՝ ՚ի ծագաց երկրի մինչեւ ՚ի ծագս երկնից։ Բայց դուք ՚ի թզենւոյ անտի ուսջիք զառակն. յորժամ ոստք նորա կակղանայցեն, եւ տերեւ տրձակիցի ՚ի նմա, գիտէք թէ մերձ է ամառն. Նոյնպէս եւ դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ, գիտասջիք՝ թէ մերձ է առ դուրս։ Ամէն ասեմ ձեզ, թէ ոչ անցցէ ազգս այս, մինչեւ այս ամենայն եղիցի։

Երկինք՝ եւ երկիր անցցեն, եւ բանք իմ ոչ անցանիցեն։

Երգ. Զայնեցեր առ Ղազարոս որով ետուր մեռելոյ յոյս, կենդանութեամբ չորեքօրեայն կենդանացան որք յԱդամայն. կենաց ձայնիւ վերջին փողոյ կոչեա ըզսա յայսմ հողոյ. ՚ի յօթեւանըս Հօր քո լուսոյ ըզննջեցեալըս մեր հանգո։

Ղողեալ սարսեաց պահակ մահու ՚ի կենարար ձայնիւ լըրոյ. արագապէս զոյգ ընդ բանին եւ ըզմեռեալն ըստ հրամանին, իշխանք օդոյս այս սարսեսցեն ըզհոգի սորա մի՛ արգելցեն. ՚ի յօթե։

Մովսէս աստուածախօս եւ Ահարօն ը Ղեւտացին , մարգարէքըն իսրայէլի , եւ քահանայք հին օրինին . յառաջագոյն մեզ ծանուցին ըզգալուստ սուրբ Միածնին . 'ի փըրկութիւն մեզ յայտնեցին , յանապատին կերակրեցին . ողորմած Տէր ողորմեա հոգւոցըն մեր նըննջէ-ցելոց .

Հոգւոցն հանգուցելոց Քրիս : Վասն հանգուցելոյ :

Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ և :

Հայր մեր որ յերկինս :

Շարական , Դկ .

Հանգ . Խընդրեմք 'ի քէն Թագաւոր փառաց փառաւորեալդ 'ի զուարթնոց . ըզննջեցեալսըն մեր ընկալ մարդասէր Տէր , և հանգո ընդ սուրբըս քո :

Յորժամ գաս փառօք Հօր դատել զերկիր արդարութեան արեգակն . ըզնըն :

Ի՞ նըստիլ քո յատենի դատաւոր ահեղ Քրիստոս փրկիչ մեր և յոյս . ըզնըն :

Հանգ. Հա՛յր ա՜նըսկիզբըն բա՛րեխնամ մարդա՛սէր. որ ստեղծի՛չդ ե՛ս հոգւո՛ց և մարմնոց. յիշեա՛ զնընջե՛ցեալըն մե՛ր և հանգո ը՛նդ սո՜ւրբըս քո՛։

Ո՛րդի՛դ մի՜ածի՛ն ո՛ր գըթածդ ես ա՛ռ ամենեսեան. և խաչի՛ւ և ա՛րեամբ գնեցե՛ր ըզքո՛ ժողովուրդս. յիշեա՛ զգինս ա՛րեան քո Տէր, և հանգո ը՛նդ սո՜ւրբըս քո՛։

Հոգի՛դ ճշմարի՛տ որ աղբիւրդ ես ա՛նըսպառելի, եւ լը՛ցուցի՛չ ամենայն բարութեանց յիշեա՛ զնընջե՛ցեալըն մե՛ր և հանգո ը՛նդ սո՜ւրբըս քո՛։

Աղաչ. Քրիստոս Աստուա՛ծ յո՛յս ապա՛շխարողաց, շնորհեա՛ զթողութի՛ւն բազում յանցա՛նաց իմո՛ց։

Առ քե՛զ բազմա՛գութ ապաւի՛նեալ կա՜րդամք. մի՛ մե՛րժեր ըզմե՛զ յողորմութե՛նէ՜ քումմէ՛։

Որպէս զաւա՛զա՛կն աղաղա՛կեմ ա՜ռ քեզ. յիշեա՛ եւ զի՛ս Տէր ՚ի քում յա՛րքայութեա՛նդ։

Աղաչ. Ալիք յանցա՛նա՜ց զիս ա՛լէկոծեն, և մեղք իմ բա՛զո՛ւմ զիս յա՛նդի՛մանե՛ն։

Արդ զինչ արարից մեղուցեալ անձամբս,
որ չեմ ապրելոց յահագին հրոյն։
Մեղայ քեզ Քրիստոս Որդի Աստուծոյ,
շնորհեա զթողութիւն բազում յանցա-
նաց իմոց։

Ողող. Կիր. Բանն որ ընդ Հօր յէութեան
և համագոյ Սուրբ Հոգւոյն ըզպատկերն
իւրական խառնեալ ընդ հողանիւթ բը-
նութեանս. զոր զարդարեալ փառօք եդ
ի դրախտին փափկութեան։

Յորում ցընծայր զուարճացեալ անտըխ-
րական խընդութեամբ. քանզի զԱս-
տուած տեսանէր միշտ խոնարհեալ ի
դրախտին. յորմէ զլուսոյն ճառագայթ
տըպաւորէր ի յինքեան։

Վասն որոյ աղաչեա մայր Աստուծոյ Մա-
րիամ զմիածին քո զՈրդին, զի շնորհես-
ցէ ըստ աւազակին ժառանգել վերըս-
տին մեզ ըզդրախտին վայելչութիւն։

Ողող. Յիսուս միածինն անմահութեանց
պարգեւատուն երեւեցաւ մեզ, խա-
փանեաց զզօրութիւն մահու։

Բըղխմամբ արտասուաց Մարիամու եւ

Մարթայի անկեալ առ ոտսն Տեառն,
խնդրէին զնորոգումն եղբօրն ։
Բանի՛ւ բանն Աստուած կենագործեաց
ըզՂազարոս ՚ի թաղմանէ՛ն, և եկեալ
արտաքս անապական ։

Յար. Յարեար երեւեցար առաքելոցն. եւ
մեզ Փրկիչ ողորմեա ։
Քեզ Քրիստոսի թագաւորիդ անմահի
Երկրպագանեմք , և զյարութիւնդ քո
փառաւորեմք ։
Փառք փրկողիդ եւ միածնիդ անմահի.
փրկեա ըզժողովուրդըս քո զոր ըստա-
ցար պատուական արեամբըդ քո սըր-
բոյ ։

Հոգ. Ի հարաչարժ ամպերէն անհատա-
հոսըդ վըտակ, կենդանարար Սուրբ Հոգի,
օրհնեալ ես լոյս Ճըշմարիտ ։
Այսօր ՚ի սուրբ վերնատունն եկեալ Աս-
տուած Ճըշմարիտ , հրաշազարդեաց զա-
ռաքեալսն ՚ի լոյս փառաց քոց Հոգի ։
Հըրճուողականն խընդութեամբ աշակեր-
տացըն լըցեալ . փառաւորելով երգէին
օրհնեալ ես լոյս գերազանց ։

Մեծ. Ի քե՛զ եմք ապաւինեալ Քրի՛ստոսի
մա՛յր Աստուծոյ մերո՛յ ։
Ո՛ր քան զերկի՛նս բարձրագո՛յն Մարի՛ամ,
պա՛րծանք Եկեղեցւոյ. Քրի՛ստոսի ։
Ո՛ր քան զարեգակն պայծառագո՛յն Մարի՛ամ, մի՛ դադարե՛ր բարեխօսե՛լ վասն
մեր, Քրի՛ստոսի մա՛յր Աստուծոյ ։

Խաղ. Սո՛ւրբ զԽա՛չ քո շնորհեցե՛ր զէն եկեղեցւո՛յ քում սրբոյ. ո՛րով դատապարտեա՛լ պարտեցա՛ւ Թշնամի՛ն ։
Սո՛վաւ պահպանեա՛ զժողովո՛ւրդս քո Քրիստո՛ս. ո՛րով երկրպագեմք քե՛զ ընդ Հօ՛ր և Հոգւո՛յն ։

Փառք Հօր և Որդւոյ և ։ Այժմ և միշտ և ։

Ի՛ քեզ ապաւինիմք Քրիստո՛ս որ գալո՛ցդ ես Խաչիւ. ո՛րպէս զի փրկեսցես ըզմեզ յայնմ աւո՛ւր ահեղ ատենի՛ն ։

Ալէլուիա ալէլուիա.

Ի խորոց կարդացի առ քեզ Տէր, Տէր լուր ձայնի իմում։
Եղիցին ականջք քո ՚ի լսել զձայն աղօթից իմոց ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Յայնմ ժամանակի պատասխանի ետ Յիսուս՝ եւ ասէ. Գոհանամ զքէն Հայր՝ Տէր երկնի և երկրի. զի ծածկեցեր զայս յիմաստնոց և 'ի գիտնոց, և յայտնեցեր տղայոց. այո Հայր. զի այսպէս հաճոյ եղեւ առաջի քո։

Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ. Եւ ոչ ոք ճանաչէ զՈրդի եթէ ոչ Հայր. և ոչ զՀայր ոք ճանաչէ՝ եթէ ոչ Որդի, և ում Որդին կամիցի յայտնել։

Եկայք առ իս ամենայն վաստակեալք եւ բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ. առէք զլուծ իմ 'ի ձեզ, և ուսարուք յինէն զի հեզ եմ եւ խոնարհ սրտիւ. եւ գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է. և բեռն իմ փոքրոգի։

Երգ. Ըստ օրինացն Մովսէսի ընծայեցար 'ի Տաճարին, զի ըզբնութիւնըս մարդկային ընծայեցես Հօր 'ի յերկինս. խըն-դըրուածովք սուրբ ծերունւոյն քեւ 'ի

կապից արձակելոյն ողորմեա քո ստեղ-ծուածոյս՝ յուսով 'ի քեզ ննջեցելոյս ։ Թագաւորըդ հրեղինաց . որ ընդ մարդ-կան հողեղինաց շըրջեցար տընօրինաբար կրեցեր ըզկիրըս մարդկաբար . որ վասըն մեր զայս ամենայն 'ի յանձն առեր խո-նարհութեամբ . ողոր ։

Ահեղ խորհուրդ քահանայից . բազկատարած կայր 'ի բեմին առա-ջին սուրբ Սեղանոյն . հուր շիջանի . խաւար մերժի . տըրտմեալ հոգիքն ուրախանան , զի Թողութիւն մեղաց լինի . ողորմեա Տէր ողորմեալ հոգ-ւոցըն մեր ննջեցելոց ։

Երգ . Ես ասացի 'ի վերանալ յինէն աւուրց իմոց . յորվ երթայցեմ և ես այսօր . յառաջին օթեվանին զոր ոչ գի-տէի . օգնեա ինձ Քրիստոս այսօր յառաջին ճանապարհին . և 'ի միւսան-գամ գալըստեանն քո օգնեա ինձ ։ Եկն եհաս օր վախճանի իմոյ . լալումն ողբումն եւ աշխարհումն .

սիրտ իմ խռովեցաւ յիս, և ոսկերք
իմ ցամաքեցան. Փ.

Ի մահճիս իմ պարթուցին զիս պա-
հանջող հոգւոյ իմոյ. տանէին
զիս ճանապարհ հեռաւոր, զոր ոչ գի-
տէի. Փ.

Նայեցայ և ոչ ոք էր որ օգնէր ինձ.
ապաւինեցայ յԱստուած փրկու-
թեան իմոյ. ցընծայցէ հոգի իմ
յարքայութեան քում. Փ.

Յանըստուեր և յանեղ լուսոյն հե-
ռացայ խաւարամած խաւարային. ճա-
շակեցի ըղձահանութ պտղոյն. հո-
ղանայ պատկեր բարերար ստեղծո-
ղին. Փ.

Յանջատման հոգւոյս ի մարմնոյս,
ի քակտել գեղեցիկ շինուածոյս,
զարհուրիմ ի սպառնալեաց թագա-
ւորին, թէ պահանջէ յինէն զտա-
ղանդ պատուիրանին. Փ.

Սոսկալի է որ վախճանին և ա-
հեղ որ դատաստանին. յայնժամ ա-
ւուր ահեղ ատենին. ըղձիւ ար-

եան քո մի անտես առներ, զի պատկեր եմ բարերար ստեղծողիդ. օգնեա եւ ինձ Քրիստոս.

Զահաւոր դատաստան դատաւորիդ տեսի, եւ զարհուրեցայ. զի անպատրաստ եգիտ զիս 'ի հրամանաց քոց Թագաւոր յաւիտենից. օգ.

Աստուածածին անարատ մայր Տեառն եւ կոյս սուրբ. բարեխօսեա առ Որդին քո միածին, զի փրկեսցէ զմեզ 'ի սպառնալեաց գեհենոյն. եւ պարգեւեսցէ մեզ զերկնից զարքայութիւնն. եւ հանգուսցէ զհոգիս մեր ննջեցելոցն. օգնեա եւ ինձ Քրիստոս այսօր յահաւորին ճանապարհին. եւ 'ի միւսանգամ գալըստեանըն քո օգնեա ինձ.

Հոգւոցն հանգուցելոց Քրիս. Վասն հանգուցելոյ. Քրիստոս Որդի Աստուծոյ անոխակալ է.

Հայր մեր որ յերկինս.

Մաղթանք.

Յիշեսցէ բարեգութ եւ մարդասէրն Աստուած՝ զհոգիս համօրէն հաւատացեալ

ննջեցելոցն ։ Մանաւանդ զհոգիս հանգուցելոյս մերոյ (այս անուն) ծառայի իւրոյ , որոյ վասն զպաշտօնս և զպաղատանս մատուցաք ։ Թողցէ Տէր Աստուած զմեղս նորա զամենայն՝ զկամայն եւ զակամայն . զգիտութեան եւ զանգիտութեան . զմահացուն եւ զներելին ։ Խաչին լուսոյն , Գաբրիէլեան փողոյն , երանաւէտ ձայնին , աստուածային տեսոյն , անթառամ պըսակին , անմատոյց խորանին , լուսեղէն առագաստին արժանիս արասցէ ։ Եւ զամենայն հաւատացեալս անուան իւրոյ՝ խաղաղ կենօք պահելով , երկնից արքայութեանն արժանացուսցէ , ամէն ։



# ԱՒԵՏԱՐԱՆՔ

## ԲԺՇԿՈՒԹԵԱՆ



Ալէլուիա ալէլուիա ·

Տէր՝ մի սրտմտութեամբ քով յանդիմա-
ներ զիս · եւ մի բարկութեամբ քով խրա-
տեր զիս ։

Ողորմեա ինձ Տէր, զի հիւանդ եմ ես ·
բժշկեա զանձն իմ, զի խռովեցան ոսկերք
իմ ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ
Մատթէոսի ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Մինչդեռ նա զայս խօսէր ընդ նոսա, ա-
հա իշխան մի մատուցեալ երկիրպագանէր
նմա՝ և ասէր, դուստր իմ արդ եւս վախ-
ճանեցաւ · այլ եկեալ դիցես զձեռն քո
՚ի վերայ նորա՝ եւ կեցցէ ։

Յարեաւ Յիսուս՝ եւ գնաց զկնի նորա ա-
շակերտօքն հանդերձ ։

Եւ ահա կին մի տեռատես երկոտասա-նամեայ՝ մատուցեալ յետոյ մերձեցաւ ՚ի դրօշակ հանդերձի նորա. քանզի ասէր ՚ի միտս իւրում, թէ միայն մերձենամ ՚ի հան-դերձս նորա՝ փրկիմ։

Իսկ Յիսուս իբրեւ դարձաւ՝ և ետես ըզ-նա՝ ասէ. քաջալերեաց դուստր՝ հաւատք քո կեցուցին զքեզ. և փրկեցաւ կինն ՚ի ժամէն յայնմանէ։

Իբրեւ եկն Յիսուս ՚ի տուն իշխանին, եւ ետես զփողահարսն և զամբոխ յոյժ, ասէ ցնոսա. ՚ի բաց գնացէք. զի ոչ եթէ մե-ռեալ է աղջիկդ՝ այլ ննջէ. և ծաղր առ-նէին զնա։

Եւ իբրև ել ամբոխն ՚ի բաց, եմուտ կալաւ զձեռանէ նորա, և յարեաւ աղջիկն։

Եւ ել համբաւս այս ընդ ամենայն երկիրն ընդ այն։

Եւ մինչդեռ անցանէր ընդ այն Յիսուս, զհետ եղեն նորա կոյրք երկու, աղաղա-կէին եւ ասէին, ողորմեաց մեզ Որդի Դաւթի։

Եւ իբրեւ եկն ՚ի տուն, մատեան առ նա կոյրքն։

Եւ ասէ ցնոսա Յիսուս. հաւատայք՝ ե-

Թէ կարող եմ առնել ձեզ զայդ․ ասեն
ցնա, այո Տէր։
Յայնժամ մերձեցաւ յաչս նոցա՝ և ասէ․
ըստ հաւատոց ձերոց եղիցի ձեզ․ և բա-
ցան աչք նոցա։
Եւ սաստեաց նոցա Յիսուս՝ և ասէ․ ըզ-
գոյշ կացէք, մի՛ ոք գիտասցէ։
Եւ նոքա ելեալ՝ համբաւեցին զնա ընդ ա-
մենայն երկիրն ընդ այն։

---

### Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ վաղվաղակի ելեալ ՚ի ժողովրդենէն,
եկն ՚ի տուն Սիմօնի եւ Անդրեայ՝ Յակո-
բաւ և Յօհաննու հանդերձ։
Եւ զոքանչ Սիմօնի դնէր ջերմացեալ․ եւ
վաղվաղակի ասեն ցնա վասն նորա։
Եւ մատուցեալ յարոյց զնա՝ կալեալ ըզ-
ձեռանէ նորա, և եթող զնա տենդն, և
պաշտէր զնոսա։
Եւ մտեալ դարձեալ ՚ի Կափառնայում,
յետ աւուրց լու եղեւ եթէ ՚ի տան է․

և ժողովեցան բազումք՝ մինչև տեղի ևս ոչ լինել, և ոչ առ դրանն. և խօսէր նոցա զբանն։

Եւ գային առ նա՝ բերէին անդամալոյծ մի բարձեալ 'ի չորից։

Եւ իբրև ոչ կարէին մերձենալ առ նա յամբոխէ անտի, քակեցին զյարկն ուր էր Յիսուս. և բացեալ զառաստաղն՝ իջուցին զմահիճսն յորում կայր անդամալոյծն։

Եւ տեսեալ Յիսուսի զհաւատս նոցա. ասէ ցանդամալոյծն. որդեակ՝ թողեալ լիցին քեզ մեղք քո։

Եւ էին ոմանք 'ի դպրաց անտի՝ որ անդ նստէին. և խորհէին 'ի սիրտս իւրեանց. Թէ զի՞նչ է այս՝ որ խօսի սա զհայհոյութիւնս. ո՞վ կարէ թողուլ զմեղս, եթէ ոչ՝ մի Աստուած։

Եւ գիտաց Յիսուս յոգի իւր՝ թէ այնպէս խորհին 'ի սիրտս իւրեանց. և ասէ. զի՞ խորհիք զայդ 'ի սիրտս ձեր։

Զի՞նչ դիւրին է. ասել ցանդամալոյծն՝ թողեալ լիցին քեզ մեղք քո. եթէ ասել՝ արի՛ առ զմահիճս քո և երթ 'ի տուն քո։

Այլ զի գիտասջիք եթէ իշխանութիւն ունի Որդի Մարդոյ 'ի վերայ երկրի՝ թողուլ զմե-

ղըս. ասէ ցանդամալոյծն. քեզ ասեմ, արի առ զմահիճս քո՝ և երթ 'ի տուն քո։
Եւ յարեաւ. եւ վաղվաղակի առեալ ըզմահիճսն, ել առաջի ամենեցուն՝ մինչեւ զարմանալ ամենեցուն և փառաւոր առնել զԱստուած՝ եւ ասել, թէ այսպիսի ինչ երբեք՝ ոչ տեսաք։

---

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ էջ 'ի Կափառնայում 'ի քաղաքն Գալիլեացւոց, և ուսուցանէր զնոսա 'ի շաբաթոն. եւ զարմանային ընդ վարդապետութիւն նորա. զի իշխանութեամբ էր բան նորա։
Եւ էր 'ի ժողովրդեանն այր մի, զոր ունէր՝ այս դիւի պղծոյ. եւ աղաղակեալ 'ի ձայն մեծ՝ և ասէ. Թուլացո՝ զի՞ կայ մեր և քո Յիսուս Նազովրեցի, եկիր կորուսանել զմեզ. գիտեմք զքեզ ո՛վ ես՝ Սուրբդ Աստուծոյ։
Սաստեաց 'ի նա Յիսուս՝ և ասէ. պապանձեաց՝ և ել 'ի դմանէ։

Զգետնեալս զնա դեւն ՚ի միջի անդ և ել ՚ի նմանէ, և ոչինչ վնասեաց նմա ։

Եւ եղեն զարմանալիք ՚ի վերայ ամենեցուն . խօսէին ընդ միմեանս եւ ասէին . զի՞նչ է բանս այս . զի իշխանութեամբ և զօրութեամբ սաստէ այսոց պղծոց՝ և ելանեն ։

Եւ երթայր հռչակ զնմանէ յամենայն տեղիս շուրջ զգաւառաւն ։

Եւ յարուցեալ ՚ի ժողովրդենէ անտի՝ եմուտ ՚ի տուն Սիմոնի . եւ զոքանչ Սիմոնի տագնապէր ջերմամբ մեծաւ . եւ աղաչեցին զնա վասն նորա ։

Եկաց առ նմա, սաստեաց ջերմանն, և եթող զնա . և վաղվաղակի յարեաւ՝ և պաշտէր զնոսա ։

Եւ ընդ արեւուն մտանել՝ ամենեքեան որոց էին հիւանդք ՚ի պէս պէս ցաւս, բերէին զնոսա առ նա ։

Եւ նա իւրաքանչիւր ումեք ՚ի նոցանէ դնէր ձեռս, և բժշկէր զնոսա ։

Ելանէին դեւքն ՚ի բազմաց . աղաղակէին, և ասէին . եթէ դու ես Որդի Աստուծոյ . և նա սաստէր և ոչ տայր թոյլ խօսել . զի գիտէին զնա թէ Քրիստոսն է ։

Եւ իբրեւ տիւ եղեւ՝ ել գնաց յանապատ տեղի, եւ ժողովուրդքն խնդրէին զնա․ եկին մինչեւ առ նա՝ եւ արգելուին զնա՝ զի մի գնասցէ ՚ի նոցանէ ։

Եւ նա՝ ասէ ցնոսա՝ եւ այլոց քաղաքաց պարտ է ինձ Աւետարանել զարքայութիւնն Աստուծոյ, զի յայն իսկ առաքեցայ ։

Եւ քարոզէր ՚ի ժողովուրդն Գալիլեացւոց ։

---

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Յետ այսորիկ տօն էր Հրէից․ եւ ել Յիսուս յԵրուսաղէմ ։

Եւ էր յԵրուսաղէմ ՚ի Պրոպատիկէ աւազանին՝ որ կոչէր Եբրայեցերէն Բեթհեզթա՝ հինգ սրահ․

Յորս անկեալ դնէր բազմութիւն յոյժ հիւանդաց, կուրաց․ կաղաց, գօսացելոց․ որ ակն ունէին ջրոյն յուզելոյ ։

Եւ հրեշտակ Տեառն ըստ ժամանակի իջանէր յաւազանն՝ և յուզէր զջուրսն․ և որ

Նախ 'ի շարժումն ջուրցն իջանէր՝ բժշկէր .
ոչ ունելով զնշան հիւանդութեան ։
Եւ անդ էր այր մի , որոյ երեսուն և ութ
ամ էր 'ի հիւանդութեան իւրում ։
Զնա իբրեւ ետես Յիսուս՝ զի անկեալ
դնէր , եւ գիտաց եթէ բազում ժամա֊
նակք են այնուհետեւ , ասէ ցնա . կամի՞ս
ողջ լինել ։
Պատասխանի ետ նմա հիւանդն , Տէր .
ոչ զոք ունիմ , թէ յորժամ ջուրքն յու֊
զիցին՝ արկցէ զիս յաւազանն . եւ մինչ
ես դանդաղիմ , այլ ոք քան զիս յառաջա֊
գոյն իջանէ ։
Ասէ ցնա Յիսուս , արի առ զմահիճս քո՝
և գնա ։
Եւ ողջացաւ այրն . եւ յարեաւ . էառ
զմահիճս իւր եւ շրջէր . եւ էր շաբաթ
յաւուրն յայնմիկ ։
Ասեն Հրէայքն ցբժշկեալն՝ շաբաթ է , և
ոչ էր արժան քեզ առնուլ զմահիճս քո ։
Պատասխանի ետ նոցա՝ և ասէ . որ բժըշ֊
կեացն զիս , նա ասաց ցիս՝ արի առ զմա֊
հիճս քո և գնա ։
Հարցին ցնա՝ եւ ասեն . ո՞վ է այրն որ
ասաց ցքեզ՝ առ զմահիճս քո եւ շրջեաց .

և բժշկեալն ոչ գիտէր թէ ով իցէ. քանզի Յիսուս խոյս ետ վասն ամբոխին ՚ի տեղւոջէ անտի։

Յետ այսորիկ գտանէ զնա Յիսուս ՚ի տաճարին, և ասէ ցնա. ահաւադիկ ողջացար. մի ևս մեղանչեր. զի մի չար ևս ինչ լինիցի քեզ։

Գնաց այրն՝ եւ պատմեաց Հրէիցն, եթէ Յիսուս էր՝ որ բժշկեացն զնա։

---

# ԱՂՕԹՔ

## ՎԱՍՆ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

## ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

### ԲԱՆ ԺԸ.

Ա. Արդ՝ ես ծնունդս մեղաց. որդիս մահուան երկանց, արդարև անսահման բիւրուց քանքարաց տուժից գոլ հատուցանող ՚ի միում աւուր։ Այլ ոչ թէ առ փոքրկութիւն մարդկային մտաց հայցեմ ներողութիւն, այլ առ աննուազ լիութիւն Փրկչիդ Յիսուսի Քրիստոսի պաղատիմ մարդասիրութիւն. որ չէի երբեմն՝ և ստեղ-

ծեր, չըմաղթեցի՝ եւ դու արարեր, չեւ
եւս եկեալ ՚ի լոյս՝ եւ տեսեր. ոչ յայտ-
նեցեալ իմ՝ և գթացար, ոչ կարդացեալ՝
եւ խնամարկեցեր, ոչ համբարձեալ ձե-
ռըն՝ և նայեցար, ոչ պաղատեալ՝ և ողոր-
մեցար, ոչ կերպացեալ ձայնիս՝ և լուար.
ոչ հեծեծեալ՝ և ունկնդրեցեր. գիտելով
զարդեան դիպուածոյս՝ եւ չ՚անտեսեցեր.
Նախահայեացդ աչօք նկատեալ զպատժա-
պարտիս չարագործութիւն՝ և յօրինեցեր։
Եւ արդ զքո արարեալս և զքեւ փրկեալս
և զայսքանեաց խնամոց յանձանձեալս՝ մի՛
իսպառ կորուսցէ մեղացն հարուած գիւտք
բանսարկուին, մի յաղթեսցէ յամառու-
թեանս իմոյ մառախուղ՝ ներողութեան քո
լուսոյ, մի՛ սրտիս կարծրութիւն՝ երկայ-
նամիտ քաղցրութեանդ. մի՛ մահացու մսե-
ղիս՝ ամենակատարդ լրութեան, մի՛ տկա-
րութիւնս նիւթոյ՝ անպարտելիդ բարձ-
րութեան։

Բ. Ահա կարկառեմ զկարկամեալ բազուկս
հոգւոյս յանուն քո, հզօր, արասցես ողջ
իբրեւ զառաջինն մինչ ՚ի դրախտին փափ-
կութեան զպտուղն կենաց կթէի. Կաշ-
կանդեալ փոսացեալ ՚ի կար կործանմանց

ընդ կնոջն տագնապելոյ՝ կայ անուղղելի հոգւոյս թշուառութիւն, ընդ երկիր պշուցեալ մեղացն կքմամբ՝ սատանայական բուռըն կապանօք, զի մի զերկնայնոյդ ընկալցի զողջոյն. խոնարհեաց առխս, միայն ողորմած, զի բարձրացուցես զփայտս խոնարհ բանաւոր անկեալ. և զչորացեալս ծաղկեցուսցես 'ի բարի կրօնս վայելչութեան, ըստ աստուածաբանութեան սուրբ մարգարէին: Որպէս զ'ի ծնէ կոյրն անլուսաւոր՝ չունիմ տեսարան, որով զստեղծչիդ նկատեալ զկերպ մաղթեցից, հզօր բարեգութ, միայն դու պաշտպան ակնարկեալ խնամովք անձառ քո սիրոյ՝ 'ի շնչական խօսուն քո անօթս, յանէլից գոյաւորութիւն լուսոյ հաստեսցես: Ընդ երկոտասանամեայ չարեօք չարչարեալ վշտագին կնոջն տանջեցելոյ՝ գետովք մեղանաց արեան հեղեղիմ. հայեաց 'ի բարձանց անմատոյց լուսովդ պարածածկեալ՝ ուր ոչ է քղանցք ձեռաստեղծական վերարկուի ձորձոյ. այլ տարածումն հրաշից ամենայն ուրեք զօրացեալ: Ոչ օծութք իւղով՝ պատժապարտս ընդ մեղաւորին մատուցեալ առ կենդանաձիր ոտից գարշապարդ՝ զկաթիլս աչա-

ցըս վարսիւք հերացս ընծայեցուցանեմ, այլ զամբիծ հաւատս ամբարձմամբ բազկացս ստոյգ դաւանմամբ հոգւոյ ողջունիւ շըթանց կափուցմամբ զերկիր համբուրեմ. խառնեալ հեծութիւն աղբերցս արտասուաց՝ բժշկութիւն հոգւոյս աղերսեմ։ Վատնեալ մեղանօք հոգւոյս գոյութիւն լուծեալ մեղկութեամբ, և յերկուց կայից միայնակողմամբ անհաստատ հետովք, զընթացից գործին՝ նահանջմամբ չարին՝ զհետեւականն բարձողութիւն շինուածոյ մարմնոյս՝ առ ելս ծառոյն կենսառիթ պտղոյն խափանելոյ, պատսպարեսցես անդրէն վերստին, միայն հնարաւորըդ առ 'ի փրկութիւն։ Զփառաբանարան հաստուածոյ կերպիս 'ի քէն եղելոյ՝ ամրափակ խցմամբ համրայցոյց արգել հողմ բանսարկուին. հոգիդ քո ազդեալ մեծդ ողորմութեամբ, ըստ Աւետարանին բժշկեցելոյ. հրաշափառապէս բարեգործեսցես բանդ կենդանի՝ ինձ խօսողութիւն անսայթաքելի։ Անկեալ կամ չարեօք 'ի մահիճս ախտից անկողնոց մեղաց՝ դիր կենդանի և խօսուն մեռեալ, կարեկցեալ իմում թշուառութեան ող-

բականօք քքուանաց ձայնից. ո՜վ բարերար Որդի Աստուծոյ. օրհնաբանեալ աչացդ ցօղով վերականգնեցեր 'ի կենդանութիւն. իբր զսիրելին 'ի յանշնչական մեռելութենէ: Ստոյգ դառնացողս 'ի գըբի մեղաց կամ տարակուսեալ, ձեռն մատուցեալ՝ արեւ անստուեր Որդի բարձրելոյ, հանցես զիս 'ի լոյս քումդ նշուլից: Ընդ աղիողորմ թշուառութեան կականման ձայնի այրւոյն 'ի Նային մօր միամարին, տատանմամբ մատանցն, կոծմամբ կրծիցն, հոսմամբ արտասուացն, տուայտանօք տխրութեան դիմացն. Եւ ես պաղատիմ վերջին հեծութեամբս, տուր յուսահատելոյս զքաջալերութիւն մխիթարութեան գթած քո բանիդ. ասելով եւ ինձ գովեալդ բարի ստեղծիչ աշխարհի. թէ մի՛ լար գերի բազմաց ողբալի. որով ընդ պատանւոյն կենդանացելոյ՝ 'ի վշտացելոյ ծնողին սփոփանս՝ զամենապարտ ոգիս ընկալայց 'ի քէն ընդ նմին կրկին նորոգեալ: Ընդ այսակիր անզգայելոցն դիւալլուկ եւ քարակոշկոծ հեղձամղձուկ եղկելի անձանցն, քստմնելի գիտախառհերացն. վայրեններես բանդագուշելոցն.

'ի քէն ողորմեալ Փրկիչ բոլորից. իբրեւ զնոսին առ քեզ դիմեցից. Հերքեալ մերժեսցես զգունդս չարացն ապականողաց 'ի քո խորանէս, զի ժամանեալ Հոգիդ քո բարի այսրէն հանդիցէ, լցեալ զմարմինս մաքրութեամբ շնչոյս՝ զգեցմամբ անդամոցս, զգաստ արասցես զխելագարեալս ամենաթշուառ։ Ընդ գերեցեալ դժոխաքնակաց վտարանդելոցն հոգւոց արգելեալ կամ 'ի վտանգի. զճառագայթ ողորմութեան փառաց քոց ծագեալ՝ լոյսդ իմ անձկութեան, 'ի կապանաց օձտողին զերծեալ զիս ապրեցուսցես։ Գաղտնորոգայթ աներեւութերակ վրիպակ արահետ դարշութեամբ մեղացս ջրգողեցեալ ոգւոյս կերպարան կայ 'ի տագնապի. զծածկեցեալն 'ի տեսողութեանց զչարագործին թիւնիցն այտուցմունս, քո ինքնաւորդ զօրեղութեամբ Որդի Աստուծոյ, գթածաբար առողջացուսցես։ Զբազմազան տարազս ցեղիցն զանազանից ախտաւորութեանց մահացուցանողաց իւրականօք կորստեան բերիւք՝ դժնդակարմատն շառաւեղօք հաստատեցելովք 'ի յանդաստանի անօրէն մարմնոյս, տարակորզեսցես 'ի ձեռն ձեռինդ

ամենակալի․ որ արօրադրեալ միշտ՝ և մը-
շակես զսահմանս հոգւոց առ բանիդ կե-
նաց արդիւնաւորութիւն։

Գ. Եւ քանզի անցաւ ըստ նմանութիւն օրինականութեանց յանցուածոցս վէր, ըստ ծարակողն քաղցկեղի, առ բնաւ անդամս մասնաւորեալ զախտին տարածումն, չիք սպեղանի իբր Իսրայէլի առ անչափութիւն խարանացն մատուցանել. 'ի խարըխաց բարձինս մինչեւ ցափն կառուցման ըրութեան անդամոցս չ'է առողջութիւն, այլ ամենեւին անբժշկութիւն։ Իսկ դու՝ ողորմած բարերար օրհնեալ և երկայնամիտ Թագաւոր անմահ, ըստ պաղատանացս արգահատութեան սրտիս վտանգի, որ կարդամս առ քեզ Տէր 'ի նեղութեան։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Քարոզ։

Վասն հիւանդաց և ամենայն վշտացելոց աղաչեսցուք զփրկիչն մեր Քրիստոս։

Աղօթք։

Փարատեա՛ զցաւս եւ բժշկեա՛ զհիւանդութիւնս 'ի ժողովրդենէ քումմէ Տէր

Աստուած մեր. եւ շնորհեա ամենեցուն զկատարեալ առողջութիւն նշանաւ ամենայաղթ Խաչի քո. որով բարձեր զտկարութիւն ազգի մարդկան, և դատապարտեցեր զթշնամին կենաց եւ փրկութեան մերոյ: Դու ես կեանք մեր և փրկութիւն՝ բարերար և բազումողորմ Աստուած. որ միայն կարող ես թողուլ զմեղս. եւ մերժեր զախտս և զհիւանդութիւնս 'ի մէնջ. որում յայտնի են պէտք կարեաց մերոց: Պարգեւիչդ բարեաց՝ պարգեւեա զառատ ողորմութիւն քո 'ի վերայ արարածոց քոց՝ ըստ իւրաքանչիւր պիտոյից. յորոց հանապազ փառաւորեալ գովի ամենասուրբ Երրորդութիւնդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Հայր մեր որ յերկինս:



# ՏՆՕՐՀՆԷՔ
# Ի ՍՈՒՐԲ ԾՆՆԴԵԱՆ

---

Շարական, Դկ.

Օրհ. ԽՈՐՀՈՒՐԴ մեծ եւ սքանչելի որ յայսմ աւուր յայտնեցաւ. հովիւքն երգեն ընդ հրեշտակս, տան աւետիս աշխարհի։

Ծնաւ նոր արքայ ի Բեթղեհէմ քաղաքի. որդիք մարդկան օրհնեցէք, զի վասն մեր մարմնացաւ։

Անքաւելին երկնի եւ երկրի ի խանձարուրս պատեցաւ. ոչ մեկնելով ի Հօրէ ի սուրբ այրին բազմեցաւ։

✠ Այսօր ցնծան երկինք ի վերուստ մեծապայծառ աւետեօք. եւ արարածք ամենայն զգեցան հանդերձ փրկութեան.

Այսօր յայրին ընծայեցաւ Քրիստոս Որդին Աստուծոյ. եւ հրեղինաց բազմութիւնքն յերկնից յերկիր վայր իջեալ։

Այսօր հովուացըն տեսեալ զարդարու-
թեան արեգակն. և ընդ հրեշտակս եր-
գէին փառք 'ի բարձունս Աստուծոյ։
* Ի Հօրէ ծագեցար լուսաւորել զարա-
րածս. արդարութեան արեգակըն
Տէր փառըք քեզ։
Ծընար 'ի յայրին. ընծայեցաւ Բեթ-
ղեհէմ. արդար։
Հովուացն յայտնեցար երկրպագեալդ 'ի
Մոգուց. արդար։

Փառք Հօր և Որդւոյ և։ Այժմ և միշտ և։

Եւ մեք երգեսցուք որ 'ի կուսէն մար-
մնացար. արդար։

---

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ
Ղուկասու։

Ի ժամանակի Ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ հովիւք էին 'ի տեղւոջն յայնմիկ բաց-
օթեայք, որք պահէին զպահպանութիւնս
գիշերոյ հօտից իւրեանց։
Եւ Հրեշտակ Տեառն երեւեցաւ նոցա,
և փառք Տեառն ծագեցին առ նոսա, և
երկեան երկիւղ մեծ։

Եւ ասէ ցնոսա Հրեշտակն. մի՛ երկնչիք, զի ահաւասիկ աւետարանեմ ձեզ ուրախութիւն մեծ. որ եղիցի ամենայն ժողովրդեանն. Զի ծնաւ ձեզ այսօր Փրկիչ. որ է օծեալ Տէր, 'ի քաղաքի Դաւթի. Եւ այս նշանակ ձեզ. գտանիցէք մանուկ պատեալ 'ի խանձարուրս, եւ եդեալ 'ի մսուր:

Եւ յանկարծակի եղև ընդ Հրեշտակին ընդ այնմիկ բազմութիւն զօրաց երկնաւորաց, որք օրհնէին զԱստուած և ասէին: Փա՛ռք 'ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, 'ի մարդիկ հաճութիւն:

Եւ զՓառք 'ի բարձունսն մինչեւ 'ի կէսն ասիցեն, և ապա զմնացորդ Աւետարանն ընթերցցին:

Եւ եղեւ իբրեւ վերացան 'ի նոցանէ հրեշտակքն յերկինս, ասեն ցմիմեանս հովիւքն. եկայք երթիցուք մինչեւ ցԲեթղեհէմ, և տեսցուք զինչ է բանս այս որ եղեւ, զոր Տէր եցոյց մեզ:

Եւ եկին փութանակի, և գտին զՄարիամ և զՅովսէփ, և զմանուկն եդեալ 'ի մսուր. և ծանեան վասն բանին՝ որ ասացաւ նոցա զմանկանէն:

Եւ ամենեքին որք լուէին՝ զարմանային վասն բանիցն զոր խօսեցան ընդ նոսա հովիւքն։ Եւ Մարիամ զամենայն զբանս զայսոսիկ պահէր. և խելամուտ լինէր 'ի սրտի իւրում։ Եւ դարձան հովիւքն՝ փառաւոր առնէին և օրհնէին զԱստուած վասն ամենայնի զոր լուան և տեսին. որպէս պատմեցաւ նոցա։

Ապա զմեծացեալն 'ի փառս 'ի բարձունսն՝ երգեն.
Եւ յամենայն ժամ։ Փառք պատիւ և երկրպագ։ Երգ։

Արեգակն արդարութեան այսօր յայտնեցար ազգի մարդկան, մարդ եղեալ սրբեցեր զջուրս, վերածնեալ զմեզ մկրտութեամբն Սրբոյ Հոգւոյն։
Ի վայելչութիւն սրբոց քոց յորդանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։
Մարդ եղեալ սրբե։

Քարոզ՝ Սուրբ զԱստուածածինն։ Կեցո։
Աղօթք՝ Ընկալ Տէր զաղաչանս մեր։

---

Շարական, ԴՁ.

Օրհ. Լոյս 'ի լուսոյ 'ի Հօրէ առաքեցար և մարմնացար 'ի սուրբ Կուսէն, զի վերըստին նորոգեսցես զապականեալն Ադամ։

Դու Աստուած 'ի յերկրի երեւեցար եւ
ընդ մարդկան շրջեցար, եւ փրկեցեր
ըզտիեզերըս յանիծիցն Ադամայ։

Քեզ 'ի յերկնից վըկայեալ Հօր քո ձայն.
ասէ Դու ես իմ Որդի. եւ Սուրբ Հոգին
ըզքեզ յայտնեաց աղաւնակերպ երեւ-
մամբ։

* Ըզքեզ որ հոգւով եւ հըրով մաքրեցեր
ըզմարդկան աղտեղութիւն, որպէս զԱս-
տուած եւ զՓրկիչ ամենեքեան օրհնես-
ցուք։

Փրկիչն երեւեցաւ եւ զաշխարհս մաքրե-
ցոյց 'ի պատրանաց Թըշնամւոյն. որդէգ-
րութիւն շնորհելով 'ի ձեռն մըկրտու-
թեան։

Ջրով կիզու ըզմեղըս մեր այսօր երե-
ւեալ ապրեցուցիչն, եւ զովացուցանէ
զաշխարհս աստուածային ջըրովն։

* Ըզգլուխ վիշապին Փրկիչըն ջախջա-
խեաց 'ի Յորդանան 'ի գետն, եւ ինքեան
իշխանութեամբ զամենեսեան ապրե-
ցոյց։

Զհին մարդըն նորոգելով Փրկիչն 'ի մը-

կըրտութիւն գայ այսօր, զի զապականեալ ըզբընութիւնըս ջըրով նորին գործեսցէ, անապական ըզգեստ փոխարէն տալով մեզ։

Մըկըրտի Քրիստոս և սըրբէ զամենայն արարածս. և տայ մեզ թողութիւն մեղաց ջըրով և հոգւով վերասըրբելով ըզմեզ։

Ալէլուիա Ալէլուիա (Ձայնի—).

Տուն Իսրայելի օրհնեցէք զՏէր. տուն Ահարոնի օրհնեցէք զՏէր։
Տուն Ղեւեայ օրհնեցէք զՏէր. երկիւղածք Տեառն օրհնեցէք զՏէր։
Օրհնեալ Տէր ՚ի Սիոնէ. որ բնակեալն է յԵրուսաղէմ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի.

Վասն Մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ իբրեւ մկրտեցաւ Յիսուս, ել վաղվաղակի ՚ի ջրոյ անտի. և ահա բացան նմա երկինք. և ետես զՀոգին Աստուծոյ զի իջանէր իբրեւ զաղաւնի, և գայր ՚ի վերայ նորա։

Եւ ահա ձայն յերկնից որ ասէր, Դա է Որդի իմ սիրելի, ընդ որ հաճեցայ։

Եւ ապա օրհնեն զջուրն ասելով. Օրհնեցի և սրբեցի ջուրս։ Եւ յետոյ Շարական՝ ԴՁ.

Մկրտի Քրիստոս եւ սրբին ամենայն արարածք. եւ տայ մեզ թողութիւն մեղաց ջրով եւ հոգւով վերասրբելով զմեզ։

Քարոզ՝ Սուրբ Խաչիւ։ Աղօթք՝ Պահպանեա։ Տաղ՝

Այսօր ձայնին հայրական. յերկնից իջեալ հաճոյական. սրբեցելոյ որդւոյ վկային. այ յորդորէ, գետ յորդորէ, գետ Յորդանան. յորդորական ձայնիւ երգէր՝ մեծ Կարապետն Յովհաննէս։

Այսօր երկիրս երկինք եղեն. երեւելով Աստուած Որդւոյն. սրբով եկեալ ի մկրտել. այ յորդա։

Այսօր վերին դասք հրեշտակաց. ուրախացան ընդ սուրբ գալուստ. Աստուածորդւոյն ի Յորդանան. այ յորդա։

Այսօր եկեալ Աստուած Որդին . ի
Յորդանան խոնարհութեամբ . ջրով
մըկրտիւ ի Յովհաննէ . այ յոր ։
Այսօր Մըկըրտիչըն Յովհաննէս . ի
մըկրտիլըն հրաժարէր . թէ ինձ պարտ
է ի քէն մըկրտիլ . այ յոր ։
Այսօր գոչէր քաղցըր ձայնիւ Աստ-
ուած Որդին կարապետին . պարտ էր
զօրէնսըն կատարել . այ յոր ։
Այսօր Յովհաննէսն դողալով . ձեռօքն
ըզՏէրըն մըկըրտէր . ի մեծ յոր-
ձանսըն Յորդանանու . այ յոր ։



# ՏՆՕՐՀՆԷՔ

# Ի ՍՈՒՐԲ ԶԱՏԿԻ

Տաղական. ԱԶ.

Օրհ. Այսօր յարութիւն 'ի մեռելոց փեսայն անմահ եւ երկնաւոր. քեզ աւետիք խնդութեան հարսն 'ի յերկրէ եկեղեցի. օրհնեա 'ի ձայն ցնծութեան զԱստուած քո Սիոն։

Այսօր անճառ լոյսն 'ի լուսոյ լուսաւորեաց զմանկունս քո. լուսաւորեա Երուսաղէմ, քանզի յարութիւն լոյս քո Քրիստոս. օրհ։

Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ Երրեակ լուսովն. եւ քեզ ծագեաց լոյս գիտութեան յարուցելովն 'ի մեռելոց Քրիստոս. օրհ։

※ Այսօր զատիկ մեր զենմամբ Քրիստոսի. արասցուք տօն ցնծութեամբ նո-

րոգեալքս ՚ի հնութենէ մեղաց ասելով,
Քրիստոս յարեաւ ՚ի մեռելոց ։
Այսօր հրեշտակըն լուսափայլ ՚ի յերկնից
իջեալ զարհուրեցոյց ըզպահապանսն ,
Եւ սուրբ կանանցըն քարոզէր ասելով .
Քրիստոս յար ։
Այսօր նոր Իսրայէլ կոչեցեալք ՚ի Քրիստոս . ազատեալք արեամբ գառինն
Աստուծոյ , պարեսցուք ընդ երկնայնոցն
ասելով . Քրիստոս յար ։

---

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի ։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Իսկ մետասան աշակերտքն գնացին ՚ի Գալիլեա՝ ՚ի լեառնն ուր ժամադիր եղեւ նոցա Յիսուս . իբրեւ տեսին զնա , երկիրպագին նմա , և ոմանք յերկուացան ։ Եւ մատուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ նոսա եւ ասէ . տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկրի . որպէս առաքեաց զիս Հայր , և ես առաքեմ զձեզ ։

Գնացէք այսուհետեւ աշակերտեցէք զա-
մենայն հեթանոսս . մկրտեցէք զնոսա յա-
նուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ։
Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ որ ինչ
պատուիրեցի ձեզ ։
Եւ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն
աւուրս՝ մինչեւ ՚ի կատարած աշխարհի ։

Քարոզ ։

Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սո-
վաւ փրկեսցէ զմեզ ։

Աղօթք ։

Պահպանիչ և յոյս հաւատացելոց Քրիս-
տոս Աստուած մեր ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն ։
Հայր մեր որ յերկինս ։



# ՑԱՆԿ ԿԱՆՈՆԱՑ



